## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հապավումներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**10** ՀՈԿՏԵՄԲԵՐ 1978

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ





# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն քննարկեց 1978 թվականի հուլիս-օգոստոս ամիսներին Ղրիմում Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՉՍՍՀ-ի պրեզիդենտ Գ. Հուսակի, ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ-ի Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերի, ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարի, ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Է. Գերեկի, Ռումինական կոմկուսի գլխավոր քարտուղար, ՌՍՀ-ի պրեզիդենտ Ն. Չաուշեսկուի, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, ԲԺՀ-ի Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովի, ՄԺՀԿ Կենտկոմի առաջին քարտուղար, ՄԺՀ-ի Ժողովրդական մեծ խուրալի նախագահության նախագահ Յու. Ցեդենբալի հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած բարեկամական հանդիպումների արդյունքները: ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն լիովին հավանություն է տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի կատարած աշխատանքին և գտնում է, որ կայացած զրույցները կարևոր նշանակություն ունեն սոցիալիստական ընկերակցության երկրների կոմունիստական կուսակցությունների ու ժողովուրդների հետ ՍՄԿԿ-ի և սովետական պետության եղբայրական բարեկամության ու բազմակողմանի համագործակցության հետագա զարգացման համար:

Ղրիմի հանդիպումները լիովին համոզում են, որ եղբայրական երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համագումարների նախանշած ստեղծարար պլանների կենսագործումը ուղեկցվում է սոցիալիստական պետությունների կապերի ընդլայնմամբ հասարակական կյանքի բոլոր կարևորագույն բնագավառներում՝ քաղաքականության, էկոնոմիկայի, գաղափարախոսության ասպարեզում: Ղրիմում ձեռք բերված պայմանավորվածությունները նորովի խթանում են մոտ և ավելի հեռավոր ապագայի գործողությունների համաձայնեցմանը: Դրանք մասնավորապես կնպաստեն այն բանին, որ սոցիալիստական ընկերակցության երկրների առաջիկա հնգամյակները պլանավորվեն և անցնեն արտադրության հետագա, է՛լ ավելի խոր կոոպերացման ու մասնագիտացման նշանաբանով՝ հօգուտ այդ երկրներից յուրաքանչյուրի էկոնոմիկայի առավել արդյունավետ զարգացման և ողջ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի հետագա ամրապնդման:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն բարձր է գնահատում այն փաստի նշանակությունը, որ Ղրիմի հանդիպումների ընթացքում խորապես վերլուծվեց արդի միջազգային դրությունը և այդ վերլուծության լույսի ներքո հետևություն արվեց, որ անհրաժեշտ է սոցիալիստական պետությունների հետագա ակտիվ ջանքերի գործադրում և փոխգործողություն՝ հանուն լարվածության թուլացման պրոցեսի՝ որպես միջազգային կյանքի առաջատար միտումի ամրապնդման ու խորացման:

Վերջին ժամանակների իրադարձությունները, նախ և առաջ յայն մասշտաբներով սպառազինությունների հետագա մեծացման մասին ՆԱՏՕ-ի վաշինգտոնյան նստաշրջանի որոշումները, իսկ ապա ամերիկյան կոնգրեսի կող-

մից ռեկորդային ռազմական բյուջեին հավանություն տալը ամենայն պարզությամբ մատնում են սոցիալիստական պետությունների կողմից կարծեցյալ «ռազմական սպառնալիքի» շուրջ Արևմուտքում բարձրացված աղմուկի կազմակերպիչների իսկական նպատակները: Խոսքը այն մասին է, որ յուրօրինակ պրոպագանդիստական վարագույր ստեղծվի իմպերիալիստական քաղաքականությունը քողարկելու համար, որը հակասում է կայուն խաղաղության և սպառազինությունների մրցավազքի դադարեցում պահանջող ժողովուրդների իղձերին: Սակայն նման քողարկումը ոչ ոքի չի խաբի:

Տարբեր սոցիալական սիստեմների պատկանող պետությունների փոխհարաբերությունների վրա բացասական ազդեցություն են թողնում նաև սոցիալիստական երկրներում մարդու իրավունքների մտացածին «խախտումների» առթիվ կեղծավոր կամպանիաների քողարկմամբ սոցիալիստական պետությունների ներքին գործերին միջամտելու ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի որոշ այլ երկրների սիստեմատիկ փորձերը: Նմանօրինակ փորձերը միջազգային իրավունքի հանրաճանաչ նորմաների կոպիտ խախտում են, Հելսինկիում ընդունված եզրափակիչ ակտի տառի և ոգու խախտում:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն ընդգծում է այն լուրջ վտանգը, որ խաղաղության ու սոցիալիզմի գործի համար ներկայացնում են Չինաստանի ներկայիս ղեկավարների գործողությունները: Վարելով մեծապետական գերիշխանական կուրս, Պեկինը բացեիբաց շեշտը դնում է միջազգային լարվածության ուժեղացման վրա, ամեն միջոց օգտագործում, որպեսզի խարխլի սոցիալիստական ընկերակցության, արդիականության հեղափոխական, ազատագրական ուժերի դիրքերը: Ջգտելով թափանցել նատօյական ռազմական զինանոցը, Չինաստանի կառավարիչները ամեն կերպ ցուցահանում են իրենց թշնամանքը Սովետական Միության ու սոցիալիզմի մյուս երկրների հանդեպ և մաքառում սպառազինությունների անզուսպ մրցավազքի համար: Այդ քաղաքականությունը առավել ևս վտանգավոր է, քանի որ այն պաշտպանության է արժանանում իմպերիալիստական պետությունների առավել հետադիմական շրջանների կողմից:

Չինաստանի ղեկավարությունը արդեն այսօր կանգ չի առնում ուղղակի նվաճողական գործողությունների առաջ: Դրա վկայությունն են Չինաստանի շովինիստական կոպիտ ճնշումը Վիետնամի Սոցիալիստական Հանրապետության վրա, նրա հրահրիչ դերը ՎՍՀ-ի դեմ Կամպուչիայի ձեռնարկած ռազմական պրովոկացիաներում, Պեկինի հավակնությունները հարևան պետությունների տերիտորիաների նկատմամբ:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն կրկին հավաստում է մեր կուսակցության, սովետական պետության և բոլոր սովետական մարդկանց անխախտ համերաշխությունը հերոսական վիետնամական ժողովրդի հետ, որը հաստատակամորեն պաշտպանում է իր տերիտորիայի անձեռնմխելիությունը, անկախությունը, իր երկրում առանց խոչընդոտների, արտաքին սպառնալիքների ու ճնշման սոցիալիստական շինարարություն իրականացնելու իրավունքը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հայտարարում է, որ այժմյան հույժ բարդ միջազգային իրադրության մեջ նույնպես Սովետական Միությունը, ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, մտադիր է իր բարեկամների ու դաշնակիցների հետ միասին հաստատակամորեն հասնելու լարվածության թուլացման պրոցեսի խորացման, պետությունների խաղաղ, փոխշահավետ համագործակցության ընդլայնման, նախ և առաջ՝ սպառազինությունների մրցավազքի դադարեցման, զինաթափման:

Սպառազինությունների մրցավազքի հետ կապված խոշոր հարցերն արդեն բանակցությունների առարկա են: Կարևոր է, որ դրանցում կատարված աշխատանքը ի չիք չդարձվի, պսակվի ծանրակշիռ արդյունքներով: Դա մասնավորապես վերաբերում է ստրատեգիական հարձակողական սպառազինությունները սահմանափակելու սովետա-ամերիկյան բանակցություններին և Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու Վիեննայի բանակցություններին:



ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն գտնում է, որ արդի պայմաններում հրամայականորեն անհրաժեշտ է ամենայն վճռականությամբ հակազդել այն բոլոր քայլերին, որոնք կարող էին խարխլել լարվածության թուլացման պրոցեսը, ետ շրջել միջազգային զարգացումը դեպի «սառը պատերազմի» ժամանակները: Ներկայումս, ավելի քան երբևէ, պահանջվում է խստիվ հետևել մյուս պետությունների ներքին գործերին չմիջամտելու սկզբունքներին, հարգել բոլոր ժողովուրդների ազատության ու անկախության իրավունքը, ուժեղացնել ջանքերը նրանց խաղաղ համագործակցության զարգացման համար, որի հնարավորությունները հստակորեն սահմանված են Եվրոպայի անվտանգության ու համագործակցության համաեվրոպական խորհրդակցության եզրափակիչ ակտում, Միավորված ազգերի կազմակերպության բանաձևերում, միջազգային այլ փաստաթղթերում:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն գոհունակություն է հայտնում, որ Ղրիմի հանդիպումների ընթացքում կրկին հաստատվեց մարքսիզմ-լենինիզմի ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի անխախտ հիմքի վրա եղբայրական երկրների համագործակցության հետագա զարգացումը՝ հօգուտ խաղաղության գործի ու սոցիալիստական առաջադիմության աներեր առաջընթացի՝ նրանց գործողությունների կոորդինացման կարևորությունը: Ղրիմում ընկեր Լ. Ի. Բրեժնևի և եղբայրական կուսակցությունների ու պետությունների ղեկավարների միջև կայացած զրույցները կարևոր քայլ են նշանավորում սոցիալիստական ընկերակցության հետագա ամրապնդման, սոցիալիզմի ու կոմունիզմի շինարարության ասպարեզում եղբայրական կուսակցությունների, երկրների և ժողովուրդների բազմակողմանի համագործակցության խորացման ուղղությամբ, նպաստավոր պայմաններ ստեղծում այդ համագործակցության զարգացման ճանապարհին նոր քայլեր նախապատրաստելու համար:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն մի շարք որոշումներ ընդունեց Ղրիմի բարեկամական հանդիպումներում ձեռք բերված երկկողմ պայմանավորվածությունների իրացման կոնկրետ հարցերի վերաբերյալ:

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ԲԱՔՈՒ ՔԱՂԱՔԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆԻ ՀԱՆՁՆՄԱՆԸ ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ

### 1978 թ. սեպտեմբերի 22-ին

Թանկագին ընկերնե՛ր, բարեկամնե՛ր:

Մենք ձեզ հետ հանդիպելու լավ առիթ ունենք. ինձ հանձնարարված է Բաքու քաղաքին հանձնել հայրենիքի ամենաբարձր պարգևը՝ Լենինի շքանշանը: Բաքվեցիներին ի սրտե շնորհավորում եմ այդ մեծ պարգևի առթիվ:

Լենինի մեծ անունն անբաժանելի է ձեր քաղաքի պատմությունից, Ադրբեջանի պատմությունից: Վլադիմիր Իլյիչը, Կիրովի պատկերավոր արտահայտությամբ, յոթ սարի ետևում լսում էր Բաքվի պրոլետարների սրտերի բաբախյունը: Նա սերտորեն կապված էր Ադրբեջանի աշխատավորության հետ, ուղղություն էր տալիս նրանց հեղափոխական պայքարին, նրանց մատնանշում էր ապագայի ուղին: Եվ նրանք միշտ էլ ջերմորեն էին արձագանքում առաջնորդի կոչերին:

Հեղափոխական պայքարի բոլոր փուլերում Բաքվի բոլշևիկներին, Ադրբեջանի աշխատավորներին բնորոշ են եղել տոկունությունը դասակարգային պայքարում, հետևողական ինտերնացիոնալիզմը: Այդ պայքարի շատ օրինակներ լեգենդ են դարձել:

Հիշենք, որ Պետրոգրադում Հոկտեմբերի հաղթանակից վեց օր անց հեղափոխությունը հաղթանակեց նաև Բաքվում: Հիշենք Բաքվի կոմունան, նրա 26 լեգենդար կոմիսարներին:

Հիշենք Բաքվի նավթագործների հերոսությունը, որոնք 1920 թվականին դժվարագույն պայմաններում վերականգնեցին նավթահանքերը և սկսեցին սովետների հանրապետությանը մատակարարել նրա համար այնքան անհրաժեշտ նավթը:

Հիշենք առաջին հնգամյակը. նավթի հանույթով բաքվեցիները այն կատարեցին երկուսուկես տարում: Հիշենք, վերջապես, ձեր քաղաքի սխրագործությունը Հայրենական մեծ պատերազմի տարիներին, երբ Բաքվից ստացվող վառելիքը մեր տանկերին ու ինքնաթիռներին հնարավորություն տվեց մահու և կենաց մարտ մղել ֆաշիզմի դեմ: Մի խոսքով՝ բաքվեցիների գործերը բազում կարմիր տողերով են գրված սովետական երկրի կենսագրության մեջ:

Սոցիալիզմի պայմաններում անճանաչելիորեն փոխվել է նաև ինքը՝ Բաքուն: Մի ժամանակ Մայակովսկին գրել է, որ քաղաքում ցավալիորեն քիչ է կանաչը: «Մի ինչ-որ տասնութ թփիկ»: Այժմ նույնիսկ դժվար է պատկերացնել, որ այդպես է եղել:

Վաղուց է, որ չկա նախկին մռայլ «սև քաղաքը»: Կա գրեթե մեկուկես միլիոնանոց գեղեցկուհի Բաքուն, լայնահուն, բարձրաբերձ, ընդարձակ Բաքուն: Եվ հաճելի է տեսնել նրա զբոսայգիների կանաչը և ծաղիկների վառ գույները, ժամանակակից ձեռնարկությունները, լուսավոր, գեղեցիկ տների թաղամասերը և ձեր վերջին նվաճումը՝ մետրոն:



Լարված է ընթանում Բաքվի աշխատանքային ռիթմը, նրա արդյունաբերության արտադրանքն ստանում են մեր երկրի բոլոր տնտեսական շրջանները և աշխարհի շատ պետություններ:

Մի խոսքով՝ Բաքուն արժանավոր մայրաքաղաքն է ձեր հանրապետության, որը սոցիալիզմի արևի ներքո պատմական կարճ ժամանակամիջոցում դարձել է ժամանակակից ինդուստրիայի, զարգացած գյուղատնտեսության, առաջավոր մշակույթի բարգավաճ երկրամաս:

Այստեղ՝ Բաքվում, ելույթ ունենալով 1970 թվականի աշնանը, ես հանրապետության կուսակցական, սովետական ու տնտեսական մարմինների ուշադրությունը հրավիրեցի արդյունաբերական արտադրության աճի տեմպերի ետ մնալու վրա, գյուղատնտեսության զարգացման թերությունների և ներքին ռեզերվները անբավարար օգտագործելու վրա: Եվ ահա այսօր կարող եմ ասել. քննադատությունից դուք ճիշտ հետևություններ եք արել:

Գործերի վիճակը բացահայտորեն լավացել է: Եվ դա Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության կուսկազմակերպության կազմակերպչական, քաղաքական, գաղափարադաստիարակչական նպատակասլաց աշխատանքի արդյունք է, Ադրբեջանի ամբողջ ժողովրդի աշխատանքային ակտիվ ջանքերի արդյունքը: Դա իրադրության առողջացման, հոգեբանական կլիմայի բարելավման արդյունքն է, որն անմիջապես ազդելու է նաև տնտեսական գործունեության արդյունքների վրա:

Լայն թափով է առաջ ընթանում Ադրբեջանը: Իններորդ հնգամյակում և տասներորդ հնգամյակի երկու տարում ձեր արդյունաբերությունը տվել է գրեթե այնքան արտադրանք, որքան նախընթաց տասնհինգ տարում, իսկ արտադրության ընդհանուր ծավալի աճի տեմպերով նա արդեն հասել է տասներորդ հնգամյակի երեք տարվա համար նախատեսված մակարդակին: Դա վատ չէ, ընկերներ: Դա նշանակում է գործով պատասխանել կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի 1977 թվականի դեկտեմբերյան պլենումի որոշումներին:

Ուրախացնում է նաև այն, ինչ դուք անում եք գյուղատնտեսության բնագավառում:

1971—1977 թվականներին դուք բամբակի միջին տարեկան արտադրությունը, ութերորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացրել եք գրեթե մեկուկես անգամ: Հացահատիկի տարեկան արտադրությունը նախկինում եղած 600—700 հազար տոննայի փոխարեն վերջին տարիներին հասցվել է մոտավորապես մեկ միլիոն 130 հազար տոննայի: Լավ են զարգանում խաղողագործությունն ու բանջարաբուծությունը: 1971—1977 թվականներին դուք պետությանը ավելի շատ բանջարեղեն եք վաճառել, քան նախընթաց երեսուն տարում:

Բարձրանում է նաև անասնապահության մթերատվությունը, թեև այս բնագավառում նվաճումները ավելի համեստ են:

Թույլ տվեք վստահություն հայտնել, որ կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները, դուք նոր հաջողությունների կհասնեք գյուղատնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում:

Ձեր հանրապետության զարգացման օրինակով դուք ակնբախորեն տեսնում եք, ընկերներ, թե ինչպիսի պտուղներ են տալիս համառ աշխատանքը և կուսակցության մշակած սոցիալական քաղաքականության հետևողական կիրառումը: Դրա վկայությունն են թե՛ ժողովրդի բարեկեցության, թե՛ բնակարանային շինարարության թափը, թե՛ մշակույթի ու գիտության հոյակապ զարգացումը:

Ադրբեջանի աշխատավորության հաջողությունները պատշաճ գնահատականի են արժանանում: Հանրապետությունը ութ տարի անընդմեջ եղել է կարմրադրոշ:

Դա շատ բանի է պարտավորեցնում, ընկերներ: Մենք հուսով ենք, որ դուք այսուհետև էլ հավատարիմ կմնաք ձեր լավ ավանդույթներին:

Մի խոսքով՝ ձեզ գովելու բաներ շատ կան: Սակայն կարծում եմ, որ տոնը

չի տուժի, եթե խոսենք նաև թերությունների մասին, չլուծված խնդիրների մասին: Դե, այդպիսին է կոմունիստական, գործարար ոճը, եկեք այն չխախտենք:

Հատկապես ուզում եմ ձեր ուշադրությունը հրավիրել արտադրանքի որակի վրա: Ցավոք, առայժմ չի կարելի ասել, թե այս հարցում ձեզ մոտ ամեն ինչ բարեհաջող է: Բարձրագույն որակի արտադրանքի տեսակարար կշիռը Ադրբեջանում կազմում է ընդամենը 8,2 տոկոս: Դա ընդհանուր միութենական ցուցանիշից զգալիորեն ցածր է: Այնինչ մեր կուսակցության ու ամբողջ ժողովրդի ջանքերը այժմ նպատակամղված են հենց որակի բարձրացմանը: ՍՄԿԿ Կենտկոմն սպասում է, որ Ադրբեջանի կուսակցական կազմակերպությունը, հանրապետության բոլոր աշխատավորները իրենց գործունեության մշտական առանցքը կդարձնեն որակի համար մղվող պայքարը:

Դուք ունեք լավ փորձ, օրինակ՝ «Ազերէլեկտրոսվետ» և կենցաղային օդափոխիչների գործարանների աշխատանքը: Բայց պետք է ջանալ, որ դուք հպարտանաք հանրապետությունում արտադրվող ցանկացած արտադրանքով:

Դուք շատ անելիքներ ունեք նաև սպասարկման ոլորտում: Տխրեցնում է, որ մեկ բնակչի հաշվով կենցաղային սպասարկումների ծավալով Ադրբեջանը երկրում գրավում է վերջին տեղերից մեկը: Հուսով եմ, որ անհրաժեշտ միջոցները կձեռնարկեք այդ ոլորտում կարգուկանոն հաստատելու համար:

Եվս մի հարց, որը կյանքն է դնում օրակարգի մեջ: Դա աշխատանքային ռեսուրսների օգտագործումն է: Ադրբեջանում, ինչպես և Կովկասի մյուս հանրապետություններում, նույնպես Միջին Ասիայում, աշխատունակ բնակչության մի զգալի մասը դեռևս ընդգրկված չէ հանրային արտադրության մեջ: Ինձ հայտնի է, որ մի շարք միջոցներ են ձեռնարկվում գործերի նման վիճակը փոխելու համար: Բայց պետք է այդ աշխատանքը ավելի եռանդագին կատարել:

Այստեղ քիչ ուժեր չկան: Առաջին հերթին անհրաժեշտ է ավելի արդյունավետ օգտագործել արտադրական ֆոնդերը, վերջ տալ սարքավորումների թերբեռնմանը, որը տակավին գոյություն ունի հանրապետության շատ ձեռնարկություններում:

Պետք է կարողանալ առաջ նայել: Նավթի հանույթի ավելացումը ունի իր բնական սահմանները: Արդեն այսօր էլ Ադրբեջանը միայն նավթի աշտարակների երկրամաս չէ: Այստեղ զարգացած են մեքենաշինությունը, քիմիական, էլեկտրատեխնիկական, էլեկտրոնային, ռադիոտեխնիկական արդյունաբերությունը, գունավոր մետալուրգիան, այլ ճյուղեր: Դուք պետք է այսուհետ ևս կատարելագործեք արդյունաբերության կառուցվածքը՝ ելնելով հանրապետության շահերից և ամբողջ երկրի մասշտաբով ժողովրդական տնտեսության շահերից:

Չի կարելի մոռանալ նաև երկրի մյուս շրջաններին ցույց տրվող օգնությունը: Օրինակ, նոր տերիտորիաների ու նոր ռեսուրսների յուրացումը երիտասարդ ձեռքերի է սպասում մեր հայրենիքի ընդարձակ տարածություններում: Ես գիտեմ, որ հազարավոր ադրբեջանցիներ են աշխատում նավթաբեր Տյումենում, ԲԱՄ-ում և այլ վայրերում: Դա լավ օրինակ է հատկապես ձեր երիտասարդության համար:

Ընկերնե՛ր: Սովետական մարդիկ ամբողջ երկրում լարված աշխատանք են կատարում՝ կենսագործելով տասներորդ հնգամյակի պլանները: Բարձրացնելով աշխատանքի արդյունավետությունն ու որակը, նոր հաջողությունների է հասնում մեր սոցիալիստական հզոր ինդուստրիան: Այժմ արդեն կարելի է ասել, որ արդյունաբերությունը այս տարվա պլանը վատ չի կատարում:

Մեծ գործեր են արվում նաև երկրի գյուղատնտեսության ասպարեզում: Կենտկոմի հուլիսյան պլենումը գյուղատնտեսական արտադրության հետ այս կամ այն կերպ առնչված էկոնոմիկայի բոլոր ճյուղերի առջև հեռանկարային կոնկրետ խնդիրներ դրեց: Դրանց լուծումը գյուղը կբարձրացնի որակապես նոր մակարդակի:



Պլենումի որոշումները աշխատանքային խանդավառություն են առաջացրել գյուղում: Դոնի «Գիգանտ» սովխոզի օրինակով երկրում լայն շարժում է ծավալվել հետևյալ նշանաբանով՝ հայրենիքին տալ ավելի շատ հացահատիկ և հողագործության ու անասնապահության մթերքներ, ոչ միայն կատարել ընթացիկ պլանները, այլև պաշար ունենալ ապագայի համար, որպեսզի հնգամյակը ամբողջությամբ վերցված անպայման կատարվի բոլոր ցուցանիշներով: Այժմ արդեն կարելի է որոշակիորեն ասել, որ այս տարի լավ բերք է աճեցված: Շատ կոլտնտեսություններ, սովխոզներ, շրջաններ և ամբողջ մարզեր արդեն հավաքել են հացահատիկի բերքը, հաջողությամբ են կատարել պետությանը հացահատիկի վաճառքի բարձր պարտավորությունները: Բայց առջևում դեռևս քիչ անելիքներ ու հոգսեր չկան:

Սկսվել է բերքահավաքի եզրափակիչ փուլը: Իսկ այն, ինչպես հայտնի է, ամենաբարդն է: Երկրի արևելքում հացահատիկի բերքը դեռ պետք է հավաքվի զգալի տարածություններից: Ամենուրեք անասնակեր են կուտակում, հասել են ուշահաս կուլտուրաները՝ բրինձը, եգիպտացորենը, արևածաղիկը, շաքարի ճակնդեղը, բամբակը, կարտոֆիլը և այլն:

Իրադրությունը պահանջում է ուժերի է՛լ ավելի մեծ մոբիլիզացում և բոլոր նրանց ներդաշնակ աշխատանքը, ովքեր զբաղված են բերքահավաքով, բերքի փոխադրումով և ընդունումով, ովքեր պատասխանատու են նրա պահպանման ու վերամշակման համար: Գլխավորը ուժերի ճիշտ տեղաբաշխումն է, տեխնիկայի ու մյուս ռեսուրսների հմուտ օգտագործումը, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևերի լայն կիրառումը: Հարկավոր է, որ յուրաքանչյուր բերքահավաք ագրեգատ, ավտոմոբիլ, տրակտոր, յուրաքանչյուր մթերակայան, վերամշակող ձեռնարկություն բառիս բուն իմաստով աշխատի գիշեր-ցերեկ և առավելագույն արդյունավետությամբ:

Ներկայումս անասնապահության մեջ առանձնապես կարևոր է յուրաքանչյուր ֆերմայում ստեղծել բազմազան անասնակերի հուսալի պաշար, ժամանակին և լավ նախապատրաստվել անասունների ձմեռմանը:

Պետք է մտածել նաև վաղվա օրվա մասին. ժամանակին կատարել եկող տարվա բերքի համար անհրաժեշտ աշխատանքների ամբողջ կոմպլեքսը՝ լավագույն ժամկետներում ավարտել աշնանացան կուլտուրաների ցանքը, կատարել գարնանացանի ամբողջ աշնանահերկը, ցանել լավորակ սերմացու:

Այս ամենը լավ հիմք կստեղծի գյուղատնտեսության բնագավառի այն մեծ ծրագրի հաջող կենսագործման համար, որ սահմանել է Կենտկոմի հուլիսյան պլենումը:

Մի խոսքով՝ ընկերներ, մեր երկիրն ապրում է ակտիվ, եռուն կյանքով: Գործեր շատ կան և հավանաբար է՛լ ավելի շատ կլինեն: Նվաճումները մեծ են, բայց խնդիրներն էլ փոքր չեն: Եվ մեր ամբողջ աշխատանքի կարևորագույն գրավականներից մեկը եղել է և կլինի ակտիվ հոգատարությունը ընդհանուր գործի նկատմամբ, բարձր պահանջկոտությունը իր և ուրիշների նկատմամբ:

Սովետական մարդիկ անհաշտ են այնպիսի երևույթների նկատմամբ, որոնք մեզ խանգարում են առաջ ընթանալ, ժողովրդին ու պետությանը խաբելու բոլոր ձևերի նկատմամբ: Նրանք խիստ են վերաբերվում նման փաստերին, և դա լավ է: Աշխատավորների քննադատական ահազանգումներին անհրաժեշտ է ամենալուրջ նշանակություն տալ:

Եվ կուսակցության ու ժողովրդի շահերի համար չկա ավելի վնասակար բան, քան թերությունները աքողելու փորձերը, արդարացի քննադատությունից խույս տալը, այն լռության մատնելը, մանավանդ՝ քննադատությունը ճնշելը, քննադատությամբ հանդես եկողներին հետապնդելը:

Ցավոք, նման երևույթների դեռևս հանդիպում ենք:

Միշտ չէ, որ մինիստրությունների ու գերատեսչությունների, հանրապետությունների ու մարզերի ղեկավար մարմինների աշխատողները անհրաժեշտ են համարում ինչպես հարկն է պատասխանել քննադատությանը, այդ թվում նաև մամուլում տպագրվածին: Նույնիսկ փաստեր կան, որ ճնշում են քննադատողներին:

Եղել են նաև այնպիսի դեպքեր, երբ «Ֆիտիլ» երգիծական կինոակնարկի՝ երկրի այս կամ այն շրջանին վերաբերող թողարկումները այնտեղ չեն ցուցադրվել տեղի ղեկավարների ցուցումով: Ո՞վ է նրանց իրավունք տվել այդպիսի ցուցումներ տալ:

Քննադատության ճնշումը, ընկերնե՛ր, կոմունիստական բարոյականության նորմերի և ՍՍՀՄ հիմնական օրենքի խախտում է: Դա չարիք է, որը չպետք է անպատիժ մնա: Մենք բարձր ենք գնահատում ժողովրդական նախաձեռնությունը, և ոչ ոքի թույլ չի տրվի խարխլել մեր ուժերի այդ աղբյուրը:

Ես այստեղ այս մասին խոսում եմ ոչ այն պատճառով, որ ձեզ մոտ՝ Ադրբեջանում, դրությունը համարում եմ առանձնապես անբարվոք: Հանրապետության կուսակցական կազմակերպությունը այս առումով արդեն քիչ բան չի արել: Սակայն այս պրոբլեմը նշանակություն ունի ողջ երկրի համար: Վերջին հաշվով դա մեր հասարակական զարգացման համար, մեր առջև ծառացած կոմունիստական շինարարության մեծ խնդիրների լուծման համար առավել բարենպաստ պայմանների ստեղծման հարցն է:

Այժմ թույլ տվեք անդրադառնալ որոշ միջազգային հարցերի: Ինչպես գիտեք, վերջերս, մենք, կարելի է ասել արդեն ավանդական դարձած, ամառային հանդիպումներ ունեցանք Ղրիմում սոցիալիստական պետությունների՝ Բուլղարիայի, Հունգարիայի, ԳԴՀ-ի, Մոնղոլիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Չեխոսլովակիայի եղբայրական կուսակցությունների ղեկավարների հետ:

Այդ երկրներից յուրաքանչյուրի հետ մենք բազմազան և շատ հարուստ կապեր ունենք: Դրանք զարգանում են տարեցտարի: Եղբայրական երկրների համագործակցության առջև բացված են նոր մեծ հեռանկարներ: Կյանքն առաջադրում է նոր հարցեր, որոնք անհրաժեշտ է քննարկել և լուծել: Մենք դա կարևորագույն կուսակցական գործ ենք համարում: Չէ՞ որ խոսքը վերաբերում է մեր ամենամոտիկ բարեկամների, դաշնակիցների հետ, ընդհանուր կոմունիստական նպատակների համար մղվող պայքարում մեր զինակիցների հետ հարաբերությունների զարգացմանը:

Եվ մենք բարձր ենք գնահատում դիրքերի համաձայնեցման այնպիսի ձևը, ինչպիսիք են երկկողմ հանդիպումները: Դրանք օգնում են կանխանշելու այն ընդհանուր գիծը, որ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունները համատեղ սահմանում են իրենց քաղաքական կոնսուլտատիվ կոմիտեի նիստերում:

Մեր զրույցներում մեծ ուշադրություն նվիրվեց միջազգային իրադրության հանգուցային պրոբլեմներին:

Իսկ այդ իրադրությունը, ինչպես դուք գիտեք, հիմա բարդ է: Դրա սրման հիմքը իմպերիալիստական առավել պնդաճակատ շրջանների համառությունն է, որոնք չեն ուզում սթափորեն գնահատել աշխարհում ստեղծված ուժերի հարաբերակցությունը, միանգամայն անիրական և խաղաղության համար վտանգավոր այն հույսերը, թե կկարողանան ռազմական գերազանցության հասնել սոցիալիզմի երկրների նկատմամբ և նրանց թելադրել իրենց կամքը:

ՆԱՏՕ-ի վաշինգտոնյան նստաշրջանը հռչակեց սպառազինությունների մրցավազքի նոր թռիչքի կուրս, որը նախատեսված է տասնամյակների համար: Դա լիովին մերկացնում է Սովետական Միության և Վարշավայի պայմանագրի կողմից Արևմուտքի նկատմամբ կարծեցյալ «ռազմական սպառնալիքի» առթիվ բարձրացրած աղմուկի կազմակերպիչների իսկական նպատակները: Այդ հերյուրանքները հարկավոր են եղել արդարացնելու համար ՆԱՏՕ-ի ձգտումը՝ ձեռք բերելու ավելի երկար և ավելի սուր թուր, փորձելու վերադառնալ «ուժի դիրքի» քաղաքականությանը:

Արդյոք դա չէ՞ նաև այն բանի պատճառը, որ մինչև օրս չի հաջողվում ավարտել ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման փոխադարձաբար ընդունելի համաձայնագրի մշակումը ԱՄՆ-ի հետ: Իսկ չէ՞ որ այդ հարցում շահագրգռված կողմերի՝ բանակցությունների ժամանակ շարադրված դիրքավորումները միմյանցից բաժանող տարածու-



թյունը այնքան էլ մեծ չէ և բարի կամքի ու պետական իմաստության առկայության դեպքում միանգամայն հաղթահարելի է: Բայց, ըստ երևույթին, այդ հարցի լուծումը Միացյալ Նահանգներում ձեռնտու չէ նրանց համար, ովքեր ուզում են ոչ թե կայուն խաղաղություն և փոխշահավետ համագործակցություն, այլ «սառը պատերազմի» նոր «հրատարակություն»:

Փաստորեն նույն նպատակներին է ծառայում նաև այն աղմկալի պրոպագանդիստական կամպանիան, որ ծավալվեց սովետական կարգերի նկատմամբ որոշ թշնամական անձանց, այդ թվում արևմտյան հատուկ ծառայությունների վճարովի գործակալների, ապօրինի գործունեության վերաբերյալ սովետական դատարանների ձեռնարկած միջոցների շուրջ:

Այդ կամպանիան մեր ներքին գործերին միջամտելու ուղղակի փորձ է և, հետևաբար՝ Հելսինկիում ընդունված եզրափակիչ ակտի տառի և ոգու բիրտ խախտում: ԱՄՆ-ը ճիշտ նույն կերպ է վարվում նաև մյուս սոցիալիստական երկրների նկատմամբ:

Լարվածության թուլացման հակառակորդները ձգտում են ընդլայնել այդ պրոցեսի դեմ կատարվող հարձակման ճակատը: Արհեստական, կեղծավոր պատրվակներով ԱՄՆ-ում սկսել են արգելակել գործարար կապերի զարգացումը: Բանը հասավ արդեն կնքված գործարքները, ստորագրված կոնտրակտները չեղյալ հայտարարելուն: Նաև սկսվել է կապերի ցուցադրական սահմանափակում գիտատեխնիկական և այլ բնագավառներում: Վաշինգտոնն սկսել է անամոթաբար, բայց, ի դեպ, բավականաչափ անհաջող ճնշում գործադրել իր դաշնակիցների վրա, նրանցից պահանջելով նույն բանը:

Այստեղից հետևում է, որ ԱՄՆ-ի որոշ ազդեցիկ շրջաններ գիտակցաբար պրովոկացիայի են ենթարկում Սովետական Միությանը, ձգտելով է՛լ ավելի սրել իրադրությունը: Դա, ընկերներ, լուրջ բան է: Սովետական պետության իրավունքների ու շահերի վրա կատարվող հարձակումները մենք կդիմագրավենք վճռականորեն, բայց պրովոկացիաների չենք ենթարկվի:

Կապիտալիստական աշխարհի երկրների նկատմամբ, և այդ թվում, իհարկե, Ամերիկայի Միացյալ Նահանգների նկատմամբ, մեր քաղաքականությունը եղել և մնում է խաղաղության, խաղաղ գոյակցության, խաղաղ համագործակցության քաղաքականություն: Հենց այս պատճառով էլ մենք կտրականապես մերժում ենք պետությունների ներքին գործերին դրսից միջամըտելու, նրանց սուվերեն իրավունքները խախտելու պրակտիկան:

Ամեն ինչ անել սպառազինությունների մրցավազքի դադարեցման համար, խաղաղության և ժողովուրդների անվտանգության ամրապնդման համար՝ ահա թե որն ենք համարում մեր արտաքին քաղաքականության արմատական խնդիրը: Եվ մենք գտնում ենք, որ հուսալի անվտանգության իրավունք ունեն բոլոր թե՛ մեծ և թե՛ փոքր պետությունները, միջուկային զենք ունեցող և չունեցող պետությունները:

Եվ թող ոչ ոք չկասկածի, որ Սովետական Միությունը և սոցիալիստական ընկերակցության մյուս երկրները այսուհետ ևս իրենց արժանավոր ավանդը կներդնեն համայն մարդկության համար կարևոր այդ խնդիրների լուծման գործում:

Կարևորագույն խնդիրների թվին, որոնք պետք է լուծվեն, եթե մենք ուզում ենք կայուն խաղաղություն և միջազգային կայունություն, դասվում է, անշուշտ, արդարացի խաղաղ կարգավորումը Մերձավոր Արևելքում: Այնտեղ իրավիճակը դարձյալ բարդ է և պոտենցիալ վտանգ է ներկայացնում ինչպես բուն այդ շրջանի երկրների, այնպես էլ միջազգային ողջ իրադրության համար:

Դրա պատճառն այն է, որ Իսրայելը և այն ուժերը, որոնց վրա նա հենվում է, համառորեն հրաժարվում են հաշվի առնել արաբ ժողովուրդների օրինական իրավունքներն ու շահերը, որ Իսրայելը ձգտում է զենքով կամ դիվանագիտական ճանապարհով, բայց բոլոր դեպքերում՝ ուժի դիրքից, իր կամքը պարտադրել արաբներին:

Այդ նպատակին հասնելու համար վերջին ժամանակներս հիմնականում կիրառվում է անդրկուլիսային սեպարատ գործարքների մեթոդը, նրանց հետ,

ովքեր պատրաստ են սակարկելու արաբների շահերը: Դիտավորությունը միանգամայն ակնբախ է՝ պառակտել արաբներին, նրանց հանել միմյանց դեմ և արաբական երկրներին առանձին-առանձին պարտադրել կարգավորման՝ ագրեսորի համար ձեռնտու պայմանները:

Բայց մերձավորարևելյան պրոբլեմի իսկական լուծման արմատական նախադրյալներն անտեսելու, կարգավորման այս կամ այն օրինական մասնակցին բացառելու կամ շրջանցելու, նրանց շահերը զոհաբերելու, իրենց պայմանները նրանց թելադրելու ամեն տեսակ փորձերը ոչ մի բան չեն կարող տալ, բացի կարգավորման պատրանքից: Ինչպիսի «շրջանակներով» էլ որ պարուրվի սեպարատ գործարքը, որը քողարկում է մի կողմի կապիտուլյացիան և վավերագրում է մյուս կողմի ագրեսիայի՝ Իսրայելի ագրեսիայի պտուղները, այն լոկ կարող է Մերձավոր Արևելքի իրադրությունը է՛լ ավելի պայթյունավի դարձնել:

Հենց այդ է վկայում Քեմպ Դևիդում վերջերս տեղի ունեցած ամերիկա-իսրայելա-եգիպտական բանակցությունների փորձը: Առկա է հակաարաբական նոր գործարք Իսրայելի ու Եգիպտոսի միջև, որը մշակվել է Վաշինգտոնի ակտիվ մասնակցությամբ:

Այժմ փորձում են մերձավորարևելյան կոնֆլիկտի մյուս մասնակիցներին հարկադրել ենթարկվելու այդ գործարքի պայմաններին, որը մշակվել է նրանց թիկունքում և ուղղակի հակասում է նրանց շահերին: Ուղղակի կասենք՝ այդ խնդիրը հասարակ խնդիր չէ: Արդեն այսօր երևում է, որ արաբները վճռականորեն դատապարտում են Քեմպ Դևիդում կնքված սեպարատ գործարքը, վրդովմունքով սահմանազատվում են դրանից: Եվ այդ զգացմունքները դժվար չէ հասկանալ:

Բազմամյա փորձը անհերքելիորեն ապացուցում է, որ մերձավորարևելյան կոնֆլիկտի իսկական լուծման համար կա միայն մեկ ուղի: Դա 1967 թվականին Իսրայելի օկուպացրած բոլոր արաբական հողերի լրիվ ազատագրումն է, Պաղեստինի արաբ ժողովրդի օրինական իրավունքների, այդ թվում՝ իր անկախ պետությունն ստեղծելու իրավունքի, լրիվ և աներկբա հարգումը, ռեգիոնի բոլոր երկրների (ներառյալ, անշուշտ, նաև Իսրայելի) հուսալիորեն երաշխավորված անվտանգության ապահովումը: Նման համապարփակ կարգավորումը հնարավոր է միայն բոլոր շահագրգռված կողմերի, այդ թվում Պաղեստինի ազատագրման կազմակերպության մասնակցությամբ: Եվ որքան շուտ ձեռք բերվի այն, այնքան շուտ Մերձավոր Արևելքը կդադարի լարվածության օջախ լինելուց:

Գտնվելով Ադրբեջանում, բնական է մի քանի խոսք ասել սկզբունքային կարևորություն ունեցող ևս մի միջազգային իրադարձության մասին, որը վերջերս տեղի ունեցավ Սովետական Միության ավանդական բարեկամ և ձեզ մոտիկ գտնվող երկրում՝ Աֆղանստանում: Այնտեղ, ինչպես գիտեք, տեղի ունեցավ ժողովրդական հեղափոխություն, տապալվեց կիսաֆեոդալական վարչակարգը և հռչակվեց Աֆղանստանի Դեմոկրատական Հանրապետությունը:

Իմպերիալիստները, որոնք փաստորեն առհասարակ չեն ճանաչում ժողովուրդների՝ իրենց բախտը ազատորեն վճռելու, սոցիալական առաջադիմության իրավունքները, անապարեցին շրջանառության մեջ դնել «Մոսկվայի ձեռքի» մասին մաշված լեգենդը: Այդ հերյուրանքները զրպարտություն են ՍՍՀՄ-ի քաղաքականության հասցեին և միաժամանակ վիրավորանք ազատասեր աֆղան ժողովրդի հասցեին, որի հետ մենք կապված ենք անկեղծ բարեկամության և փոխադարձ հարգանքի ամրակուռ կապերով:

Մենք ողջունում ենք Աֆղանստանի Դեմոկրատական Հանրապետությանը՝ անկախ, խաղաղասեր, չմիացած պետությանը և համոզված ենք, որ նա խաղաղության ու կայունության նշանակալից գործոն կդառնա Ասիայի այդ շրջանում: Մենք համամիտ ենք մեր երկրի հետ բարեկամական հարաբերությունները զարգացնելու և խորացնելու նոր Աֆղանստանի արտահայտած մտադրությանը:



Մեր հարաբերությունները արդեն այսօր աշխույժ են և բովանդակությամբ հարուստ: Մենք համոզված ենք, որ դրանք այսուհետ ևս հաջողությամբ կզարգանան հօգուտ երկու երկրների, հանուն Ասիայի խաղաղության գործի և առանց որևէ վնաս հասցնելու երրորդ պետությունների շահերին: Մենք ամեն ինչ կանենք բարի դրացու հետ սովանդական բարեկամության հետագա ամրապնդման համար:

Ահա թե, ընկերներ, ինչ կուզենայի ձեզ ասել բոլորիդ համար այս հանդիսավոր օրը: Իսկ հիմա թույլ տվեք ընթերցել ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը:

**Ընկեր Լ. Ի. Բրեժնևը հրապարակում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Բաքու քաղաքը Լենինի շքանշանով պարգևատրելու մասին և երկար ժամանակ չդադարող օվացիայի ներքո քաղաքի դրոշին է ամրացնում հայրենիքի բարձր պարգևը: Նա ի սրտե շնորհավորում է Ադրբեջանի ու Բաքվի ղեկավարներին, աշխատավորության ներկայացուցիչներին:**

Կրկին, թանկագին ընկերներ, ձեզ այս պարգևի առթիվ շնորհավորում եմ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, սովետական կառավարության կողմից և անձամբ իմ անունից: Թող Բաքվի դրոշի վրա Լենինի սիրելի պատկերը ձեր քաղաքի և ամբողջ հանրապետության աշխատավորներին նոր սխրագործությունների ու մեծագործությունների ոգեշնչի կոմունիզմի կառուցման ճանապարհին:

Կեցցե՛ սովետական մեծ երկրի բոլոր ժողովուրդների ու ազգերի եղբայրական հզոր և անխախտ միությունը:

**Ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթը լսվեց հսկայական ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով:**

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը

# ՀԱՎԵՐԺ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ 150 ՏԱՐԻՆ

**Բ. Ե. ՍԱՐԳՍՈՎ**
Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի
նախագահության նախագահ

*ՍՇԽԱՏԱՆՔԻ ԲԵՐՈՒՄՈՎ ես հաճախ եմ հանդիպում մեր հանրապետություն այցելող մարդկանց՝ տարբեր երկրների պետական, կուսակցական և հասարակական գործիչների, գիտության, մշակույթի և այլ բնագավառների ներկայացուցիչների հետ։ Նրանք հիացմունքով, պատահում է նաև զարմանքով են ընկալում Սովետական Հայաստանի աննախադեպ նվաճումները, նրա վերելքի մասին վկայող թվերն ու փաստերը։ Եվ դա բնական է։ Ընդամենը 58 տարի է, ինչ հայ ժողովուրդը, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության շնորհիվ ստեղծելով իր սոցիալիստական պետականությունը, աշխարհին պարզելով իր պետական դրոշը, հնարավորություն է ստացել սոցիալիստական ազգերի ու ազգությունների համերաշխ ընտանիքում՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմում, վայելելու ազատ ապրելու ու ստեղծագործելու բերկրանքը, իրականացնելու մայր հայրենիքը շենացնելու իր վաղեմի երազանքը։*

*Պատմական այդ կարճ ժամանակամիջոցը չէ միայն, որ հարուցում է բոլորի հիացմունքն ու զարմանքը։ Նրանք հաճախ նաև հարցնում են. իսկ ինչպե՞ս պատահեց, որ դարեր շարունակ ֆիզիկական ոչնչացման եզրին կանգնած հայ ժողովուրդը ո՛չ միայն գոյատևեց և պահպանեց իր դարավոր մշակույթն ու կենցաղը, այլև կարողացավ հասնել իր սոցիալիստական վերածննդի բարձունքներին։ Ինչո՞ւմն է գաղտնիքը, որտեղի՞ց է հայ ժողովրդին այդ կենսական ուժը։ Այդ հարցին մենք կարող ենք ամենայն համոզվածությամբ պատասխանել. գոյատևման գաղտնիքը հայ ժողովրդի ապրելու կամքն է, ազատության և անկախության՝ հարյուրամյակներ շարունակ անմար մնացած ձգտումը, որը նոր եռանդ, նոր որակ ստացավ ռուս ժողովրդի հետ նրա հաստատած դաշինքով ու բարեկամությամբ։*

*Իր հազարամյա պատմության տարբեր ժամանակահատվածներում Հայաստանը, այսպես կոչված, «բարեկամներ» շատ է ունեցել, «բարեկամներ», որոնք հարմար առիթի էին սպասում երկիրն ավերելու, սոցիալական և ազգային դաժան լուծը նրա վզին դնելու, որպես ավար այն իրենց մեջ բաժանելու համար։ Պատմությանը հայտնի են այդպիսի շատ օրինակներ։ Եվ դժվար չէ կռահել, թե ինչ էր սպասում Հայաստանին, եթե չլիներ Ռուսաստանը, եթե հայ ժողովուրդը պատմական բարդ իրադրության մեջ չկողմնորոշվեր հյուսիսային*



*մեծ հարևանի կողմը, ու եթե ռուս ժողովուրդը օգնության անշահախնդիր ձեռք չմեկներ նրան։ 150 տարի առաջ՝ 1826—1828 թթ. ռուս-պարսկական պատերազմի հետևանքով Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորվելը մեծապես կանխորոշեց հայ ժողովրդի ճակատագիրը։ Հանդես բերելով բախտորոշ իմաստնություն, մեր ժողովուրդը մեկընդմիշտ կապվեց ռուս մեծ ժողովրդի հետ՝ դրանով իսկ իրականացնելով իր զավակների դարավոր երազանքը։*

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման 50-ամյակի առթիվ արտասանած իր ճառում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի Նախագահության Նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց.* «Հեշտ ու հասարակ չի եղել հայ ժողովրդի ուղին դեպի սոցիալիզմ և ազգային ազատագրություն: Ծանր ձախորդություններ քիչ չեն վիճակվել Հայաստանի աշխատավորներին: Տակավին վաղնջական ժամանակներում կուլտուրայի հոյակապ նմուշներ կերտած հայ ժողովուրդը դարեր շարունակ հարկադրված է եղել զենքը ձեռքին պաշտպանել իր աշխատանքի արգասիքները և գոյատևման իր իրավունքը: Օտար զավթիչների ամեն մի արշավանքից հետո նա փլատակներից վերականգնել է ավերված քաղաքներն ու գյուղերը, կուլտուրայի անգնահատելի հուշարձանները և ընթացել առաջ, հաստատ հավատալով իր ապագային:

Մաքառելով սեփական և օտար ճնշողների դեմ, Հայաստանի աշխատավորները ավելի ու ավելի ուժգնորեն էին մղվում դեպի Ռուսաստանի դեմոկրատական և հեղափոխական ուժերը, նրանցում տեսնելով իրենց հզոր և հավատարիմ դաշնակցին» *(Լենինյան կուրսով, հ. 3, էջ 223)։*

*1828 թվականին Թուրքմենչայի պայմանագրով հաստատվեց Արևելյան Հայաստանի միացումը Ռուսաստանին։*

*Արտահայտելով իրենց ժողովուրդների կամքը, հայ և ռուս ժողովուրդների առաջավոր շատ ներկայացուցիչներ ողջունեցին պատմական այդ ակտը։ Ռուսական բանակի զինվորները Հայաստանի միավորման համար մղվող մարտերում արիության ու հերոսության բազմաթիվ օրինակներ ցույց տվեցին։*

*Հայ ժողովուրդը ցնծությամբ դիմավորեց իր ազատարարներին։*

*«Հայերը,— գրում է դեկաբրիստ Եվդոկիմ Եմելյանովիչ Լաչինովը,—* հոգով կամենում են պատկանել Ռուսաստանին. այստեղ, ինչպես և Երևանում, հազիվ թոթովել սկսող մանուկը մեզ տեսնելով գոչում է ռուսերեն՝ **«Здравствуй»**»։

*Ռուս ժողովրդի նկատմամբ իր ժողովրդի տածած երախտագիտության և սիրո ջերմ զգացմունքների արտահայտիչը դարձավ հայ մեծ լուսավորիչ Խաչատուր Աբովյանը։* «Օրհնվի էն սհաթը, որ ռուսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ»*— գրում է նա։ Հայ և ռուս ժողովուրդների բարեկամության կրքոտ ջատագովը մարգարեաբար գուշակում էր.* «Հայոց ազգի կարոտ աչքը վաղուց էլ արտասուք չի տեսնիլ, իրան հայրենիքը կտեսնի, նրա ծնցումը կմեծանա, նրա սերը կվայելի...»։

*Արևելյան Հայաստանի ազատության համար ռուս զինվորների կատարած սխրանքի ամենամեծ հուշարձանը հայ ժողովրդի մեծ երախտագիտությունն է և միշտ կենդանի հիշողությունը։*

*Հայ ժողովրդի կյանքի այդ բեկումնային իրադարձությունը բախտորոշ եղավ նաև այն առումով, որ նախադրյալներ ստեղծվեցին անկման եզրին հասցված երկրի սոցիալ-տնտեսական զարգացման համար։ Ժողովրդական զանգվածներին ազատելով ամեն օր ու ամեն ժամ ֆիզիկական գոյությունը պահպանելու ծանր հոգսից, այդ շրջադարձային ակտը հնարավորություն ընձեռեց հաղորդակցվելու ռուսական առաջավոր մշակույթին, նրա դեմոկրատական ավանդույթներին, զարգացնելու հասարակական-քաղաքական միտքը։ Մեր ժողովրդի առաջադեմ զավակները որդեգրեցին ռուս հեղափոխական-դեմոկրատների՝ Գերցենի, Չերնիշևսկու, Դոբրոլյուբովի գաղափարները։ Իր բախտը ռուս ժողովրդի հետ առհավետ կապած հայ ժողովուրդը, նրա որդիներն ու դուստրերը չէին կարող անմասն մնալ ռուս ժողովրդի ազատագրական պայքարից, չհարել և ակտիվորեն չմասնակցել հերոսական ռուսական պրոլետարիատի պայքարին՝*

ընդդեմ ցարական ինքնակալության և բուրժուական բռնատիրության, հանուն ազգային և սոցիալական ազատագրության, հանուն լենինյան գաղափարների հաղթանակի։

«Մտնելով Ռուսաստանի կազմի մեջ,— *արձանագրված է «Ռուսաստանի հետ Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարության մասին» Հայաստանի կոմկուսի Կենտկոմի որոշման մեջ,*— հայ ժողովուրդը, ի դեմս ռուս մեծ ժողովրդի ձեռք բերեց անկեղծ և հավատարիմ բարեկամի, ներգրավվեց այն պատմական պրոցեսների մեջ, որը հասցրեց նրա սոցիալական և ազգային վերածննդին: Ռուս ժողովուրդն իր հեղափոխական տաղանդով և եռանդով, իր անձնվիրությամբ, աշխատասիրությամբ, շռայլ հոգով, ինտերնացիոնալիզմով նվաճեց հայ ժողովրդի, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների խոր սերը, ջերմ երախտագիտությունն ու հարգանքը»:

*Ռուսաստանում պրոլետարական շարժման առաջին իսկ քայլերից հայ ժողովրդի լավագույն զավակները ակտիվ մասնակցություն ունեցան դրան։ Նրանք հասկանում էին, որ Ռուսաստանի ժողովուրդների աշխատավոր զանգվածներին միավորում է նախ և առաջ դասակարգային շահերի ընդհանրությունը։ Հարազատ ժողովրդի բախտը կապելով ռուսական պրոլետարիատի պատմական առաքելության՝ Ռուսաստանում սոցիալիստական հեղափոխության հաղթանակի հետ, նրանք առանց երկմտելու ընտրեցին Լենինի մատնանշած ուղին, դարձան նրա աշակերտները, համախոհներն ու զինակիցները։*

*Հայ ժողովրդի արժանավոր զավակներ Ստ. Շահումյանի, Բ. Կնունյանցի, Ս. Սպանդարյանի, Ս. Տեր-Պետրոսյանի (Կամո), Ալ. Մյասնիկյանի և շատ ուրիշների անունները ոսկե տառերով գրվեցին լենինյան գվարդիայի լավագույն մարտիկների անունների կողքին և նրանց հետ միասին առհավետ մտան հեղափոխական պայքարի պատմության մեջ։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը նշանավորվեց Ռուսաստանի բոլոր ժողովուրդների քաղաքական հավասարությունը՝ նրանց իսկական միության և համագործակցության քաղաքական ու տնտեսական ամուր հիմքերի հաստատմամբ, սոցիալական և ազգային ճնշումից նրանց ազատագրմամբ։*

Ինչպես աշխարհի նորտերին բոլոր,
Այնպես էլ գերի աշխարհին իմ հին,
Երկինք մի մաքուր, արև մի բոսոր
Լոկ Հոկտեմբերյան հողմերը տվին:

*Գրել է հեղափոխության հանճարեղ երգիչ Եղիշե Չարենցը։*

*Յուրաքանչյուր ժողովրդի կյանքում կան այնպիսի ուղենիշներ, որոնք կանխորոշում են նրա տնտեսական ու հոգևոր զարգացումը, նրա պատմական ճակատագիրը։ Հայ ժողովրդի համար այդպիսի շրջադարձային պահ էր 1920 թվականի նոյեմբերի 29-ը. սովետական իշխանության հաստատումը բեկում նշանավորեց հայ ժողովրդի ճակատագրում։*

*Մոտ վեց տասնամյակ է, ինչ օտարերկրյա զինվորը ոտք չի կոխել Հայաստանի հողին։ Երբեք, ոչ մի ժամանակներում մեր ժողովուրդը տևական խաղաղ աշխատանքով իր հայրենիքը շենացնելու այնպիսի հնարավորություն չի ունեցել, ինչպես այժմ։ Մոտ վաթսուն տարում Հայաստանի տարածքում եղած մեկ միլիոն բնակչությունն աճեց երեք անգամ, քանի որ այդ աճի համար ստեղծվեցին սոցիալ-տնտեսական բոլոր պայմանները։ Եթե նախահեղափոխական Հայաստանում շինարարը վախենում էր տուն կառուցել, շինականը՝ հերկել դաշտը, քանի որ անորոշ էր վաղվա օրը, քանի որ վաղը նա կարող էր իր արյամբ ներկել տան պատերն ու արորը, ապա այսօր մենք կառուցում ենք դարերի համար, մեր պլաններն արդեն շոշափում են XXI դարի բնագծերը։ Մենք գիտենք, թե ուր ենք ընթանում, գիտենք թե ինչու, ում հետ և ինչպես։ Նպատակի հստակությունը՝ կոմունիզմի կառուցումը, ողջ սովետական ժողովրդի վստահության և կենսահաստատ ուժի աղբյուրն է, իսկ ժողովուրդների բարեկամությունը՝ սովետական երկրի առջև դրված հսկայածավալ խնդիրների լուծման որոշիչ գործոնը։*



*Իշխանությունը վերցնելով իրենց ձեռքը, Հայաստանի աշխատավորները ձեռնամուխ եղան երկրի քայքայված տնտեսության վերականգնմանն ու ստեղծմանը։ Երիտասարդ սովետական հանրապետության առջև ծառացավ արագորեն սոցիալիստական տնտեսություն ստեղծելու խնդիրը։ Մի խնդիր, որը չափազանց բարդ էր, դժվարին։ Բայց չէ՞ որ նա այլևս մենակ չէր։ Չնայած այն ժամանակ Սովետական Ռուսաստանի կրած զրկանքներին և դժվարություններին, ՌՍՖՍՀ-ի կառավարությունը և անձամբ Վ. Ի. Լենինը մեծապես օգնեցին Հայաստանի տնտեսության վերականգնմանը։ Եղբայրական օգնություն ցույց տվեցին նաև սովետական մյուս հանրապետությունները. Ուկրաինան հացահատիկ և պարեն էր առաքում, Ադրբեջանը՝ նավթ, Իվանովո-Վոզնեսենսկի տեքստիլագործները նվիրեցին հանրապետության տեքստիլ արդյունաբերության առաջին հաստոցները, ռոստովցիները՝ կաթի գործարանի սարքավորումներ... Ահա այսպես են ստեղծվել մեր բարեկամական ավանդույթները, որոնք խարսխված են փոխօգնության, վստահության, փոխադարձ համակրանքի վրա, որտեղ էլ որ դա լինի՝ Արփա—Սևանում, թե հեռավոր ԲԱՄ-ում, Ղազախստանի տափաստաններում, թե Կուրիլյան կղզիներում, սովետական մարդկանց ամուր շաղկապում է ժողովուրդների բարեկամությունը։ ՍՍՀՄ-ը իրավահավասար ազգերի և ազգությունների մի մեծ ընտանիք է, և մեզ մոտ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության, իրավահավասարության սկզբունքները ո՛չ միայն արտացոլվել են ՍՍՀՄ Սահմանադրության և եղբայրական հանրապետությունների սահմանադրությունների մեջ, այլև ամեն քայլափոխի դրսևորվում են սովետական մարդկանց կյանքում։*

*Սովետական պետության օգնության շնորհիվ շատ կարճ ժամանակամիջոցում՝ արդեն 1928 թվականին, հանրապետության արդյունաբերական արտադրանքի ծավալն անցավ 1913 թվականի մակարդակը։ Ահա թե ինչ է գրում ֆրանսիացի հանրահայտ գրող Անրի Բարբյուսը 1927 թվականին Հայաստան կատարած այցի ժամանակ.* «Հոգեվարքի մեջ գտնվող երկիրը դեն է նետել հին ծածկոցները և ծաղկուն տեսք է ստացել: Խստորեն ստուգված նյութի հիման վրա արձանագրում եմ, որ Հայաստանը փրկվել է սովետական իշխանության հաստատման շնորհիվ: Հենց սովետականացման և Սովետական Միության հետ համագործակցության շնորհիվ է, որ դեպի լավն է փոխվել Հայաստանի տեսքը՝ թե՛ տնտեսության, թե՛ մշակույթի առումով»:

*Դարերի խորքից է գալիս հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը։ Այսօր մենք նշում ենք այդ բարեկամության մեծ տարելիցներից մեկը՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը։ Ահա արդեն 150 տարի է, ինչ մեր ժողովուրդները պատմության քառուղիներով ընթանում են միասին և շուրջ 60 տարի է, ինչ մեզ համար ընդհանուր են թե՛ ուրախությունները և թե դժվարությունները։ Մեր ժողովրդի իմաստությունն էլ հենց այն է, որ հանձին ռուս մեծ ժողովրդի, գտավ հավատարիմ բարեկամի և հուսալի դաշնակցի և, 150 տարի առաջ մտնելով Ռուսաստանի կազմի մեջ, վերջնականապես իր բախտը կապեց նրա և Ռուսաստանում ապրող մյուս ժողովուրդների բախտին։ Եվ չսխալվեց։*

*Մեր հանրապետության աշխատավորները քաջ գիտակցում են, որ ձեռք բերված հսկայական նվաճումներն անհնարին կլինեին առանց սովետական ժողովուրդների բարեկամության և անշահախնդիր փոխօգնության, առանց ՍՄԿԿ լենինյան իմաստուն ազգային քաղաքականության։ Մարդկային հասարակության պատմությանը հայտնի չեն ազգերի ու ազգությունների համախմբման ու միասնության նման օրինակներ։ Սովետական ազգերն ու ազգությունները, միավորվելով ՍՍՀՄ-ի մեջ, անշեղորեն ընթանում են դեպի ընդհանուր նպատակի իրականացումը։ Մեր ճանապարհին եղել են և շատ խոչընդոտներ։ Բայց չէ՞ որ միշտ էլ դժվար է առաջինը լինելը, չտրորված, չհետազոտված ճանապարհներով ընթանալը։ Մենք բոլշևիկյան համոզվածությամբ և եռանդով հաղթահարել ենք այդ խոչընդոտները, շտկել ենք թերացումները և առաջինն աշխարհում կառուցել զարգացած սոցիալիստական հասարակարգ, առաջինն*

ենք ոտք դրել տիեզերքի յուրացման դարաշրջանը, առաջինն ենք համայն աշխարհի խաղաղության համար պայքարողների շարքում։

Մենք անցել ենք այնպիսի դաժան փորձությունների բովով, ինչպիսին էր Հայրենական մեծ պատերազմը։ Հարձակվելով Սովետական Միության վրա, հիտլերյան զավթիչները իրենց հաշիվներում քիչ հույսեր չէին կապել նաև ՍՍՀՄ-ում ապրող տարբեր ազգերի ու ազգությունների երկպառակության հետ։

Պատերազմը ցույց տվեց, թե իրենց հաշիվներում որքան էին սխալվել հիտլերյան ստրատեգները։ Սովետական ողջ ժողովուրդը ոտքի ելավ պաշտպանելու իր հայրենիքը։ Ռուսների, ուկրաինացիների, բելոռուսների, ուզբեկների, լիտվացիների, ղազախների, ադրբեջանցիների, վրացիների հետ կողք-կողքի մարտնչում էին նաև հայ ժողովրդի ավելի քան կես միլիոն զավակները։ Անհնար է առանց հուզմունքի կարդալ ռազմաճակատում մարտնչող հայ մարտիկներին հղած այն նամակի տողերը, որի հեղինակը հայ ժողովուրդն է. «Սովետական հայրենիքի քաջ պաշտպաննե՛ր։ Մեր հայրենիքը հզոր է սովետական ժողովուրդների բարեկամությամբ, մեր մեծ եղբոր՝ ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, եղբայր ժողովուրդների որդիների հետ ձեռք-ձեռքի հարվածեք թշնամուն։ Ռազմաճակատներում ամրապնդեք անխախտելի բարեկամությունն ու եղբայրությունը։ Հիշեցե՛ք, որ այդ եղբայրության, ժողովուրդների բարեկամության մեջ է մեր հզոր հայրենիքի՝ Սովետական Միության անպարտելիությունը»։

Հայ ժողովրդի զավակները սրբությամբ կատարեցին իրենց պարտքը սոցիալիստական մեծ հայրենիքի հանդեպ։ Նրանցից շատերն իրենց կյանքը զոհաբերեցին ֆաշիստական հորդաների դեմ մղված դաժան մարտերում։ Իրենց մարտական ուղին փառքով անցան հայկական հինգ դիվիզիաները, իսկ 89-րդ Թամանյան հրաձգային դիվիզիան Կովկասյան նախալեռներից հասավ մինչև Բեռլին։

Սովետական բանակի ու նավատորմի շարքերում աճեցին և նշանավոր զորահրամանատարներ դարձան ավելի քան 60 հայ մարշալներ, գեներալներ, ադմիրալներ, այդ թվում Սովետական Միության մարշալ Հ. Բաղրամյանը, նավատորմի ծովակալ Ի. Իսակովը, զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Ա. Բաբաջանյանը, մարշալ Ս. Խուդյակովը և շատ ուրիշներ։ Հայրենական պատերազմի ռազմաճակատներում ցուցաբերած արիության և խիզախության համար հարյուր-հազարավոր հայաստանցի մարտիկներ պարգևատրվեցին մեդալներով ու շքանշաններով, իսկ նրանցից 106 հոգի արժանացան Սովետական Միության հերոսի բարձր կոչման։

Պատերազմը նաև մեր բարեկամության քննությունն էր, որը հանձնվեց գերազանց։ Ավելին, պատերազմի տարիներին մեր բարեկամությունն է՛լ ավելի ամրապնդվեց։

Մեր մեծ հաղթանակում իրենց ավանդը ներդրեցին նաև մեր սփյուռքահայ քույրերն ու եղբայրները։ Անհնար է մոռանալ նրանց բարոյական ջերմ աջակցությունը, այն բազմաթիվ նամակները, որոնցում արտահայտված է նրանց սերը մայր հայրենիքի նկատմամբ։ Ահա մի քանի տող 1943 թվականին Ստալինգրադի հերոսական պաշտպանության օրերին ամերիկահայերի գրած նամակից. «Մեր սրտերն ու մտքերը Ստալինգրադի հետ են, ուր պաշտպանվում է ո՛չ միայն սովետական երկրի ազատությունն ու անկախությունը, այլև միութենական բոլոր ազգերի ազատությունը։ Զգում ենք կարմիր բանակին երկրորդ ճակատի բացմամբ օգնելու անհետաձգելիությունը։ Հպարտանում ենք Հայաստանի որդիների ու դուստրերի հերոսական պայքարով կարմիր բանակի շարքերում և աշխատանքային ճակատում, նրանց ոգևորությամբ և արիությամբ։ Ինչով հնարավոր է կօգնենք»։ Ահա իրադրության այսպիսի սթափ գնահատականը, ճիշտ կողմնորոշումը կարող է պատիվ բերել ամեն ժողովրդի։

Սովետական երկրի ժողովուրդներն այդ սրբազան պայքարում պաշտպանում էին իրենց հայրենիքը, անկախությունն ու պետականությունը։ Այդ ամենն էժան գնով չէր ձեռք բերված և էժան գնով չպաշտպանվեց։ Հայերն ըստ արժանվույն գիտեն գնահատել այդ արժույթները։ Չէ՛ որ դարեր շարունակ մեզ



համար դրանք միայն երազանք ու խոսքեր են եղել և միայն Հոկտեմբերյան հեղափոխությունն էր, որ իրականություն դարձրեց մեր ժողովրդի վաղեմի երազանքը։ Հինգ և կես դար զրկված լինելով իր պետականությունից, կոտորածների ու ավերների, դաժան հալածանքների ու բռնատիրության պայմաններում մեր ժողովուրդը շարունակ վառ է պահել պետականության բարձր զգացումը, անկոտրում հավատը։ Դա ժողովրդի գոյատևման կարևորագույն պայմաններից է։

Մեր մեծ հաղթանակում իրենց ավանդը ներդրեցին նաև մեր սփյուռքահայ քույրերն ու եղբայրները։ Անհնար է մոռանալ նրանց բարոյական ջերմ աջակցությունը, այն բազմաթիվ նամակները, որոնցում արտահայտված է նրանց սերը մայր հայրենիքի՝ Սովետական Միության նկատմամբ։ Ահա մի քանի տող 1943 թվականին Ստալինգրադի հերոսական պաշտպանության օրերին ամերիկահայերի գրած նամակից. «Մեր սրտերն ու մտքերը Ստալինգրադի հետ են, ուր պաշտպանվում է ոչ միայն սովետական երկրի ազատությունն ու անկախությունը, այլև միութենական բոլոր ազգերի ազատությունը։ Զգում ենք կարմիր բանակին երկրորդ ճակատի բացմամբ օգնելու անհետաձգելիությունը։ Հպարտանում ենք Հայաստանի որդիների ու դուստրերի հերոսական պայքարով կարմիր բանակի շարքերում և աշխատանքային ճակատում, նրանց ոգևորությամբ և արիությամբ։ Ինչով հնարավոր է կօգնենք»։ Ահա իրադրության այսպիսի սթափ գնահատականը, ճիշտ կողմնորոշումը կարող է պատիվ բերել ամեն ժողովրդի։ Սովետական երկրի ժողովուրդները այդ սրբազան պայքարում պաշտպանում էին իրենց հայրենիքը, անկախությունն ու պետականությունը։ Այս ամենը էժան գնով չէր ձեռք բերված և էժան գնով չպաշտպանվեց։ Հայերը ըստ արժանվույն գիտեն գնահատել այդ արժեքները։ Չէ որ դարեր շարունակ մեզ համար դրանք միայն երազանք ու խոսքեր են եղել և միայն Հոկտեմբերյան հեղափոխությունն էր, որ իրականություն դարձրեց մեր ժողովրդի վաղեմի երազանքը։ Հինգ և կես դար զրկված լինելով իր պետականությունից, կոտորածների ու ավերների, դաժան հալածանքների ու բռնատիրության պայմաններում, մեր ժողովուրդը շարունակ վառ է պահել պետականության բարձր զգացումը, անկոտրում հավատը։ Դա ժողովրդի գոյատևման կարևորագույն պայմաններից է և դժվար թե հինգ ու կես դար իր գոյությունը շարունակեր մի ժողովուրդ, որը կորցրած լիներ այդ զգացումը։ Մի՞թե առանց պետականության զգացումի նա կարող էր անցնել այդքան արհավիրքների միջով և հասնել իր երազանքների իրականացմանը։ Եվ այն փաստը, որ պատմական բարդ իրավիճակում նա 150 տարի առաջ իր բախտը մեկընդմիշտ կապեց Ռուսաստանի և ռուս ժողովրդի հետ, հենց արդյունք է պետականության վերականգնման ձգտումի։ Մատենադարանում մի հսկայական մատյան կա, որը հրի և ջրի միջով մի հայ կին փրկել է կործանումից։ Ինչը, եթե ոչ նման զգացումն է առաջնորդել այդ կնոջը, որի առջև մենք այսօր գլուխ ենք խոնարհում։ Նա թողնելով իր սեփականը, գույքն և հարազատ մասունքներ, փրկել է մերը, ժողովրդինը և անմահացել։ Այդ կինը հավանաբար չի իմացել այնպիսի բառեր, ինչպիսիք են պետականության զգացում, համաժողովրդական ունեցվածք բառերը, բայց այդ ամենը եղել է նրա արյան ու գիտակցության մեջ որպես դարերի ժառանգություն։ Այսօր այդ կնոջ և բազմաթիվ հայ մարդկանց ջանքերով փրկված մասունքները ոչ միայն մեր, այլև համաշխարհային մշակույթի գոհարներից են, ժողովուրդների սեփականությունը։

Մեր ժողովուրդը պատերազմի ծանր փորձություններից հետո նորից ձեռք զարկեց երկրի վերականգնմանը, կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության առաջադրած նոր խնդիրների իրականացմանը։ Սովետական Հայաստանի բազմահազար աշխատավորներ մասնակցեցին Ռուսաստանի, Ուկրաինայի, Բելոռուսիայի և այլ հանրապետությունների ավերված քաղաքների ու գյուղերի, գործարանների ու ֆաբրիկաների վերակառուցմանը։ Հետպատերազմյան դժվարին տարիներին սովետական ժողովուրդը մեկ անգամ

ևս ցուցադրեց բարեկամության ամենակարող ուժը, կրկին ապացուցեց, որ մեր երկրի ժողովուրդների եղբայրական բարեկամության, նրանց ինտերնացիոնալ միասնության համար կան այնպիսի սոցիալ-տնտեսական, բարոյաքաղաքական մեծ նախադրյալներ, ինչպիսիք են ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսը, մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների տնտեսական ու կուլտուրական փաստացի հավասարությունը, սովետական հասարակության և սոցիալիստական յուրաքանչյուր ազգի սոցիալական կառուցվածքի նույնատիպությունն ու օրեցօր աճող սոցիալական միատարրությունը, ժողովուրդների ամրակուռ կամավոր դաշինքը, հասարակական կյանքի բոլոր ոլորտների ինտերնացիոնալացումը, մարքս-լենինյան, պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների տիրապետումը։

Մեր ողջ երկրի համամասնական զարգացումը եղել և մնում է կոմունիստական կուսակցության և սովետական պետության հոգատարության առարկան։ Ահա մի քանի թվեր և փաստեր, որոնք վկայում են, թե ինչպիսի մասշտաբներ ունեն և ինչի են հանգեցրել մեր համագործակցությունն ու բարեկամությունը։ Սովետական իշխանության 58 տարում Հայաստանում կառուցվել է ավելի քան 600 արդյունաբերական ձեռնարկություն, որոնց մեծ մասի արտադրանքը համապատասխանում է հայրենական և համաշխարհային ստանդարտներին։ Գործարաններում և ֆաբրիկաներում, հանքերում և կառույցներում աշխատում է ավելի քան մեկ միլիոն բանվոր, ընդսմին, ժողովրդական տնտեսության մեջ զբաղված են բարձրագույն կրթությամբ ավելի քան 130 հազար և միջնակարգ մասնագիտական կրթությամբ 100 հազար մասնագետներ։ Նոր, ժամանակակից տեսք է ստացել Հայաստանի 2760-ամյա մայրաքաղաքը։ Երևանը, որ նախքան **հեղափոխությունը 30 հազար բնակչությամբ մի փոքրիկ**, փոշոտ ու անբարեկարգ քաղաք էր, այսօր Միության արդյունաբերական ու մշակութային խոշորագույն կենտրոններից է՝ իր հարյուրավոր ձեռնարկություններով, ուսումնական հաստատություններով, գիտությունների ակադեմիայով, գիտահետազոտական տասնյակ ինստիտուտներով, մշակույթի օջախներով, մեկ միլիոնի հասնող բնակչությամբ։ Արագորեն աճում են նաև հանրապետության մյուս քաղաքներն ու արդյունաբերական կենտրոնները՝ Լենինականը, Կիրովականը, Աբովյանը, Ղափանը, Հրազդանը, Իջևանը, Էջմիածինը, Գորիսը, Հոկտեմբերյանը, Չարենցավանը, Քաջարանը և այլն։ Այսօրվա Հայաստանը բարձր զարգացած ինդուստրիայի, մեքենայացված գյուղատնտեսության, սոցիալիստական մշակույթի, առաջավոր գիտության երկիր է։ Ազգային եկամտի մոտ 70 տոկոսն ստացվում է արդյունաբերական արտադրությունից։

Հանրապետության ինդուստրիայի դեմքը բնորոշող ուղղություններն են էլեկտրաէներգետիկան և քիմիան, լեռնահանքային արդյունաբերությունն ու սարքաշինությունը, էլեկտրոնիկան ու ռադիոտեխնիկան, էլեկտրամեքենաշինությունն ու ճշգրիտ մեքենաշինությունը, շինանյութերի արտադրությունը, թեթև և սննդի արդյունաբերությունը։ Մեր հանրապետության ինդուստրիայի հետագա առաջընթացի վերաբերյալ մշտական հոգատարության մի նոր վկայություն եղավ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության զարգացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1975 թվականի որոշումը։ Այսօր իսկ մենք տեսնում ենք այդ որոշման իրագործման արդյունքները։ «Պատրաստված է Հայաստանում» մակնիշը կրող սարքերը, հաստոցները մեծ պահանջարկ ունեն երկրի բոլոր տնտեսական շրջաններում։

Իր ավարտին է մոտենում համաշխարհային պրակտիկայում եզակի հիդրոտեխնիկական կառույցի՝ Արփա—Սևան թունելի շինարարությունը։ Սա իսկապես ինտերնացիոնալ կառույց է. այստեղ մեր հանրապետության համար կենսականորեն կարևոր հարցի լուծմանը իրենց մասնակցությունն են բերում ՍՍՀՄ



տասնյակ ազգերի ու ազգությունների ներկայացուցիչներ։ Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման բնագավառում շատ կարևոր նշանակություն կունենա նաև այն միջոցառումների իրականացումը, որոնք մշակվել են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հանձնարարությամբ։ Ինտերնացիոնալ կառույց է նաև հայկական ատոմակայանը, որի առաջին էներգաբլոկը արդեն էլեկտրաէներգիա է մատակարարում Անդրկովկասի եղբայրական հանրապետություններին։ Այսօր Հայաստանում գործում են տասնյակ հիդրոէլեկտրակայաններ և ջերմաէլեկտրակայաններ, որոնք տարեկան արտադրում են շուրջ 11 միլիարդ կվտ/ժմ էլեկտրաէներգիա, մոտ 5 անգամ ավելի, քան արտադրվել է 1913 թվականին ցարական Ռուսաստանում։ Հայաստանի արդյունաբերական ձեռնարկությունների ավելի քան 180 արտադրատեսակներ արտահանվում են 75 արտասահմանյան երկրներ։

Զարգացման նոր ազդակներ է ստանում հանրապետության գյուղատնտեսությունը։ Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում ընդունեցին «Հայկական ՍՍՀ ոռոգելի հողատարածության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին»։ Հանրապետության գյուղատնտեսության զարգացման այդ ծավալուն ծրագրով նախատեսվում է կառուցել 16 խոշոր ջրամբար, նշանակալիորեն ընդարձակել ոռոգվող հողատարածությունները, մեծ աշխատանքներ տանել աղուտների յուրացման, հողերի մելիորացման բնագավառում։ Զգալիորեն կավելանա խաղողի, մրգի, բանջարեղենի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների արտադրությունը։

Հանրապետության գյուղատնտեսության զարգացման համար անչափ կարևոր նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում ընդունված որոշման և ընկ. Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթների իրականացումը։ Այդ զեկուցման մեջ տրված է արդի փուլում սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման ուղղությամբ կուսակցության քաղաքականության և պրակտիկ գործունեության գիտական վերլուծությունը, նշված են գյուղատնտեսության հետագա վերելքի հիմնական ուղիներն ու կոնկրետ միջոցները։

Մեր հանրապետությունում ծաղկում են մշակույթն ու գիտությունը։ Դրա համոզիչ վկայությունը եղավ հայ արվեստի հարցերին նվիրված երկրորդ միջազգային գիտաժողովը, որն այս տարվա սեպտեմբերին տեղի ունեցավ Երևանում։

Մեր հանրապետության հերոսական բանվոր դասակարգի, գյուղի աշխատավորների հետ ուս-ուսի, իրենց մայր հայրենիքի բարգավաճման գործում խոշոր ավանդ են ներդնում նաև մեր մտավորականները։ Գիտության տարբեր բնագավառներում, գրականության, երաժշտության, նկարչության, քանդակագործության, կինոյի և թատրոնի ասպարեզում նրանք ստեղծում են մեր ժամանակի շունչն ու ոգին արտացոլող բարձրարվեստ գործեր, սոցիալիստական ռեալիզմի մնայուն նմուշներ։ Մենք բարձր ենք գնահատում նրանց ստեղծագործությունը. բազմաթիվ գրողներ, գիտնականներ և արվեստագետներ արժանացել են համաժողովրդական ճանաչման, ՍՍՀՄ բարձրագույն պարգևների, միութենական և հանրապետական մրցանակների։

Ամեն տարի հանրապետության 13 բուհերն ու 65 միջնակարգ-մասնագիտական հաստատությունները տալիս են ավելի քան 20 հազար շրջանավարտ՝ 208 մասնագիտություններով։ Հանրապետությունում այժմ կա 16 հազար 976 գիտաշխատող։ Ավելի լայն հորիզոններ են բացվում տասներորդ հնգամյակի խնդիրների կատարմամբ։ 1976—1980 թթ. արդյունաբերական արտադրանքի ծավալը կաճի 46, իսկ ազգային եկամուտը՝ 37,7 տոկոսով։

Տասներորդ հնգամյակի առաջին երկու տարիները նույնպես նշանավորվեցին հանրապետության ժողովրդական տնտեսության հետագա առավել մեծ վերելքով։ Ազգային եկամտի աճը, 1975 թվականի մակարդակի համեմա-

տությամբ, կազմեց 15 տոկոս, արդյունաբերական արտադրության ծավալն
ավելացավ 650 միլիոն ռուբլով, իսկ գյուղատնտեսության համախառն արտա-
դրանքի տարեկան միջին ծավալը, նախորդ հնգամյակի այդ ժամանակաշրջանի
համեմատությամբ, ավելացավ 19 տոկոսով: Այդ ժամանակամիջոցում հան-
րապետությունում իրագործվել են կապիտալ շինարարության մեծ ծրագրեր.
շահագործման են հանձնվել ավելի քան երկու միլիարդ ռուբլու հիմնական
ֆոնդեր, բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները հնգամյա պլանով
նախատեսված 8,9 տոկոսի փոխարեն աճել են 10 տոկոսով: Մեր հանրապե-
տությունն այսօր տասներորդ հնգամյակի առաջավորների շարքում է: Երկու
անգամ՝ 1976 և 1977 թվականներին ժողովրդատնտեսական պլանների կատար-
ման արդյունքների համար նա արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիս-
տրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր
դրոշին:

Ահա թե ինչ կարող է տալ բարեկամությունը, ահա թե ինչի են ընդունակ
լենինյան ազգային քաղաքականության իրականացման շնորհիվ բարեկամու-
թյան ու եղբայրության սերտ դաշինք կազմած ազգերն ու ազգությունները:

«Սովետական Հայաստանի պատմական փորձը,— 1970 թվականի նոյեմ-
բերի 29-ին Երևանում արտասանած իր ճառում շեշտեց ընկ. Լ. Ի. Բրեժնևը,—
կրկին ու կրկին հաստատում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ
թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական
ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար մի-
մյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ» (Լենինյան կուրսով,
հ. 3, էջ 232):

Անցյալ տարի առաջադեմ մարդկությունը մեծ հանդիսավորությամբ նշեց
Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-րդ տարեդարձը:
Այսօր վեց տասնամյակ անց այն օրերից, երբ սովետների II համագումարի
ամբիոնից Վ. Ի. Լենինը հայտարարեց, որ բանվորագյուղացիական հեղափո-
խությունն իրականություն է դարձել, ակնբախորեն երևում է, թե ինչպիսի հրա-
կայական վերափոխություններ են կատարվել մեր երկրում, թե տնտեսական
ու քաղաքական ինչպիսի բարձունքներ են նվաճվել: Այս ամենին մենք հասել
ենք լենինյան կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ: Շնորհիվ
իր հեղափոխական եռանդի, տիտանական աշխատանքի և կամքի, կոմունիս-
տական կուսակցությունը մեր երկիրը տանում է դեպի փառքի և հզորության
գագաթները: Այդ ուղին մեկ անգամ ևս վկայում է, որ մեծ Լենինի կուսակցու-
թյունն ստեղծվել է ժողովրդի համար, գոյություն ունի ժողովրդի համար և ծա-
ռայում է ժողովրդին:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության մարտական ջո-
կատներից մեկն էլ Հայաստանի կոմունիստական կուսակցությունն է, որն իր
ստեղծման օրից հանրապետության աշխատավորությանը դաստիարակում է
կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը համախմբվելու,
լենինյան պատգամները կյանքում իրականացնելու ոգով:

Հոկտեմբերի գաղափարներն ապրում են ու հաղթանակում: Ուստի բնական
է, որ ՍՄԿԿ XXV համագումարը շեշտեց. «Աշխատավորության, ամենից առաջ
երիտասարդ սերնդի գիտակցության մեջ սովետական հայրենասիրության ու
սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների, սովետների երկրի հա-
մար, մեր հայրենիքի համար հպարտության գաղափարների, սոցիալիզմի նվա-
ճումներին պաշտպան կանգնելու պատրաստակամության գաղափարների հաս-
տատումը եղել և մնում է կուսակցության կարևորագույն խնդիրներից մեկը»:
Սա լենինյան ազգային քաղաքականության կենսական ուժի, ժողովուրդների
բարեկամության և եղբայրության նկատմամբ կուսակցության ամենօրյա հո-
գատարության ապացույցն է: Պատահական չէ, որ այստեղ առանձնակի շեշտ-
ված է ամենից առաջ երիտասարդ սերնդի ինտերնացիոնալ և հայրենասիրա-
կան դաստիարակության խնդիրը: Մեր երիտասարդությունն այսօր հսկայա-



կան ժառանգություն է ստանում: Ավագ սերունդը նրան է ժառանգում ո՛չ միայն
ողջ երկիրը՝ իր բնական հարստություններով ու նյութական արժեքներով, այլև
երկրի հերոսական պատմությունը շարունակելու պատիվը, մեր երկրի բոլոր
ժողովուրդների բարեկամությունը որպես սրբության սրբոց, որպես ապագա
հաղթանակների մեծ գրավական պահպանելու պատիվը:

Այսօր, երբ իմպերիալիստական գաղափարախոսությունը նոր, կատաղի
հարձակումներ է կատարում մեր կարգերի դեմ, քողարկվելով, այսպես կոչված,
«մարդու իրավունքների պաշտպանության» դիմակի տակ, և ամեն կերպ ձգնում
է սովետական ժողովուրդների մեջ անվստահություն սերմանել միմյանց նկատ-
մամբ, սովետական բոլոր ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը նույն-
պես վճռական հակահարված է տալիս մեր երկրի ներքին գործերին միջամտե-
լու փորձերին, պահանջում է սրբությամբ հետևել Հելսինկիի համաեվրոպական
խորհրդակցության հռչակած սկզբունքներին:

Մեր բարեկամությունն անհնար է խարխլել: Տեղին է հիշել ընկ. Լ. Ի. Բրեժ-
նևի խոսքերը. «Սոցիալիզմը գործողության մեջ դրեց այնպիսի զորեղ շարժիչ
ուժ, ինչպիսին է ժողովուրդների բարեկամությունը: Սովետական բազմազգ ժո-
ղովրդի միասնությունն ամուր է ինչպես ադամանդը: Եվ ինչպես որ ադամանդը
փայլում է երփներանգ գույներով, այնպես էլ մեր ժողովրդի միասնությունը
շողշողում է այն կազմող ազգերի բազմազանությամբ, որոնցից յուրաքանչյուրն
ապրում է լիարյուն, ազատ ու երջանիկ կյանքով»:

Ահա այս ամուր և գեղեցիկ բարեկամության ավանդույթներն է ժառան-
գում մեր երիտասարդությունը: Դաստիարակված լինելով Հոկտեմբերի գաղա-
փարներով, սովետական երիտասարդությունը ցուցադրում է վստահված գործի
հանդեպ բարձր պատասխանատվություն, նախաձեռնություն հանդես բերելու,
կուսակցության առաջադրանքները գերազանց կատարելու հիանալի օրինակ-
ներ: Պատահական չէ, որ երկրի համար հեռանկարային և տնտեսական կարևոր
նշանակություն ունեցող կառույցներում աշխատանքի ողջ ծանրությունն իրենց
ուսերին են վերցնում երիտասարդները: Բայկալ—Ամուրյան մայրուղին, ուր
ուս-ուսի աշխատում են մեր երկրի բոլոր ժողովուրդների ներկայացուցիչները,
դարձել է ինտերնացիոնալ կառույցի խորհրդանիշ: Ի՞նչ կարելի է եզրակացնել
այս փաստերից. մենք հիանալի և մարտունակ սերունդ ունենք:

Սովետական Միությունը՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետու-
թյունը, խաղաղության դրոշակակիրն է, տարբեր սոցիալական կարգերի պատ-
կանող երկրների խաղաղ համագործակցության ջատագովը: Սովետական Միու-
թյան կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, խաղաղու-
թյան գործի անխոնջ մարտիկ ընկ. Լ. Ի. Բրեժնևի ջանքերը մշտապես ուղղված
են ժողովուրդների միջև խաղաղությունն ու բարեկամությունը ամրապնդելու,
պատերազմի սպառնալիքը ի չիք դարձնելու նպատակին: Այդ անխոնջ գործու-
նեության շնորհիվ աշխարհում ստեղծվել է մի իրավիճակ, երբ շատ հարցեր,
որոնք անցյալում լուծվում էին միայն զենքի ուժով, այսօր վճռվում են խաղաղ
բանակցությունների միջոցով: Համախմբվելով Սովետական Միության շուրջը,
սոցիալիստական համագործակցության երկրները, աշխարհի առաջադեմ ուժերն
այսօր հետևողականորեն պայքարում են լարվածության թուլացման պրոցեսն
անընդհատ խորացնելու և շարունակելու, նեյտրոնային և այլ տեսակի մահա-
բեր զենքերի արտադրությունն արգելելու, ընդհանուր զինաթափման հասնելու
համար: Ժողովուրդները պատերազմ չեն ցանկանում, պատերազմը հակամարդ-
կային է և հրեշավոր:

Հայ ժողովուրդը, որի համար խաղաղությունը միշտ նվիրական նպատակ
է եղել, իր երախտագիտության խոր զգացումներն է ուղղում մեր փառապանծ
կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, անձամբ Լ. Ի.
Բրեժնևին՝ մարդկության պայծառ ու լուսաշող ապագայի համար մղած նրանց
պայքարի համար:

Մեր երկրում գոյավորված մարդկանց պատմական նոր հանրությանը՝ սովե-
տական ժողովրդին, խաղաղությունը բնականորեն անհրաժեշտ է՝ հսկայածա-
վալ խնդիրների լուծման, կոմունիստական հասարակարգի կառուցման համար։

1977 թվականը սովետական հասարակության պատմության մեջ մտավ
որպես ՍՍՀՄ նոր Սահմանադրության՝ մեր կյանքի հիմնական օրենքի ընդուն-
ման տարի։ Մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների նվիրական իղձերն
իրենց խտացված արտահայտությունը գտան այդ դարակազմիկ փաստաթղ-
թում։ ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը կարևոր ուղենիշ եղավ մեր երկրի քա-
ղաքական պատմության մեջ։ Այն վառ կերպով վկայում է, որ շարունակվում
են հաջողությամբ կենսագործվել Հոկտեմբերյան հեղափոխության հռչակած
իդեալները, լենինյան պատգամները։

ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ արտացոլվել են մեր երկրում վերջին 40
տարում կատարված խոր որակական փոփոխությունները, սովետական երկրի
դերի և տեղի փոփոխությունը համաշխարհային ասպարեզում, որն արտա-
հայտվել է նրա տնտեսական հզորության և համաշխարհային հեղինակության
հսկայական աճով։ Դա մի երկրի սահմանադրություն է, որտեղ զարգացած
սոցիալիստական հասարակարգ է կառուցվել, ուր դեմոկրատորեն համադրվում
են բազմազգ Միության ընդհանուր շահերը այն կազմող ժողովուրդներից յու-
րաքանչյուրի շահերի հետ։

Սովետական Միության նոր Սահմանադրության պատմական նշանակու-
թյունն էլ հենց այն է, որ այն օրենսդրորեն վավերագրելով զարգացած սոցիա-
լիզմի կառուցման փաստը, արտացոլելով սովետական երկրի զարգացման ար-
դյունքները, նախորդ սահմանադրության ընդունումից հետո հասարակական
կյանքի բոլոր ոլորտներում տեղի ունեցած արմատական փոփոխությունները,
սոցիալիստական համաժողովրդական պետության կազմավորման սկզբունք-
ներն ու նպատակները, նրա մարմինների խնդիրները, կառուցվածքը, ֆունկ-
ցիաները, գործունեության կարգը համապատասխանեցրել է հասարակական
զարգացման ձեռք բերված փուլին։

Այդ պատմական խոշոր փոփոխությունները, բնականաբար, արտացոլվե-
ցին միութենական հանրապետությունների, այդ թվում և Հայկական Սովետա-
կան Սոցիալիստական Հանրապետության, սահմանադրություններում։

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության Սահմանա-
դրությունն առավել լրիվ համապատասխանում է հանրապետության զար-
գացման արդի փուլին, հասուն սոցիալիստական հասարակարգի պահանջնե-
րին, տնտեսական, սոցիալական, քաղաքական, կուլտուրական առաջընթացի
այն բարձունքներին, որոնց այսօր հասել է հայ ժողովուրդը՝ կոմունիստական
կուսակցության ղեկավարությամբ, Սովետական Միության ժողովուրդների
ինտերնացիոնալ միասնական ընտանիքում։

Այն ամենը, ինչ ձեռք է բերել հայ ժողովուրդը սոցիալիստական շինարա-
րության տարիներին, ՍՍՀՄ մեծ ընտանիքի մեջ համախմբված եղբայր ժողո-
վուրդների լենինյան բարեկամության, նրանց օգնության ու փոխօգնության,
կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության ար-
գասիքն է։

Սովետական Հայաստանի ողջ աշխատավորությունը վստահ է նայում իր
ապագային և այդ վստահության համար նա բոլոր հիմքերն ունի։ Մեկ ու կես
դարի քննություն բռնած բարեկամությունն իսկական բարեկամություն է, ան-
խախտ բարեկամություն։ Դա մի բարեկամություն է, որը դարձել է մեր ժողո-
վրդի ուղն ու ծուծը։

Բոլորովին վերջերս մեր ժողովուրդը նշեց իր նոր Սահմանադրության
առաջին տարելիցը։ Դա տարելիցն է այն անմոռանալի օրվա, երբ Սովետա-
կան Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլ-
խավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ
ընկեր Լ. Ի. Բրեժնևը, սովետական ողջ երկրով մեկ, ի լուր ամբողջ աշխարհի
հայտարարեց, որ համաժողովրդական պետության նոր Հիմնական օրենքը սկը-



սում է իր լիարյուն կյանքը, սկսում է գործել։ Այդ օրից սովետական ողջ
ժողովուրդը, այդ թվում և Սովետական Հայաստանի աշխատավորությունը,
ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարման նպատակով ծավալած գոր-
ծունեությունն ստուգում է զարգացած սոցիալիզմի դարաշրջանի այդ նշանակալի
փաստաթղթի խոր գաղափարաքաղաքական և օրենսդրական դրույթներով։

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի հան-
դիսությունները զուգադիպում են ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունման
առաջին տարելիցին։ Զուգադիպությունը, անշուշտ, պատահական է, բայց բնավ
զուրկ չէ իմաստից, քանզի առկա է միջնորդավորված կապն այդ երկու իրա-
դարձությունների միջև. 150 տարի առաջ մեր ժողովրդի կյանքում տեղի ունե-
ցած բախտորոշ շրջադարձը եղավ այն հիմքը, որի վրա խարսխվեց նրա հե-
տագա առաջընթացը և որը, վերջին հաշվով, հանդիսացավ նրա սոցիալական
ու ազգային վերածննդի նախապայմանը։

Սովետների բովանդակ երկիրը, այդ թվում և մեր հանրապետությունը,
աշխատանքային նորանոր նվաճումներով դիմավորեցին ՍՍՀՄ Սահմանա-
դրության ընդունման առաջին տարելիցը։ Այսօր սովետական յուրաքանչյուր
քաղաքացի առավել խորն է գիտակցում իր պատասխանատվությունը հասարա-
կության առջև, ամեն կերպ ձգտում է բարեխղճորեն կատարել սովետական
պետության, ժողովրդի հանդեպ մեր Հիմնական օրենքով սահմանված իր պար-
տականությունները։ Լինել սովետական քաղաքացի, օգտվել սովետական Սահ-
մանադրությամբ տրված մեծ իրավունքներից, նշանակում է անմնացորդ նվի-
րումով ծառայել կուսակցությանը, կոմունիզմի վեհ գործին, կրքոտ անհանդուր-
ժողականություն դրսևորել այն ամենի նկատմամբ, ինչ խանգարում է մեր
հզոր երթին։

Նոր Սահմանադրության ընդունումից հետո ընդամենը մեկ տարի է անցել,
բայց այդ համեմատաբար կարճ ժամանակաշրջանն էլ բավական էր համոզ-
վելու համար, թե ինչպիսի բարերար ներգործություն է ունենում այն մեր ողջ
կենսաձևի հետագա զարգացման ու կատարելագործման, սովետական ժողո-
վրդի սոցիալ-քաղաքական ու գաղափարական միասնության ամրապնդման
վրա։

Մեր բազմազգ սոցիալիստական երկրի բոլոր ժողովուրդները, այդ թվում և
հայ ժողովուրդը, անձնվեր ու հերոսական աշխատանքով է՛լ ավելի են հզորաց-
նում իրենց սոցիալիստական պետությունը, վերստին հաստատում են իրենց
միահամուռ աջակցությունը կոմունիստական կուսակցության և սովետական
պետության ներքին ու արտաքին քաղաքականությանը, իրենց անխախտ հավա-
տարմությունը, իրենց երախտագիտությունն են արտահայտում Սովետական
Միության կոմունիստական կուսակցությանը, նրա Կենտրոնական կոմիտեին,
ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին՝ մեր մեծ հայրենիքի՝ Սովետական Միության
տնտեսական ու սոցիալական ծաղկման, հզորության ու փառքի, միջազգա-
յին բարձր հեղինակության ապահովման համար։

---

# ՊԱՏՄԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅԱՆ ԲԱՂՁԱԼԻ ԵԼՔԸ

**Ա. Գ. ԱԴՈՅԱՆ**

> Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերմամբ, մեծ խորհուրդ ունի:
>
> Մ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

## I

Լ**ՐԱՑԱՎ ՄԵԿ ԵՎ ԿԵՍ ԴԱՐ** այն բաղձալի պահից (1828), երբ հայության արևելյան հատվածը՝ ռուսական բանակի հաղթական ճակատամարտերի շնորհիվ, ընդմիշտ ազատագրվեց շահական Պարսկաստանի ու սուլթանական Թուրքիայի աղետալի լծից: Դրանով շառագունեց հայության ազգային-ազատագրության խոստումնալի այգը: Չնայած այն իրողությանը, որ հայ-ռուսական կապերը շատ վաղուց են դրսևորվել հզոր Ռուսաստանի սոցիալ-տնտեսական ներքին ու արտաքին հարաբերություններում, բայց և այնպես, հայ ժողովրդի բազմամյա դժնի մաքառումներն օտարերկրյա վամպիրների դեմ հաջողությամբ պսակվեցին միայն վերոհիշյալ եղելության շնորհիվ:

Ճշմարիտ է, Ռուսաստանի հետ Արևելահայաստանի միավորումով ըստ էության չփոխվեց ցարիզմի վարած գաղութատիրական կուրսը, սակայն օբյեկտիվորեն դա այն ժամանակահատվածն էր, երբ Ռուսաստանը, Ֆ. Էնգելսի խոսքերով ասած, Արևելքի հանդեպ իրոք պրոգրեսիվ դեր էր կատարում: Ուստի, երախտագիտական բուռն զգացումով գնահատենք այն ամենակենսական և ամենատարրական նախադրյալի ստեղծումը, երբ վերջապես հայության արևելյան հատվածն ապահով կյանքի և որ անգնահատելի է՝ գոյատևելու ու զարգանալու հնարավորություններ ստացավ: Հետևաբար, միանգամայն օրինաչափ է, երբ հայ ժողովրդի երևելի ու պրոգրեսիվ գործիչները շնորհակալանքի սրտառուչ խոսքեր են հղել ռուս ժողովրդին: «Օրհնվի էն սհաթը,— գրել է Խ. Աբովյանը,— որ ռըսի օրհնած ոտը հայոց լիս աշխարհը մտավ ու ղզլբաշի անիծած չար շունչը մեր երկրիցը հալածեց»:

Հայության ազատագրական դեգերումների արտահայտիչ Խ. Աբովյանի շուրթերով ասված այդ ջերմագին խոսքն իրականում ողջ ժողովրդի սրտի խորքերից էր բխել: Հայաստանի պատմությամբ հետաքրքրվող յուրաքանչյուր ոք գիտե, որ նրա խելամիտ ու առաջավոր գործիչներից շատերը անդուլ ջանք են գործադրել [sic: տքնել են] գտնելու հարազատ ժողովրդի ազատագրության հուսալի ելքը: Այդ ասպարեզում առանձնապես ակնառու դեր են կատարել Իսրայել Օրին, Շահամիր Շահամիրյանը, Հովսեփ Էմինը և ուրիշներ: Նրանք բախել են շատ պետությունների դռներ, աղերսագրեր ու հաղորդագրեր են հանձնել նրանց, օգնություն հայցել խոշտանգվող հարազատ ժողովրդին փրկելու նկրտումներով:

Պետրոս առաջինին հայ մելիքները գրել են, թե մենք անձնատուր ենք լինում Ձերդ մեծության իշխանությանն ու կառավարմանը, մեր կյանքն ու ողջ ունեցվածքը հանձնում ենք Ձեր տնօրինմանը: Սակայն ռուսաց արտաքին հարաբերությունների իրավիճակն ու մանավանդ Պետրոս առաջինի մահը հետաձգեցին օգնության բաղձալի պահը:

Հայկական հարցի նկատմամբ Ֆրանսիայի, Գերմանիայի ու Անգլիայի խաղացած նողկալի դերի փայլուն ապացույց է պատմության այն վկայությունը, ըստ որի, Ներսես Վարժապետյանը (Կ. Պոլսի պատրիարքը), Բեռլինի կոնգրեսից ստանալով իր ներկայացրած ծրագրի մերժումը, դիմեց Պոլսում անգլիական դեսպան Լայարդին, հիշեցնելով, թե անգլիական կառավարությունը Խրիմյան Հայրիկի պատգամավորությանը խոստացել է դրականորեն լուծել հայոց հարցը: Անգլիական դեսպանն ասել է Ներսեսին դառը ճշմարտությունը, թե Անգլիան երբեք չի համաձայնի ինքնավարություն շնորհել հայերին, քանզի դա կնշանակեր նրանց գործիք դարձնել Ռուսաստանի ձեռքում:

Շանթահարված Ներսեսը պատասխանել է.

> «Այնուամենայնիվ, դուք մեզ չեք արգելի հոգով ռուսներ լինել, որովհետև միայն Ռուսաստանին և Սան-Ստեֆանոյի դաշնագրի որոշումներին ենք պարտական մեր վիճակի այս փոքր բարելավումների համար, որ մենք ստանալու ենք Բեռլինի կոնգրեսից: Դուք՝ անգլիացիք, միայն թուրքերին եք համակրում, և արևելյան քրիստոնյաների վիճակը ոչինչ նշանակություն չունի Ձեզ համար»: Կեղծ բարեկամից հուսալքված Ն. Վարժապետյանը եզրակացրել է. «անգլիացիք և թուրքերը այժմ մեզ համար միևնույնն են, հայերը թուրքերից ոչինչ սպասելիք չունեն» (տե՛ս Ջ. Կիրակոսյան, Բուրժուական դիվանագիտությունը և Հայաստանը, «Հայաստան» հրատ., 1978, էջ 275):

Այս վկայությունից չպետք է եզրակացնել, թե հայոց ռուսական կողմնորոշման ձգտումներն ու քաղաքական իդեաները հասունացել են միայն նախորդ դարի կեսերին: Գրավոր աղբյուրներն ու բազմաթիվ պաշտոնական փաստաթղթերն ապացուցում են, որ հայ ժողովրդի (երկու հատվածների) ռուսական կողմնորոշման ձգտումը զանգվածային բնույթ է կրել տակավին XVIII դարասկզբից: Սա չի նշանակում, թե Արևմտահայաստանի բոլոր վիլայեթներում ու սոցիալական բոլոր խավերում միշտ գերիշխել է այդ նկրտումը: Դա հակասում է իրականությանը: Այստեղ ռուսական կողմնորոշման գաղափարն արևմտահայության համար միս ու արյուն է դարձել ազատագրական ընդվզումների պարտությանը համընթաց. ընդվզումներ, որոնց արյունալի ձախողումները հետզհետե հօդս ցնդեցրին եվրոպական տերությունների արդարամտության առասպելը:

Իրականում ժողովուրդը մեկեն չի հասնում սոցիալ-քաղաքական և ազգային-ազատագրման ու անկախության գաղափարին: Վ. Ի. Լենինը քանիցս շեշտել է, թե մարդկային զանգվածների զարթոնքը ֆեոդալական նիրհից, նրանց կռիվն ամեն ազգային կեղեքման դեմ հանուն ժողովրդի ինքնիշխանության, հանուն ազգի ինքնիշխանության՝ պրոգրեսիվ է (տե՛ս ПСС, т. 24, стр. 132):

Այսպիսով, հայ ժողովրդի դարավոր պայքարը թուրքական ու պարսկական անհամեմատ հետամնաց և արյունարբու բռնակալությունների դեմ ո՛չ միայն պրոգրեսիվ էր, այլև պատմականորեն լիովին արդարացի: Ի դեպ, այս հետևության ճշմարտացիությունն աներկբայելի է դառնում Ֆ. Էնգելսի մի ասույթով ևս, որը կարծյոք վերաբերում է արևմտահայության այն վիճակին, որում նա գտնվում էր մինչև մեծ եղեռնը: Նա գրել է.

> «Քանի դեռ կենսունակ ժողովուրդը շղթայված է օտար զավթիչների կողմից, նա անհրաժեշտաբար իր բոլոր ուժերը, բոլոր ձգտումները, իր ողջ կորովն ուղղում է արտաքին թշնամու դեմ և քանի դեռ նրա ներքին կյանքն այդպես էլ մնում է կաթվածահար, նա ի վիճակի չէ կռվելու սոցիալական ազատության համար» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 18, стр. 555):

Միավորվելով Ռուսաստանին, արևելահայությունն ընդմիշտ ձերբազատվեց հետամնաց թուրքական և պարսկական բռնակալությունների անարգ լծից,

հնարավորություն ստացավ պատմական մի ողջ ֆորմացիա առաջ ոստնելու։ Մեծ առավելություն էր՝ դառնալ Ռուսաստանի քաղաքացի, ունենալ խնչքի ու կյանքի ազատություն, զբաղվել առևտրով, տնօրինել սեփական աշխատուժն իր կարողության համեմատ, հաղորդակից լինել կուլտուրայի ու գիտության հասումներին, միաձուլվել Ռուսաստանի հեղափոխական շարժման ջոկատներին, զենքը ձեռքին, ուս-ուսի, ռուս, ուկրաինացի, վրացի ու Ռուսաստանի այլ ազգերի և ժողովուրդների առաջավոր զավակների հետ ակտիվորեն կռվել հանուն նոր, դեմոկրատական Ռուսաստանի հաստատման։

Միավորվելով Ռուսաստանի հետ, արևելահայության առավել գիտակից մասը դրականորեն արձագանքեց ռուսական դեմոկրատական առաջավոր մտքի ու շարժման կոչերին, որն իր հերթին սատար եղավ Ռադիշչևի, Չերնիշևսկու, Բելինսկու, Գերցենի և մյուսների հետևորդների, ազգային առաջընթացին։ Այդ պրոգրեսիվ գործելակերպը զգալիորեն ամրապնդեց ռուս-հայկական բարեկամական կապերը, որոնք բարերար ներգործություն ունեցան մեր ժողովրդի հոգևոր կուլտուրայի զարգացման վրա։ Այդ կապերի հետևորդները ռուս ժողովրդի ազատամիտ շրջաններին ծանոթացրին հայության անցյալի հարուստ կուլտուրայի փայլուն նմուշներին, նաև իրենց հուզող ազգային ցավերին։

Արդ, ինչպե՞ս ընթացավ արևելահայության կյանքը Ռուսաստանին միավորվելուց հետո։

Ներգրավվելով կապիտալիստական արտադրահարաբերությունների ուժգնացող հորձանուտը, Արևելահայաստանը ետ թողեց երեկվա իրեն կեղեքող պարսիկ և թուրք բեգերին ու փաշաներին, որոնք երկա՜ր, շա՜տ երկար մնացին միջնադարյան խղճուկ հողատիրության, կոռ ու բեգյառի էքստենսիվ տնտեսվարության գոյավիճակում։ Հիշենք, թե ինչ է գրել Ֆ. Էնգելսն այս առիթով.

> «Թուրքական, նմանապես և արևելյան բոլոր մյուս տիրակալությունները անհամատեղելի են կապիտալիստական կարգերին, քանզի ձեռք բերած հավելյալ արժեքը բնավ ապահովված չէ փաշաների ու սատրապների գիշատիչ ձեռքերից, չկա բուրժուական ձեռնարկատիրական գործունեության առաջին հիմնական նախապայմանը՝ առևտրականի անձնավորության ու սեփականության ապահովությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 22, стр. 33)։

Ռուսաստանին միավորվելուց ընդամենը երեք տասնամյակ անց, արևելահայությունը հաստատապես ընտրեց առավել պրոգրեսիվ արտադրաեղանակի ուղին, սկսեց բարձրանալ նրա կենսամակարդակը և բարեկեցությունը։ Կապիտալիստական արտադրահարաբերությունների ներթափանցումն արևելահայ գյուղ օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալներ ստեղծեց բանվոր դասակարգի շարքերը համալրելու երեկվա հայ շինականով։ Ինչպես ճիշտ նկատել է անվանի դեմոկրատ-գրող Ղ. Աղայանը, տասը տարում ժողովուրդն այնքան փոխվեց, որքան չէր փոխվել հարյուրամյակների ընթացքում։ Ճորտատիրական կարգերի փլուզման իրավական ակտով (1861 թ.), ռուսական հեղափոխական-դեմոկրատական հասարակական մտքի բուռն զարգացման ազդեցությամբ, Մ. Նալբանդյանի գլխավորությամբ ուժգնացավ նաև մեր ժողովրդի դեմոկրատական-հեղափոխական առաջընթացը։ Մ. Նալբանդյանի լուսավորական հույժ արգասալի գործունեության ուղին հարթողները ժամանակին եղել են Ստ. Նազարյանցն ու Խ. Աբովյանը։ Անցյալ դարի այս երկու երևելի գործիչներն առաջինն էին, որ հայության հասարակական կուլտուրական զարթոնքին խթանող նախընտրեցին ժամանակի Ռուսիան։ Մ. Նալբանդյանն իր հասարակական ու քաղաքական գործունեությամբ նշանավորեց մեր պատմական առաջխաղացման առավել բարձր փուլը։

Նա, ով իր ժամանակի հայ գործիչներից ամենից հեղափոխական ու դեմոկրատական անձնավորությունն էր, որը խորապես համոզված էր, թե կեղեքվող ժողովուրդների առջև այնպիսի վիթխարի խնդիրներ են ծառացել, որոնց լուծումը հնարավոր է միայն բռնակալության գահը խորտակելով.



Նա, ով ջանում էր այդ միտումով իր պարզած հեղափոխական ու դեմոկրատական դրոշի ներքո հավաքել բոլոր մարտունակ տարրերին.

Նա, ով արևմտահայության ազատագրման գլխավոր նախապայմանն էր սեպում նրա ձերբազատումը եվրոպական շահամոլ տերությունների երկծալ խարազանից, հայության կյանքում այդ մարդը Մ. Նալբանդյանն էր, որը մեր ժողովրդին առաջնորդում էր Չերնիշևսկու նշած հեղափոխական հունով։

> «Հայ ժողովրդի զարթոնքի դարաշրջանում առաջինն էր նա, որ բարձրացրեց ազգության դրոշը՝ հանուն հայրենիքի հեղափոխական վերանորոգության, հանուն նրա «կենսանորոգ և որոտընդոստ հարության» (Աշոտ Հովհաննիսյան, Նալբանդյանը և նրա ժամանակը, գիրք երկրորդ, «Հայպետհրատ», 1956, էջ 602)։

Սակայն այդ ճշմարիտ ուղուց եղել են շեղվելու փորձեր, որոնք ծանր են նստել մեր ժողովրդին։ Դրանք հիշեցնում են Հեգելի խորիմաստ խոսքը, որ ժողովուրդներն ու կառավարությունները երբեք և ոչինչ չեն սովորել պատմությունից և չեն գործել համաձայն այն դասերի, որոնք կարելի էր դրանից քաղել (տե՛ս Гегель, Соч., т. 8, М.—Л., 1935, стр. 7—8)։

Հեգելի այս հետևության վերաբերյալ Լենինը նշել է.

«Շա՜տ խելոք է ասված», «սրամի՜տ է և խելոք» (ընդգծումը մերն է— Ա. Ա.) (տե՛ս Երկեր, հ. 38, էջ 337—338)։

Այս առումով խիստ բնորոշ է Ավ. Իսահակյանի՝ դաշնակցության պարագլուխներից մեկին՝ 1922 թ. հղած նամակը, որում ասված է.

> «Ես ատող եմ Անտանտին... իմ նպատակն էր փրկել հայի ֆիզիկ. գոյությունը։ Այժմ էլ նույն տեսակետն ունեմ. հայի ֆիզիկ. գոյությունը բարձր է իր անկախությունից և ուրեմն ավելի կուսակցական շահերից, այս տեսակետից ես դաշնակցությունը գտնում եմ ճանցավոր, տղայամիտ և տխաս, ենթակա բուրժուազիայի և ամբոխի թելադրություններին. քիչ բացառությամբ դաշնակցության ղեկավարները տգետ են և ավանտյուրիստներ։
>
> ...Ի՞նչ խելք էր, որ չընդունել բոլշևիկյան օրիենտացիան... Ձեզ ո՞վ ասաց, թե Անտանտը պիտի ազատե Հայաստանը, և միացյալ Հայաստանը։ Ի՞նչ հիմք կար հավատալու խենթ Վիլսոնին և հայասերների դատարկաբանություններին։ Ամբողջ ջանքեր պիտի լիներ գոնե եղածը, 1914 թ. սահմանները պահել։ Շանթի ապիկար առաքելությունը Մոսկվա, Դարբինյանի էգոիզմը, Համոյի անճկունությունը... ահա աղետի ճիմքը։ Փոխանակ Ադրբեջանի հետ միասին ընկներ բոլշևիզմի փրկարար գիրկը, Հայաստանը զենք էր խաղացնում Ռուսիայի դեմ։
>
> Հիմա, հիմա ամենալավ լուծումն է, որ եղավ. միայն բոլշևիկ Հայաստանը կարող էր պահել հայի գոյությունը։ Դաշնակցությունը եթե մնար մինչև օրս մի 200.000 հայի գլուխ կերած կլիներ։ Ելքը սա է. թողնել թշնամական ընթացքը բոլշևիկների դեմ, միանալ, աշխատել Ռուսիայի վերանորոգման համար։ Մեր գոյությունը հիմա կախված է միայն Ռուսիայի գոյությունից... ոճիր է նորից հավատալ Անտանտին» (ընդգծումները մերն են— Ա. Ա.)։

Հիրավի, պատմության դասերը քամահրող դաշնակ պոլիտիկանները հիմա էլ տարին մի անգամ ծնկաչոք պաղատում են կապիտալիստական տերությունների մեծերին պաշտպան կանգնել հայոց դատին։ Այդպես վարվեցին նույնիսկ, երբ թուրքական զորքերը ներխուժեցին Կիպրոս։ Այստեղ է ասված, թե սապատավորին գերեզմանը կուղղի։

Վարպետի նամակի որքան արդարացի, նույնքան և ճշմարիտ դատողությունները կասկածի առիթ չեն տալիս, որ դաշնակցական կուսակցությունն ի սկզբանե անտեսել էր պատմության դասերը, որովհետև նա արհամարհում էր ո՛չ միայն քաղաքականությունը, այլև գիտությունը։

Նրանց հետ պատահեց այն, ինչ ասել է ֆրանսիական պատմաբան Մարկ Բլոկը: «Անցյալի անգիտությունն անխուսափելիորեն հանգեցնում է ներկայիս չըմբռնելուն: Թեև, նույնքան և ապարդյուն են անցյալն ըմբռնելու փորձերը, եթե չես պատկերացնում ներկան» (Марк Блок, Апология истории или ремесло историка. М., 1973, стр. 27):

Հետևաբար, երիցս իրավացի էր ու հեռատես կոմպոզիտոր Կոմիտասը, որը 1912 թ. գրել է. «Չիք փրկություն առանց Ռուսիո: Ապավինենք քեռի ռուսին» (ընդգծումը մերն է— Ա. Ա.):

Միավորվելով Ռուսաստանին, արևելահայությունն սկսեց ընթանալ ազգային կոնսոլիդացման հունով, հնարավորություն ունեցավ մասնակցելու ռուս ժողովրդի մղած առաջավոր սոցիալական պայքարին, վերջնականապես որդեգրեց Չերնիշևսկու, Գերցենի, Պլեխանովի հայացքները, հարեց Ռուսաստանի առաջընթացին: Հայկական բազմաթիվ կուլտուրական օջախների հիմնադրում ու բարգավաճում Ռուսաստանի տարածքի վրա, հայության տնտեսական և կուլտուրական կյանքի համեմատաբար արագ վերընթաց և բնակչության աճ:

Տակավին անցյալ դարի վերջերից սկսած, արևելահայության առավել առաջադեմ ու հեղափոխական գործիչները՝ Լալայանցն ու Շահումյանը, Սպանդարյանն ու Կնունյանցը, Մյասնիկյանն ու Լուկաշինը, Կասյանն ու Շահվերդյանը, Ա. Հովհաննիսյանն ու Ա. Մելիքյանը, Մարտիկյանն ու Տեր-Գաբրիելյանը, Ա. Բեկզադյանն ու Խումարյանը, Խանոյանն ու Ն. Ալաջալովան, Տեր-Պետրոսյանը և շատերը, համախմբվելով մեր դարի հեղափոխական մտքի ու գործի ռահվիրա Վ. Ի. Լենինի գլխավորած բոլշևիկյան կուսակցության դրոշի ներքո, անձնուրացաբար հայ բանվորության հեղափոխական ջոկատները ներգրավեցին մեծ Լենինի գլխավորած բոլշևիկյան շարժման ինտերնացիոնալիստական կոհորտաներում:

Միայն մեծ Հոկտեմբերի հաղթությամբ լուծվեցին հայոց սոցիալական ու ազգային ազատագրական կռվի դարավոր հանգույցները:

## II

Հանրահայտ է պատմական այն իրողությունը, որ հայ և ռուս ժողովուրդների տևական բարեկամությունն ունի իր փուլերը՝ նախահոկտեմբերյան և հետհոկտեմբերյան: Ընդ որում, առաջին փուլում բարեկամացած ժողովուրդները բնավ իրավահավասար չէին, մի հանգամանք, որը հատուկ էր ո՛չ միայն ցարական Ռուսաստանին, այլև առհասարակ նախասոցիալիստական հասարակություններին:

Մեծ Հոկտեմբերի ծնունդ սովետական հանրակարգը վերացրեց այդ անարդարությունը և հետևողականորեն իրագործեց լենինյանների ազգային քաղաքականությունը: Եվ դա այդ բարեկամության երկրորդ մշտական փուլը նշանավորեց:

Հռչակելով ազգերի ինքնորոշման, ընդհուպ մինչև պետական անջատման բոլշևիկյան դեկլարացիան, Հոկտեմբերյան հեղափոխությունն այն կենսագործեց ամենայն հետևողականությամբ ու ճշգրտությամբ: Ցարական Ռուսաստանի բազմաթիվ ազգեր ստեղծեցին սովետական ազգային ուրույն պետություններ՝ այդ ակտից բխող բոլոր իրողություններով: Այդ պետությունները՝ այդ թվում և Հայաստանը, կամովին ստեղծեցին Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը խարսխված է ազգերի ու ժողովուրդների լենինյան եղբայրության ինտերնացիոնալ սկզբունքների, հավասարության, փոխօգնության անքակտելի հենքի վրա:

Մենք հպարտ ենք, որ Լենինի հայ աշակերտներն ու համախոհները, զինված մեծ առաջնորդի անմահ ուսմունքով, ռուս մեծ ժողովրդի, ինչպես և Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության (ՍՍՀՄ) բոլոր հավասարազոր անդամների օգնությամբ, կարճ ժամանակամիջոցում վերականգնեցին ու ծաղկեցրին ֆիզիկական բնաջնջման եզրին կանգնած Հայաստանը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը մեզ պարգևեց սովետական սոցիալիստական նոր հայրենիք՝ նո՛ր պատմությամբ, նո՛ր էկոնոմիկայով ու բարգավաճող կուլտուրայով, սոցիալական ու ազգային աննախադեպ ազատությամբ, ՍՍՀՄ բոլոր ազգերի անշահախնդիր եղբայրությամբ, ջերմագին բարեկամությամբ և կոմունիզմ կառուցելու բոլոր նախադրյալներով:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ամենաթեժ օրերին անգամ, աշխարհի բոլոր կեղեքվողների պաշտպան Վ. Ի. Լենինը բնավ չէր մոռանում հայության դժնի վիճակը: Եվ ահա 1917 թ. դեկտեմբերի 29-ին սովետական կառավարությունն ընդունեց Թուրքահայաստանի մասին դեկրետը, որում ասված է.

> «Ժողովրդական կոմիսարների խորհուրդը հայտարարում է հայ ժողովրդին, որ Ռուսաստանի բանվորական և գյուղացիական կառավարությունը պաշտպանում է Ռուսաստանի գրաված «Թուրքահայաստանի» հայերի ազատ ինքնորոշման իրավունքը, ընդհուպ մինչև լիակատար անկախությունը» (Декреты Советской власти, т. I, М., 1957, стр. 298—299):

Ցավոք, այս պատմական ակտը չիրագործվեց, որովհետև գերմանաթուրքական իմպերիալիստների ու Անդրկովկասյան հակահեղափոխականների բիրտ ուժերով այն ի չիք եղավ:

Ռուս ժողովրդի գաղափարական առաջամարտիկների՝ կոմունիստների բարոյաքաղաքական, նյութական ու ռազմական օգնության շնորհիվ Սովետական Հայաստանի բոլշևիկները գերագույն ջանքերով, մարքսիզմ-լենինիզմի կենարար ուսմունքով կռեցին ու կոփեցին Հայաստանի աշխատավորության հոգևոր աշխարհը: Ժողովուրդը համոզվեց, որ ազգային հարցի, կեղեքվող մարդկության վերջնական ազատագրման միակ ուժը Վ. Ի. Լենինի կուսակցությունն է՝ խոսքի ու գործի անխախտ միասնությամբ:

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի վսեմ գաղափարների հետևողական կիրառողն ու զարգացնողը՝ Լենինը, Ռուսաստանի բանվոր դասակարգին սովորեցնում էր.

> «...ռուսական բանվորները չեն կարող և չպետք է մոռանան ազգային այն կեղեքման մասին, որի լծի տակ գտնվում են Ռուսաստանում ապրող տասնյակ և տասնյակ միլիոնավոր «այլազգիներ»...
>
> Ազգությունների կեղեքման քաղաքականությունն ազգերի բաժանման քաղաքականություն է: Այն միաժամանակ ժողովրդի գիտակցությունը սիստեմատիկաբար այլասերելու քաղաքականություն է: Սևհարյուրակայինների բոլոր հաշիվները կառուցված են տարբեր ազգերի շահերի հակադրության, խավար ու ճնշված մասսաների գիտակցությունը թունավորելու վրա» (Երկեր, հ. 20, էջ 287—288):

Հիրավի, սովետական կարգերի տարիներին վիթխարի աշխատանք է կատարվել ազգային նախապաշարումների, շովինիզմի ու նացիոնալիզմի մնացուկները հաղթահարելու, միակ գիտական ու ինտերնացիոնալ ուսմունքի՝ մարքսիզմ-լենինիզմի ոգով աշխատավորներին տոգորելու մարզում: Դառնալով ողջ աշխարհի կեղեքվող մարդկության սոցիալական ու ազգային ազատագրման անմար փարոսը, ՍՍՀՄ-ը կարճ ժամանակահատվածում համակողմանի ու արմատական վերափոխումներ իրագործեց: Այն դարձավ աշխատավոր ժողովրդի հիմնովին վերածնման, կոմունիստական աշխարհայացքով համակված պատմության ամենաառաջավոր ու խրոխտ անպարտելի գործոնը:

Խորապես ոգևորված իր ժողովրդի սոցիալ-ազգային վերածնության հո-

յակապ առաջընթացով, մեծ Հոկտեմբերի բարիկադների վրա կռված պոետը՝ Եղիշե Չարենցը, գեղարվեստորեն մարմնավորելով ժողովուրդների կոմունիստական երթը, իրեն հատուկ անկեղծությամբ գրեց.

Եվ անցյալում քո տեսած
Ժողովուրդները այն ճորտ՝
Այսօր երկրում հարազատ
Կյանք են կերտում իրենց նոր—
Դարձած մի նոր ժողովուրդ՝
Ոսոխ ազգերն այն անցյալ—
Իրենց երկրի ներքո լուրթ
Կյանք են կերտում մի պայծառ...

Կերտում են կյանք մի լուսե,
Ուր ո՛չ տեր կա և ո՛չ ճորտ
Եվ ամենայն մի ազգ՝ իր
Հանճարն է արդ հորդում հորդ,—
Եվ ամենայն մի ազգն՝ իր
Երանգներով ու գույնով
Նույն նպատակն է ազնիվ
Երգում՝ ուրույն իր ձայնով:

Այո՛, պոետը ամենայն խորությամբ զգացել ու վերաիմաստավորել է սովետական ազգերի ու ժողովուրդների այն հսկայական պրոգրեսը, որն առավել հարստացրեց աշխատավորների երբեմնի սահմանափակ հոգևոր աշխարհը, նոր բովանդակությամբ օժտեց և վառ հեռանկարներ բացեց նրանց մտահորիզոնի ընդլայնման համար: Այս կապակցությամբ նշենք, որ մեր հանրապետության մեծվաջան աշխատավորությունը խոր բերկրանքով ընկալեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի խորիմաստ գնահատականն այն առթիվ, որ սովետահայությունը՝

«...սիրում է իր հայրենի երկիրը՝ Սովետական Սոցիալիստական Հայաստանը: Հայրենասիրությունը դա սքանչելի հատկություն է, որն ամենախորին հարգանք է ներշնչում:

Բայց եթե հայերը և մեր երկրի բոլոր ժողովուրդներն ընկալեին գործի միայն մեկ կողմը, եթե նրանք խոսեին ու մտածեին միայն իրենց հանրապետության մասին, նրա քաղաքների ու դաշտերի, նրա կուլտուրայի մասին, ապա կարող էր նացիոնալիստական դիրքերը գլորվելու վտանգ առաջանալ: Հայաստանում մենք տեսանք միանգամայն այլ բան: Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես և սովետական մյուս ժողովուրդների մեջ, զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով դեպի մեր ընդհանուր սոցիալիստական մեծ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 251):

Հանրահայտ է, որ Հայաստանի աշխատավորությունը բազում առիթներով, իր առօրյա ստեղծարար գործունեությամբ, ազգային-ինտերնացիոնալիստական աշխարհզգացման ներդաշնակության սքանչելի ու զանգվածային օրինակներ է տվել: Դրա առավել քան ցայտուն ապացույցը հայորդիների սխրագործություններն են մեծ Հայրենականի ռազմաճակատներում: Հայ ժողովուրդը հպարտությամբ ու երախտագիտությամբ է վերհիշում, որ սոցիալիստական իր ծաղկուն հայրենիքի հոյակապ մեծագործությունների ու գեղատեսիլ կառույցների հիմքերն ամրակայված են հայության սոցիալական և ազգային ազատագրման համար մարտնչած ռուս ու հայ զոհերի արյան շաղախով:

Հայ-ռուսական դարավոր քաղաքական-տնտեսական և կուլտուր-ստեղծագործական նորովի փոխհարաբերություններում հայության զավակները երբեք կրավորական կենվորներ չեն հանդիսացել: Ընդհակառակը, հանդիսանալով իր ժամանակի տնտեսավարման, ճարտարապետության, գրականության ու արվեստի, պատմագիտության ու իմաստասիրության առաջավոր կուլտուրայի ներկայացուցիչներ, հայերն ակտիվ մասնակցել են Ռուսաստանի պրոգրեսիվ առաջընթացին, ընդհուպ մինչև նրա որդիների ակնառու ու հավատարիմ ծառայությունը նաև ռուսաստանյան ռազմական ոլորտներում: Հիրավի, միանալով Ռուսաստանին, հայերն ակտիվ մասնակցություն ունեցան Հյուսիսից եկող իրենց ազատարար զորամասերի թեժ մարտերում, նարոդնիկական շարժման ջոկատներում, ցարիզմի տապալման համար ընթացող հասարակական առաջավոր



ուժերի տևական պայքարում, ինչպես և ռուսաստանյան երկու հեղափոխությունների՝ քաղաքացիական, առանձնապես մեծ Հոկտեմբերի հաղթանակի համար մղված արյունահեղ կռիվներում: Ռուս-հայկական դարավոր բարեկամության հարաբերություններում ակնբախորեն դրսևորվեց այն ողջ առաջավորն ու դրականը, ինչ ընդհանուր է եղբայրացած ժողովուրդների սոցիալական հոգեբանությանը ու առաջադիմական նկրտումներին:

Էպոխաշեն այդ իրադարձության սիմվոլիկ արտահայտությունը Վոլգայի ու Արաքսի գրկախառնությունն է Կասպից լճի կապույտ ավազանում:

## III

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը ոչ միայն ազատություն բերեց մեր ժողովրդին, այլև ընդմիշտ եղբայրացնելով Ռուսաստանի բոլոր ազգերին ու ժողովուրդներին, մարքսիզմ-լենինիզմի ամենազոր գաղափարների կախարդիչ ուժով նրան ներգրավեց աշխարհնորոգ այն հորձանուտում, որը պատմական օրինաչափության համաձայն՝ սոցիալիզմի կառուցում հռչակվեց: Այդ մրրկածուփ, բայց միաժամանակ ստեղծարար ժամանակահատվածում պատմության մոխրակույտից վեր ճախրած Հայաստանը հարստացավ նյութապես ու կուլտուրայով, առնացավ հոգեպես ու շինարարական մղումով և վերածնվեց մեկընդմիշտ:

Այս ամենից հետո ինչպե՞ս ընթացավ հնամենի հայ ազգի սոցիալիստական վերածնունդը կամ «որոտընդոստ հարությունը»: Գրեթե այնպես, ինչպես եղբայրական սոցիալիստական մյուս ազգերի լենինյան վերընթացը: Շուրջ վեց տասնամյակ է, ինչ սովետական սոցիալիստական բոլոր ազգերի ու ժողովուրդների պայծառ համաստեղության մեջ վառ փայլատակում է «լույսի ու հույսի» հայոց աստղը:

Իսկ ո՞րն էր սոցիալական այդ հրաշքի կախարդական բանալին: Այն, որ տառապյալ հայության այդ կենսահորդ ու հոգեպարար քաղաքական-գաղափարական վերամկրտությունը կատարվեց ՍՄԿԿ գործադրած լենինյան ազգային քաղաքականության և ռուս պրոլետարիատի հեղափոխիչ միսիայի առատաբուղխ ու անտրիտուր աջակցության շնորհիվ:

Եվ ահա Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությունը ողջ ՍՍՀՄ ժողովուրդների հետ, թևակոխել է կոմունիզմի կառուցման փուլը: Ուրախալի է, որ սոցիալիստական մրցման առաջավորների շարքերում ընթանալով, հանրապետության բազմաթիվ աշխատանքային կոլեկտիվներ վերջին տարիներին արժանանում են բարձր պարգևների: Զարգացած ինդուստրիայի, սոցիալիստական գյուղատնտեսության, առաջավոր գիտության ու կուլտուրայի մեր հանրապետությունը միայն անցյալ հնգամյակում գործարկեց 100 նոր արտադրաձեռնարկություններ:

Կարմրադրոշ մեր հանրապետության աշխատավորները բուռն ջանքեր են գործադրում ժամկետից շուտ կատարելու տասներորդ հնգամյակի երրորդ տարվա պլանները և հանձն առած սոցմրցման բարձր պարտավորությունները:

Հիրավի, հայ-ռուսական հնամենի բարեկամությունը նոր որակ ստացավ սոցիալիստական իրականության, սովետական ազգերի ինտերնացիոնալիստական դաշնադրության մեջ: Այսօր մենք գոհունակությամբ կարող ենք նշել, որ այդ բարեկամության արգասիքն են սոցիալական ու ազգային կեղեքումից զերծ սոցիալիստական հանրակարգը, ազգային պետությունն ու պետականությունը՝ նորոգ հայրենիքով, որից զրկված էին դարերով: Անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծվել ժողովրդի ստեղծագործական ներթաքույն ունակությունների դրսևորման ու ծաղկման, եղբայրական ազգերի ու ժողովուրդների սերտ մերձեցման, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի անարգել զարգացման համար, հաստատվել է սովետական ապրելակերպը, բարգավաճում է ժողովուրդների անսասան բարեկամությունը, հոգևոր ու նյութական կյանքը:

Պատմության դասերը հուշում են մեզ, որ ՍՍՀՄ ազգերի ու ժողովուրդների բարեկամության օբյեկտիվ նախադրյալները եղել են տակավին մեծ Հոկտեմ-

բերի հաղթությունից առաջ, երբ քաղաքի ու գյուղի աշխատավորները, համատեղ ծառս լինելով ցարիզմի դեմ, փաստորեն կռում էին իրենց ինտերնացիոնալ միասնությունը: Արտաքին ու ներքին թշնամիների դեմ մղած կռվում նրանք դրսևորում էին թե՛ սոցիալիստական, թե՛ դեմոկրատական նկրտումներ: Ինչ խոսք, հին կարգերի դեմ մղվող սոցիալ-քաղաքական մարտերում վճռական հեղափոխական դեր է խաղացել Ռուսաստանի պրոլետարիատը: Իսկ այդ պատմական դերը նա կատարել է աշխարհացունց հաջողությամբ, առաջնորդվելով լենինյան ուսմունքով, լենինյան կուսակցության ստրատեգիայով:

Միայն քաղաքական կույրերը կարող են չիմանալ, որ Լենինը մշտապես առաջնորդվել է հեղափոխական մարքսիստական այն հիմնարար սկզբունքով, թե հարցի էությունը ոչ այնքան աշխարհը որևէ կերպ բացատրելն է, այլ կոմունիստաբար այն վերափոխելը: Հիրավի, նա բնավ Կ. Մարքսի ուսմունքը չի համարել «ինչ-որ ավարտուն ու անձեռնմխելի մի բան», այլ իր հանճարի տրամաբանությամբ խորապես համակել է մարդկանց այն համոզմամբ, որ սոցիալական հեղափոխության ստրատեգիայի ու տակտիկայի խնդիրները լուծելիս անհրաժեշտ է խստորեն հաշվի առնել տվյալ երկրի սոցիալ-տնտեսական, քաղաքական-պատմական իրավիճակի բարդությունները, հակասությունները, կարճ՝ բուն կյանքի դիալեկտիկան: Այդ իսկ դիալեկտիկան ուսուցում է, որ եթե հարցը ընդունենք ըստ էության, մի՞թե պատմության մեջ եղել է մի դեպք, որ նոր արտադրաեղանակն արմատավորվի առանց տևական ձախողումների, սխալների, ռեցիդիվների,— գրել է Լենինը (տե՛ս ПСС, т. 39, стр. 19):

Ի հեճուկս սոցիալիզմի թշնամիների, կոմունիզմ կառուցող Սովետական Միությունը բուռն թափով ու նորանոր հասումներով ընթանում է ՍՄԿԿ XXV համագումարի նշած կոմունիզմի կառուցման անկասելի ուղիով: Դրա վառ ապացույցներից մեկը մեր հայրենիքի նոր Սահմանադրությունն է, աշխարհի կատարյալ աշխատավորական ու ամենադեմոկրատական հանրակարգի Հիմնական օրենքը: Բարձր գնահատելով մեկ տարի առաջ հռչակված ՍՍՀՄ նոր Սահմանադրությունը, Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ դրա բուն արարողն իսկապես ողջ սովետական ժողովուրդն է: Եվ այդ կարևորագույն տարելիցը սովետական ողջ աշխատավորությունն այս օրերին նշանավորում է աշխատանքային նորանոր սխրագործություններով:

Բուռն խանդավառությամբ նշելով Արևելյան Հայաստանի՝ Ռուսաստանին միավորվելու 150-ամյակը, հանրապետության աշխատավորությունն իր բազում հայրենասիրական գործերով ապացուցել և ապացուցում է, որ սովետական ազգերի ու ժողովուրդների բարեկամությունն ազգային հարաբերությունների մի նոր որակ է, սոցիալիստական բովանդակությամբ մարմնավորված: Դա մեծ Հոկտեմբերի ավազանում վերամկրտված, մարքսիզմ-լենինիզմի աշխարհայացքով տոգորված ազգերի ու ժողովուրդների եղբայրական նոր տիպի համագործակցությունն է: Մի գործոն, որի բարերար ազդեցությունն իր խոր կնիքն է դրել մարդկանց հոգևոր, բարոյական աշխարհի ու ապրելակերպի վրա: Ահա թե որպիսի բարերար ու պրոգրեսիվ դեր է կատարում պրոլետարական ինտերնացիոնալիզմը, ՍՍՀՄ բոլոր ազգերի ու ժողովուրդների եղբայրացման սերտացման ու հավերժացման գործում: Միայն անտիկոմունիզմի մոլի ջատագովները չեն նշմարում, որ կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի հոգևոր ու գաղափարական կորովի անսպառ ակունքներից մեկը սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է: Ուստի բնական է, որ հասուն սոցիալիզմի փուլը թևակոխած մեր մեծ հայրենիքի սոցիալական հարաբերությունների ոլորտներում ինտերնացիոնալիստականի զարգացման նկրտումը բնավ չի կատարվում ի վնաս ազգայինի:

Միաժամանակ չմոռանանք ակնբախ այն իրողությունը, որ այսօր սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների կեցության ձևն ու բովանդակությունը լիովին ներդաշնակ են, բայց ոչ ներհակ: Մանավանդ որ առանց ազգայինի ինտերնացիոնալիստականը գոյություն չունի: Ուստի, բնորոշն այն է, որ ՍՍՀՄ-ում կիրառված լենինյան ազգային քաղաքականության բուն առանցքը



եղել և մնում է ինտերնացիոնալիստականի ու ազգայինի սերտագույն զուգակցումը:

Սա իր հերթին բնավ չի հակասում Լենինի այն համոզմանը, որ զարգացման ազգային ձևերի այլազանությունն ու լիակատարությունը կմնան, քանի դեռ առհասարակ չի մահացել ամեն մի պետություն, որը կուլտուրական հարուստ կյանքի հիմքն է, ազգերի մերձեցման ընթացքի արագացման ու ձուլման առհավատչյան (տե՛ս ПСС, т. 30, стр. 37):

Եվ ահա, ելնելով առաջնորդի թեորիական սույն ըմբռնումից, ՍՄԿԿ-ն կյանքում գործադրում է այնպիսի միջոցներ, որոնք ռեալ հնարավորություններ են ընձեռում սովետական ազգերին ու ժողովուրդներին՝ ամենայն լիակատարությամբ զարգացնելու և իրացնելու նյութական ու հոգևոր սեփական պոտենցիան՝ հանուն կոմունիզմի հաղթության:

Անդրադառնալով այս պրոբլեմին՝ Լ. Ի. Բրեժնևը շեշտել է.

«Խոսելով մարդկանց պատմական նոր հանրության մասին, մենք բնավ ի նկատի չունենք, թե մեզ մոտ արդեն անհետանում են ազգային տարբերությունները կամ, առավել ևս, ազգերի համաձուլում է կատարվել: Սովետական Միությունում բնակվող բոլոր ազգերն ու ժողովուրդները պահպանում են իրենց առանձնահատկությունները, ազգային խառնվածքի հատկանիշները, լեզուն, իրենց լավագույն տրադիցիաները: Նրանք ունեն բոլոր հնարավորությունները առավել ծաղկեցնելու իրենց ազգային կուլտուրաները» (Ленинским курсом, т. 4, стр. 243):

Քանի որ սովետական ժողովրդի և սոցիալիստական ազգերի սոցիալ-քաղաքական բնությունն ընդհանուր է, ապա ուրեմն նրանց զարգացող գործոնները միմյանց լրացնող են: Հետևաբար, սովետական ժողովուրդ հանրությունն ինքնին առավելագույն նախապայմաններ է ստեղծում բոլոր ազգերի մերձեցման ու ծաղկման համար: Սովետական ժողովրդի գոյավորման վճռական գործոններից մեկն էլ ժողովուրդների ու ազգերի բարեկամությունն է, այն բարեկամությունը, որը մեր զարգացման շարժիչ ուժն է, որում և մարմնավորված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմը:

Ահա թե զարգացման որպիսի բարձունքի հասավ ռուսական կողմնորոշմամբ ընթացող արևելահայությունը:

Հանդիսանալով կոմունիզմի ուղիով ընթացող, կոմունիստորեն եղբայրացած սովետական սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների դաշնադրության՝ ՍՍՀՄ երախտագետ անդամը, Հայաստանի աշխատավորությունը միշտ կմնա միութենական հանրապետության պետականության բարձրության վրա, պատվով կկատարի տասներորդ հնգամյակի պլաններն ու այդ առթիվ ստանձնած սոցմրցման իր պարտավորությունները:

Հայ-ռուս ժողովուրդների բարեկամության մեկուկեսդարյա չմարող այգաբացը կմնա որպես տևական խթան, որի սատարմամբ հետայսու առավել մեծ արդյունավետությամբ առաջ կմղենք կոմունիզմի կառուցման վսեմագույն գործը, ոչ մի վայրկյան չմոռանալով հանճարեղ Ե. Չարենցի սրտաբուխ հիշեցումը.

Անցել ենք մենք՝ բազմակեղեք՝ այսպես դարե՜ր ու դարե՜ր,<br>
Մինչև մռայլ մթնում երեկ ծագեց շողշող մի արև.<br>
Հերոսական Հոկտեմբերին այն հյուսիսից ճառագեց—<br>
Եվ մեզ՝ իրկեզ իր ափերից՝ փրկության լույս առաքեց...

# ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԻՄԱՍՏՈՒԹՅԱՄԲ ԹԵԼԱԴՐՎԱԾ

**Զ. Ս. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Դարեր ՇԱՐՈՒՆԱԿ ԵՆԹԱՐԿՎԵԼՈՎ նվաճողների ասպատակություններին, կրելով արևելյան բռնակալների անտանելի լուծը, հայ ժողովրդի ազատագրական ոգին երբեք չէր խամրում։ Հայ ժողովուրդը մարտնչում էր զենքով ու ոգով, գրչով ու մտաղաթով։ Նրա ազատամիտ զավակները միջնադարի խավարում ուղիներ էին փնտրում ժողովրդի ազատագրության, ինքնուրույնության համար։ Թուրքական ու պարսից տիրապետության դեմ մղած պայքարի քառուղիներում նրանք հայացքը հառում էին ժամանակի հզոր տերություններին, հավատի ընդհանրության հիման վրա օժանդակություն ակնկալում քրիստոնյա տիրակալներից։ Սակայն այդ հույսերը քանիցս ի դերև ելան։ Աստիճանաբար միջազգային կյանքում ավելի ու ավելի ուրվագծվեցին Ռուսաստանի դերը, նրա ապագա տեղն ու նշանակությունը համաշխարհային ասպարեզում։ Հայ ժողովրդի ռեալիստ գործիչները սեփական ժողովրդի ապագան տեսան սերտորեն առնչված մեծ Ռուսաստանի, նրա ժողովրդի հետ։ Մեր ժողովուրդը կամովին ընտրեց ռուսական կողմնորոշումը որպես իր գոյատևման ու զարգացման միակ երաշխիքը։ Կյանքն ինքը թելադրեց Իսրայել Օրուն հրաժարվել Պֆալցյան ծրագրից, և նա հակվեց Մոսկվայի օգնությանը դիմելու մտքին։

1828 թվականի Թուրքմենչայի պայմանագրով Արևելյան Հայաստանը միացավ Ռուսաստանին։ Ըստ էության նույն պահին, 1828—29 թթ. ռուս-թուրքական պատերազմի ժամանակ, Արևմտյան Հայաստանի՝ Անդրկովկասին հարող տարածքների հայ բնակչության ներկայացուցիչները բանակցություններ վարեցին ռուսական զինվորական իշխանությունների հետ, խնդիր հարուցելով ռուսական տիրապետությունը Թուրքաց Հայաստանի վրա տարածելու մասին[1]։

Հարյուր հիսուն տարի առաջ Ռուսաստանի հովանու տակ անցավ Հայաստանի միայն մի փոքր մասը։ Ռուսաստանին միանալու դրոշը ծածանվեց Երևանի բերդի վրա։ Մեր ժողովրդի մի հատվածին հաջողվեց թոթափել խավարամիտ տիրապետողների լուծը։ Տասնյակ ու տասնյակ տարիների ընթացքում սերունդների փայփայած հույսերն իրականանում էին։ Արևելահայության համար ստեղծվում էին կյանքի ու աշխատանքի անհամեմատ խաղաղ պայմաններ։ Բոլոր ողջամիտ մարդիկ ողջունեցին պատմական այդ ակտը։

Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելով, ամբողջ հայ ժողովրդի քաղաքական ճակատագիրն այդուհետև սերտորեն աղերսվեց Ռուսաստանին, ռուս մեծ ժողովրդի կյանքին ու պայքարին։ Ցարիզմը ժողովուրդներին բարիք չէր բաժանում։ Ցարիզմը մնում էր ժողովուրդների թշնամի։ Բայց նրա կողքին կար ռուս ժողովուրդը, ռուս դեմոկրատիան, այն Ռուսաստանը, որը ոչ միայն ռուս, այլև տասնյակ ու տասնյակ ժողովուրդների տանելու էր ազատության ու առաջադիմության ուղիներով։ Ինչ խոսք, որ իր մղած պատերազմներում ցարիզմը ռեալ շահեր ուներ։ Բայց ցարիզմի, ռուսական շահագործող, պորտաբույծ վերնախավի կողքին կար մյուս Ռուսաստանը՝ Գերցենի և Չերնիշևսկու, մեծ Լենինի Ռուսաստանը, աշխատավոր ռուս մարդու Ռուսաստանը։

Հայ ժողովրդի համար ասպարեզում չկար մի այլ հենարան, մի այլ կռվան։ Միակ ռեալ ու հուսալի ուժը Ռուսաստանն էր։ Հարյուր հիսուն տարվա քաղաքական ու դիվանագիտական պատմությունը վկայությունն է այն ճշմարտության, որ առանց Ռուսաստանի օգնության մեր ժողովուրդը ենթարկվել է անհաջողության։ Եթե արևմտաեվրոպական դիվանագիտությունը չխանգարեր Ռուսաստանի XIX դարի առաջին տասնամյակներին, 70-ական, ապա՝ 1912—1914 թվականներին հայ ժողովրդի երկու հատվածների միավորմանը, Ռուսաստանի հովանու տակ համախմբման խնդիրը միանշանակ այլ լուծում կստանար։

***

Արևելյան հարցի գոյության ամբողջ ընթացքում որոշիչ էր Ռուսաստանի դերը։ XVIII դարի վերջին, ինչպես և XIX դարի սկզբին օսմանյան կայսրության նկատմամբ ռուսաց բանակի տարած յուրաքանչյուր հաղթանակ, ստորագրված յուրաքանչյուր միջազգային պայմանագիր մոտեցնում էր սլավոնների, կովկասցիների ու թուրքական դարավոր լծի տակ տանջված մյուս ժողովուրդների ազատության օրը։ Հույները, սերբերը, ռումինները, բուլղարները, չեռնոգորցիները, մոլդավացիները, վրացիները, հայերը, մյուս ճնշված ազգերը թոթափեցին թուրքական և պարսից լուծը, նախընտրեցին առաջադիմության ուղին՝ շնորհիվ արևելյան հարցում Ռուսաստանի խաղացած որոշիչ դերի, չնայած ցարիզմը հետապնդել է նվաճողական նպատակներ։

Ռուսաստանի հովանու տակ անցած արևելահայությունը կարճ ժամանակում հսկայական առաջընթաց ունեցավ։ Մեծ տեղաշարժեր կատարվեցին սոցիալ-կուլտուրական բոլոր ասպարեզներում։ Բարձրացավ գրագիտության մակարդակը։ Աստիճանաբար առաջացան հանքարդյունաբերական օջախներ, զարկ տրվեց ճանապարհաշինությանը։ Անհամեմատ բարձր հիմքերի վրա դրվեց երկրագործությունը։ Հայ երիտասարդներն ուսման մեկնեցին ռուսական կրթական կենտրոնները։

Ստեփանոս Նազարյանցն արձանագրում էր իսկությունը, երբ գրում էր, թե «Հայերը ճշմարտապես և իրավացի շնորհակալ են Ռուսաստանին, որ ազատել է նորանց մի անտանելի, անարգական ստրկությունից և բացել է նոցա առջև մի նոր քաղաքական կյանքի ասպարեզ»։

Եվ, այնուհետև, ամբողջ XIX դարի ընթացքում Եվրոպայի ճանապարհորդներն ու ուսումնասիրողները չէին կարող չխոստովանել այն ահռելի տարբերությունը, որ ստեղծվել էր Արևելյան Հայաստանի և թուրքական լծի տակ հեծող Արևմտյան Հայաստանի կյանքի պայմանների միջև։ Ամենակարևորն այն էր, որ ռուսական «ոտքը» խաղաղություն էր բերել։ Այս բանը հատկապես շեշտում էր Խաչատուր Աբովյանը։

Ավետիք Իսահակյանը «պատմական անկյունադարձը» գնահատել է «շատ բարենպաստ» կովկասահայերի համար։ Ինչո՞ւ։ Որովհետև նրանք վայելեցին «կյանքի և գույքի ապահովություն», իրենց վրա կրեցին «ռուս մեծ կուլտուրայի և գրականության կենսաառողջ ազդեցությունը, ամրացավ հայ ժողովրդի կապը և բարեկամությունը ռուս մեծ ժողովրդի հետ»։

Արևելահայաստանը դարձավ հայ ժողովրդի ազգային հավաքականության կորիզը։ 150 տարվա պատմությունը չափազանց ուսանելի եզրակացությունների հիմք է տալիս։ XIX դարի սկզբին Արևմտյան Հայաստանում երեք միլիոն հայություն կար։ Այժմ ընդամենը մի քանի տասնյակ հազար հայություն կա Ստամբուլում։ Ռուսաստանի կազմի մեջ մտնելու պահին Արևելյան Հայաստանում կար հարյուր հազար մարդ, Թուրքիայից ու Պարսկաստանից կատարված ներգաղթից հետո այն դարձավ 200 հազար, իսկ 1913 թվականին արդեն մեկ միլիոն 200 հազար։ Այսօր Սովետական Հայաստանի բնակչությունը երեք միլիոն է։

Այս թվերն ակնբախ հաստատում են ժողովրդի ընտրած կողմնորոշման

[1] Տե՛ս Լեո, Հայոց հարցի վավերագրերը, Թիֆլիս, 1915։

պատմաքաղաքական ճշմարտացիությունը, նրա դրական արդյունքները առաջադիմության ու զարգացման երկարամյա պրոցեսում:

Հովհ. Թումանյանը գրում էր, թե «Հզոր Ռուսաստանի արևելյան քաղաքականությունն ու տանջվող հայ ժողովրդի հույսերը բռնում էին իրար»: 1913-ին, երբ միջազգային դիվանագիտությունը նորից քննարկում էր Արևմտյան Հայաստանում բարենորոգումներ իրականացնելու խնդիրը, մշակում, մերժում, հետաձգում նախագծերի տարբերակները, Հովհ. Թումանյանը Թիֆլիսի հայ մամուլում հանդես եկավ մի հոդվածաշարով՝ Հայկական հարցն ու իր լուծումը: Այս գրվածքում կարմիր թելի պես անցնում էր մեծ բանաստեղծի սերը մեծ Ռուսիայի, նրա ժողովրդի նկատմամբ: Իսկ բանաստեղծի խոսքերով արտահայտվում էր հայ ժողովուրդը:

Մի շարք ռուս-պարսկական պատերազմներից հետո, գրել է Հ. Թումանյանը, վերջնականապես 1828 թվականին Ռուսաստանը տիրեց հին Սյունիքը, Գուգարքն ու Արարատյան երկիրը և մի անգամ ընդմիշտ վերջ տվեց ողբ ու կոծով հայտնի հայկական հարցին: Մնաց տաճկահայկական հարցը[2]:

Նա շեշտում էր, որ «ռուսներն են առաջին անգամ հայկական հարցը մտցրել միջազգային խնդիրների շարքը», նկատի ունենալով Սան-Ստեֆանոյի պայմանագիրը: Մեծ բանաստեղծը ցույց էր տալիս հայերի կապվածությունն ու նվիրվածությունը Ռուսաստանին: «Հայ ժողովուրդը միշտ նայել է Ռուսաստանի վրա որպես իր խնդրի ավանդական պաշտպանի վրա»[3]:

Նույնիսկ մշտապես արևմտաեվրոպական դիվանագիտության հետ հույս կապող մարդիկ չէին մոռանում Ռուսաստանի դերը հայկական հարցի դրական լուծման հեռանկարում: XIX դարի 80—90-ական թվականներին Լոնդոնում լույս տեսնող «Հայաստան» թերթի տնօրեններ Հակոբյանը, Պրուսալյանը, Սվազլյանը, որոնք հայկական հարցն արևմտաեվրոպական դիվանագիտության միջոցով լուծելու ջերմեռանդ կողմնակիցների անուն են հանել, մշտապես շեշտում էին, որ Ռուսիան «մեզ համար բարեկամ և պաշտպան է», որ «Ռուսիո մեծանձն նախաձեռնության կպարտիմք 1878-ի Բեռլին դաշնագրի մեջ 61-րդ հոդվածի զետեղումը»[4]:

Դարեր շարունակ Կ. Պոլսում ծվարած հայոց վերնախավը կտրված էր բուն երկրից, նրա դարդ ու ցավից, քիչ էր մտահոգվում բուն ժողովրդի առաջադիմությամբ: Կ. Պոլսի պայմաններն այլ էին, Արևմտյան Հայաստանինը՝ բոլորովին այլ, և ամենևին ճիշտ չէ, երբ պոլսահայ կոմպրադորների ասածներով կամ վարքագծով փորձում են դատողություններ անել կամ պատկերացում կազմել արևմտահայության կենսական շահերի ու ձգտումների մասին: Այնուամենայնիվ, նույնիսկ նրանց մոտ հաղթանակեց այն տեսակետը, որ միայն Ռուսաստանը կարող է ռեալ հենարան լինել հայ ժողովրդի բաղձանքներին:

Գրիգոր Օտյանը, որ համախոհն էր Թուրքական սահմանադրության հայր Միդհատ փաշայի և որոշակի դեր էր խաղում XIX դարի 70-ական թվականներին Կ. Պոլսի հայոց քաղաքական կյանքում, 1880-ին գրում էր. կարելի է «ըսել առանց հերքվելու երկյուղի, թե ռուս իշխանության տակ գտնվող հայերն այնպիսի վիճակ մը կվայելեն, որուն իրավամբ կրնան նախանձել իրենց փոքր-ասիական եղբայրները»: Նա ապացուցում էր, որ «Թուրք կառավարությունը երդում ըրած է ջնջել հայերը և թե եթե այս բանս ի գլուխ չէ ելած, թերևս Ռուսիո շնորհիվ»[5]:

Մ. Փորթուգալյանի «Արմենիա»-ն արձանագրում էր, որ «Ռուսիո Հայաստանի մեջ հայ լրագիրներ ունինք, Տաճկահայաստանի մեջ ոչ միայն կարելի եղած չէ լրագրի մը համար արտոնություն ստանալ, այլ եկեղեցական գրեաց տպագրության հատկացյալ տպարան մը անգամ կփակվի...»: Թերթը գրում էր, որ Ռուսաստանում «ազգային պատմության վերաբերյալ գրություններ ազատորեն կրնան հրատարակել», «Տաճկաստանի մեջ այժմ Հայաստան բառը պա-

2 Տե՛ս «Հորիզոն», № 7, 11.I.1913:

3 «Հորիզոն», № 7, 11.I.1913:

4 «Հայաստան», Լոնդոն, № 2, 15.XI.1888:

5 «Հայաստան», Լոնդոն, № 15, 1891, հունիս:



րունակող եկեղեցական գիրք մը անգամ կարգելվի առաջին մաքսատան մեջ»[6]:

1888-ին զուգահեռ անցկացնելով հայ ժողովրդի շահերի տեսակետից Ռուսաստանի ու օսմանյան կայսրության միջև, Մկրտիչ Փորթուգալյանը նշում էր. «Բայց մի՞թե բավական չէ մեզ մտածել տալու համար սա կետ, թե Տաճկահայաստանեն անդադար կգաղթեն Ռուսահայաստան, իսկ Ռուսահայաստանեն ոչ ոք կգաղթե դեպի Տաճկահայաստան»[7]:

Երբ «Արմենիա»-ի թղթակիցը 1890-ի աշնանը այցելեց Վանից ոչ հեռու գտնվող Նորգեղ, նրան շրջապատող գյուղացիներն ասում էին. «Եղբայր, ռուս ե՞րբ պիտի գա, որ մեզ ազատե»[8]:

Ամեն անգամ միջազգային դիվանագիտությունը, համաշխարհային քաղաքականության տնօրենները Ռուսաստանի հաջողությանը խոչընդոտելու համար ստիպում էին ռուսական բանակներին նորից թուրքական դժնի կառավարմանը թողնել հայոց հողերը: Քանի անգամ ռուսաց բանակը հաղթական դրոշ է պարզել Կարսի ու Էրզրումի, հայաշատ Ալաշկերտի ու Բայազեդի, Վանի ու Արևմտյան Հայաստանի մյուս մասերի վրա: 1829-ին և 1855-ին, 1878-ին ու 1916-ին: Իսկ ամեն անգամ եվրոպական քաղաքականության մեծերն իրենց ընչաքաղցությանը հագուրդ են տվել՝ զոհաբերելով մի ամբողջ ժողովրդի կենսական շահերը:

1878-ի Սան-Ստեֆանոյի դաշնագրի 16-րդ հոդվածը հիմք էր տալիս հուսալու, որ «Հայաստան քիչ մը հանգիստ շունչ պիտի կրնա առնել Ռուսիայի շնորհիվ»: Սակայն անգլիական ու ֆրանսիական, ավստրո-հունգարական ու գերմանական դիվանագետները միավորվեցին՝ խանգարելու ռուսական ծրագրերի կատարմանը: Ռուսաստանը Բեռլինի տրակտատով Օսմանյան կայսրությանը վերադարձրեց Էրզրումը, Ալաշկերտի դաշտավայրն ու Բայազեդը և այլ տարածքներ արևմտաեվրոպական դիվանագիտության խարդավանքների հետևանքով:

«Բեռլինի տրակտատը հայ ժողովրդի զգալի մասը թողեց թուրքերի լծի տակ: Պատմությունը ցույց տվեց, որ կապիտալիստական տերությունների այդ որոշումը ճակատագրական եղավ արևմտահայերի համար. այն նրանց մատնեց ֆիզիկական ոչնչացման»[9]:

***

Ինչպես նախկինում, առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին ևս Ռուսաստանի դերը հայ ժողովրդի ճակատագրում հաստատուն գաղափար էր: Համաշխարհային քաղաքականության մեջ եղանակ ստեղծող մեծ տերությունների շարքում առանց Ռուսաստանի մասնակցության հնարավոր չէր վճռական խոսք ասել առաջավոր Ասիայի, նաև հայկական հարցի շուրջ: Ահա թե ինչու հայ մարդիկ հույսները դրել էին Ռուսաստանի վրա, որը 1913—1914 թթ. պնդում էր արևմտահայկական վեց նահանգների (Էրզրում, Վան, Բիթլիս, Դիարբեքիր, Սըվաս, Խարբերդ) հիման վրա հայկական գեներալ-նահանգապետություն ստեղծելու մասին: Սակայն գերմանական, նաև անգլո-ֆրանսիական դիվանագիտությունը խոչընդոտեց այդ ծրագրի իրագործմանը, լուրջ հարված հասցնելով հայոց ազգային կենսական շահերին[10]:

1913-ին «Նովոյե վրեմյա» թերթը գրում էր. «Էրզրումի նահանգի հայ ժողովրդի փրկությունը և նրա ուժեղացումը դառնում է ռուսաց արտաքին քաղաքականության խնդիրներից մեկը, որովհետև այդ ճանապարհով միայն մենք կարող ենք ապահովել կովկասյան մեր երկրները հարավից սպառնացող հարձակումներից»[11]:

6 «Արմենիա», № 56, 27.II.1886:

7 «Արմենիա», № 82, 6.VI.1888:

8 «Արմենիա», № 29, 22.XI.1890:

9 История дипломатии, т. II, М., 1963, стр. 333.

10 Տե՛ս Восточный вопрос во внешней политике России, конец XVIII — начало XX в., М., 1978, стр. 367—372.

11 «Новое время», № 13368, 1913.

Արևմտաեվրոպական դիվանագիտությունը խոչընդոտեց Ռուսաստանի հովանու ներքո արևելահայերի և արևմտահայերի վերամիավորմանը։ Ռուսական դիվանագիտությունը միայնակ մնաց այդ հարցում, ի վիճակի չեղավ մինչև վերջ հասցնելու հաջողությամբ սկսված գործը։ Բուրժուական Եվրոպայի հակահայկական դիրքավորումը խիստ բացասական դեր խաղաց մեր ժողովրդի քաղաքական ճակատագրում։

Տասնամյակների ընթացքում արևմտյան դիվանագիտությունը ոչ մի ռեալ երաշխիք չտվեց մեր ժողովրդին։ Իսկ ղանգվածային եղեռնագործությունը կատարվեց այն տարածքների վրա, որոնք Բեռլինի տրակտատի 61-րդ հոդվածով, XIX դարի 90-ական, այնուհետև 1912—1914 թվականների միջազգային դիվանագիտական ակտերով իբր օգտվում էին միջազգային ֆորումների ու բանաձևերի խնամակալությունից ու պաշտպանությունից։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին պանիսլամիզմի և պանթուրքիզմի պրոպագանդան ուղղված էր գլխավորապես Ռուսաստանի դեմ։ Երիտթուրքական գործակալները գործում էին Բուխարայում և Ղրիմում, Բաքվում և Թուրքեստանում։ 1912—1914 թվականներին ծպտյալ թուրքական սպաներ էին ուղարկվում Բաքու, Բաթում, Դաղստան և Կովկասի այլ մասերը՝ Ռուսաստանի դեմ զինված ելույթներ կազմակերպելու համար[12]։

Պատերազմի նախօրյակին երիտթուրքական պարագլուխներից մեկը հայտարարել է. «Թուրքիայի քաղաքականությունը պետք է կայանա նրանում, որպեսզի Փոքր Ասիայում ստեղծվի հզոր տերություն... Թուրքիան կարող է երազել ոչ միայն Անդրկովկասին, այլև Կովկասյան լեռնաշղթայից շատ հեռու ընկած և Դոնի ու Վոլգայի հետ սահմանակից վայրերին ֆեդերատիվ և ինքնավար կառավարում շնորհելու մասին... Այդ բնական սահմանից այն կողմ պետք է շպրտել ռուսներին»[13]։

Երիտթուրքական պարագլուխներից խալիլ բեյը համոզված էր, որ «Գերմանիան, որպես Թուրքիայի դաշնակից, նպաստում է պանթուրքիզմի գաղափարի իրագործմանը և թուրքական պետության ստեղծմանը, որը տարածվելու է Հյուսիսային ծովից մինչև Հնդկական օվկիանոսը...»[14]։

Թալեաթը թուրքական ազգային ժողովի հայ երեսփոխաններին թելադրում էր հայերի միջոցով «Կովկասի մեջ խռովություններ հարուցել»՝ դյուրացնելու համար թուրքական բանակի «առաջխաղացումը ռուսական սահմաններեն ներս»։ Հայ մարդիկ երբեք ձեռք չեն բարձրացրել Ռուսաստանի դեմ և նրանք «ժխտեցին այդքան վտանգավոր ու ապօրինի թելադրանքը»[15]։

Հայ ժողովուրդն ակտիվ մասնակցեց պատերազմին, իր կամավորական ջոկատներով քաջաբար կռվելով ռուս զինվորի կողքին։ Կ. Պոլսում աշխատած գերմանական ժուռնալիստ Հարրի Շտյուրմերը 1917-ին Նյու-Յորքում հրատարակած իր գրքում խոստովանում էր, թե Անդրկովկասը Ռուսաստանի դեմ հանելու էնվերի պլանը ձախողվեց հենց սկզբից։

Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին հայ ժողովրդի մեծագույն ողբերգությունը կատարվեց թուրքական պետության ձեռքով, իմպերիալիստական տերությունների կառավարությունների, առաջին հերթին, կայզերական Գերմանիայի մեղսակցությամբ։

Կ. Պոլսում Գերմանիայի դեսպան ֆոն Վանգենհեյմը ԱՄՆ-ի դեսպան Մորգենթաուին հայտարարում էր, թե իր կառավարությունը չի կարող միջամտել Թուրքիայի ներքին գործերին։ Վաշինգտոնում Գերմանիայի դեսպան Բերնսդորֆը զգալով, թե ինչպիսի ծանր տպավորություն են թողնում ամերիկացիների վրա մամուլի լուրերը հայերի նկատմամբ թուրքական գաղանու-

[12] Տե՛ս Ю. В. Марунов, Пантюркизм и панисламизм младотурок. Краткие сообщения института народов Азии, XLV, М., 1961, стр. 46, 49.

[13] Տե՛ս նույն տեղը, էջ 48։

[14] Х. Цовикян, Младотурецкая революция и национальный вопрос. Л., 1937, стр. 11.

[15] Հովհ. Հակոբյան, Գերման դավը Կովկասի մեջ։ Համագերմանականությունը և Վրաստանը, Թիֆլիս, 1917, էջ 88։



թյունների մասին, սկզբում փորձում էր ուղղակի ժխտել կոտորածի փաստերը, բայց, երբ բոլոր փաստերը հաստատվեցին վկաների ցուցմունքներով և դրանք բացասելը դարձավ անհնարին, նա հայտարարեց, որ Թուրքիայում ամբողջ տեղի ունեցածը պետք է դիտել որպես հայկական ապստամբությունը ճնշելու միանգամայն օրինական գործողություն[16]։ Իսկ Թալեաթը ցինիկաբար հայտարարում էր ամերիկյան դեսպանին, թե «Ես ձեռք եմ առնում անհրաժեշտ քայլեր հայերի համար անհնարին դարձնելու ինքնավարություն բառի արտասանումը հետագա հիսուն տարիների ընթացքում»։

Ովքեր ընթացան արևմտաեվրոպական դիվանագիտության հետևից, չարաչար սխալվեցին, ոչինչ չստացան, բացի հուսախաբությունից։ Սփյուռքում հրապարակված տասնյակ ու տասնյակ գրքերի հեղինակները, դեպքերի մասնակիցներն ու ականատեսները, որոնք երեկ դեռ հավատ էին ընծայում 1895-ի մայիսյան ռեֆորմների, Սևրի պայմանագրի հեղինակներին, Լոզանի թըղթերը բանաձևողներին, քննադատության, դատապարտումի խոսք են ուղղում Լոնդոնի ու Փարիզի տերերի, կայզերական Գերմանիայի ու Վաշինգտոնի տնօրենների հասցեին։

Կ. Պոլսում նախկին ռուսական դեսպանատան աշխատակից Ա. Մանդելշտամը, խոսելով Սևրի պայմանագրի մասին, նշում է, որ Անտանտի տերությունները «շուտով, քաղաքական հանգամանքների ստիպումով, արմատապես փոխեցին իրենց ընթացքը։ Ուժասպառ մեծ պատերազմից և հանկարծ իրենց դեմ գտնելով հենց Թուրքահայաստանի կենտրոնում Մուստաֆա Քեմալի ստեղծած դիմադրության մի օջախ, դաշնակիցները չհամաձայնվեցին արյան կամ ոսկու նոր զոհողություններ անել։ Նրանք մերժեցին նախագահ Վիլսոնի վճիռը, որով ընդարձակ հողեր էին տրվում Հայաստանին և բախտի քմահաճույքին թողեցին Հայաստանը։ Ազգերի լիգան իր հերթին մերժեց իր գիրկն ընդունել նորածին պետությունը»[17]։ Ճիշտ է ասված, լքեցին։ Ճիշտ է ասված, որ Ազգերի լիգան նույնպես մերժեց Հայաստանի հանրապետության տնօրեններին մուտքի իրավունք շնորհել։

Անտանտի ներկայացուցիչ, ծովակալ Բրիստոլը 1920 թ. հունվարի 5-ին ԱՄՆ-ի պետական քարտուղարի տեղակալ, Փարիզի խաղաղության կոնֆերանսում ամերիկյան պատվիրակության ղեկավար Ֆրանկ-Փոլկին ուղղած նամակում գրում էր. «Ես ուզում եմ հուսալ, որ ոչ մի դեպքում մեր կառավարությունը չի ճանաչի Հայաստանը, նույնիսկ որպես դե ֆակտո կառավարություն»։

Իսկ «Լոզանի կոնֆերանսը մեծ խաչ մը դրավ ոչ թե հայկական դատին վրա, այլ այն միամիտ ու ցնդամիտ ազգային մուրացկան քաղաքականության վրա, որուն սկիզբ դրվեցավ Բեռլինի վեհաժողովի ատեն և որ իր այնքան տխուր ու, հուսով ենք, վերջնական վախճանին հանգեցավ Լոզանի մեջ»— հետագայում այսպես էին խոստովանում դաշնակ «տեսաբանները»[18]։

Այս ամենից հետո, ինչ խոսք, որ Լլոյդ Ջորջի համար հեշտ էր խոստովանել, թե «Բրիտանական կառավարության քաղաքականությունը ճակատագրական անխուսափելիությամբ հանգեցրեց 1895—1897, 1909 թվականների սոսկալի ջարդերին և 1915 թվականի ամենասարսափելի կոտորածին»[19]։

***

Արևելյան Հայաստանի միացումից հետո Ռուսաստանն իր ընթացքով տարավ հայ ժողովրդի զավակներին, նրանց հաղորդակից դարձրեց սոցիալական ու քաղաքական գոռ մարտերին՝ հանուն աշխատավոր մարդու ազատության ու առաջադիմության, անկախ նրա ազգային պատկանելությունից։ Ռուսաստանը մի դարբնոց էր հայ մարդկանց համար, որտեղ նրանց կռում էին հեղափոխա-

[16] Տե՛ս Герберт Адамс Гиббонс, Самая черная страница новейшей истории, последние избиение в Армении, Петроград, 1916, стр. 27.

[17] «ՎեՄ», ԺԱ, Փարիզ, 1935, էջ 75։

[18] «Հայրենիք», № 5, 1923, մարտ, էջ 3։

[19] Ллойд Джордж, Правда о мирных договорах, М., 1957, т. II, стр. 390.

կան ոգով, ազատության ու լույսի գաղափարներին անմնացորդ ծառայելու ոգով։ Իսկ քանի՛, քանի սերունդներ Ռուսաստանում կրթվեցին ու թրծվեցին Գերցենի ու Չերնիշևսկու, Պլեխանովի ու Լենինի գաղափարներով։ Ռուս նարոդովոլականների և առաջին մարքսիստական խմբերի գործունեության ակտիվ մասնակցում էին հայ ժողովրդի զավակները։ Լալայանցը, Կնունյանցը, Զուրաբյանը, Շահումյանը, Սպանդարյանը, Կամոն, Մյասնիկյանը և շատ ուրիշներ մաս կազմեցին Վ. Ի. Լենինի գլխավորած հեղափոխական առաջին ջոկատների, կռվի գնացին ընդդեմ միապետության, խավարի ու բռնության, որովհետև ազատության ասպետ Միքայել Նալբանդյանը նրանց ավանդել էր. «Ռուսիո ազատությունը, ընդհանուր մարդկության ազատության վերաբերմամբ, մեծ խորհուրդ ունի»։

Այո՛, ռուսական հեղափոխությունը փրկություն էր բերում բազմաչարչար հայ ժողովրդին։ Միայն ռուս պրոլետարիատի հաղթանակը կարող էր նրան տալ հայրենիք, ազատություն, ապրելու, գոյատևելու, վերածնվելու հնարավորություն և իրավունք։ Պատմությունը հաստատեց Ֆ. Էնգելսի այն կանխատեսումը, որ հայ ժողովրդի փրկությունն աղերսվում էր ռուսական հեղափոխության հաղթանակի, ցարիզմի խորտակման հետ։ Բուրժուական դիվանագիտության խարդախ խաղերը հայ ժողովրդի քաղաքական պայքարի բոլոր փուլերում ոչ մի դրական բան չտվեցին մեր հայրենիքին։ «Մեր ապագան,— ասում էր Հովհ. Թումանյանը,— ...կապված է Ռուսաստանի հետ, իսկ Ռուսաստանն ինչքան ազատ— էնքան լավ, թե՛ մեզ համար, թե՛ աշխարհի»։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը նոր դարագլուխ բացեց մեր երկրի ժողովուրդների համար։ Վ. Ի. Լենինի գլխավորած կոմունիստների փառապանծ կուսակցությունը կյանքի կոչեց նոր սկզբունքներ, նոր գաղափարներ, ձեռնամուխ եղավ հին աշխարհը վերակառուցելու հիրավի պատմական առաքելությանը։

Առաջինը Սովետական Ռուսաստանի կառավարությունն էր, որ ամբողջապես ճանաչեց Արևմտյան Հայաստանի ազատ ինքնորոշվելու, անկախություն ստանալու իրավունքը։ «Թուրքահայաստանի մասին» դեկրետը միջազգային դիվանագիտության պրակտիկայում մինչ այդ Հայաստանի մասին ընդունված բոլոր որոշումներից տարբերվում էր իր նոր սկզբունքային մոտեցումներով։ Սակայն երկրամասում ստեղծված իրադրությունը և Անտանտի ու թուրքական կառավարողների հակահայկական դիրքորոշումը խանգարեցին այդ դեկրետի իրագործմանը։

«Ռուսական զորքերի անակնկալ ետ քաշվելը,— գրում էր Ստ. Շահումյանը 1917-ի դեկտեմբերի 20-ին,— չափազանց ծանր դրություն է ստեղծում Թուրքահայաստանում։ Մենք արդեն գիտենք այս անիծյալ պատերազմի ժամանակ հայերի կրած հարյուր հազարավոր զոհերի մասին»[20]։ Նա կոչ էր անում զորքի մի մասը պահել ռազմաճակատում, կանխել թուրքական ներխուժումը։

Հիշենք նաև, որ 1918-ի հուլիսի 23-ին Մոսկվայում բացված թուրք ձախ սոցիալիստների կոնֆերանսը, որտեղ գլխավոր դեմքը Մուստաֆա Սուբհին էր, դատապարտեց սուլթանական կառավարության արտաքին քաղաքականությունը, արտահայտվեց թուրքական կայսրության տերիտորիայի վրա ապրող բոլոր ժողովուրդների, այդ թվում և հայերի ինքնորոշման օգտին[21]։

Սակայն թե՛ սուլթանական կառավարությունը, թե՛ հանրապետական Թուրքիան ոտնահարեցին հայ ժողովրդի օրինական իրավունքը, ամեն ինչ լուծեցին ուժի ու բռնության, արյան ու կոտորածի միջոցով։ Իսկ Սուբհին ու նրա համախոհները տակավին թույլ էին, մեծ ազդեցություն չունեին իրենց երկրում և զոհվեցին թուրքական սև ուժերի ձեռքով։

Օգտվելով անդրկովկասյան հակահեղափոխության հակասովետական դիրքորոշումից, ազգայնական կուսակցությունների դավաճանական վարքագծից, երիտթուրքական արկածախնդիրները պահը հարմար համարեցին Անդրկովկաս

[20] Ստ. Շահումյան, ԵԼԺ, հ. 4, «Հայաստան» հրատ., 1978, էջ 61։

[21] Տե՛ս «Известия», 15. VIII. 1918. И Бутаев. Проблемы Турции. Ленинград, 1925, стр. 19.



ներխուժելու, իրենց պանթուրքիստական ծրագրերը գործի կոչելու համար։ Թուրքերն իրենց հետ բերեցին մահ, արյուն, ավերածություն։ Չկար Ռուսաստանը, նորից գործի էր դրված յաթաղանը, մոլեգնում էր թուրքական կողոպուտը, «կոչման բարձրության վրա էր» թուրք ասքյարը։

1918-ին Հայաստանում քաոս էր, անարխիա, սով... որովհետև խախտվել էր ավանդական կողմնորոշումը. չկար Ռուսաստանը, տնօրինում էր Թուրքիան, սպառնալով ոչնչացնել նաև ռուսահայերին։ Պանթուրքիզմը մտել էր գործնական հունի մեջ, պատրաստ կլանելու իր ավանդական խոչընդոտին՝ հայությանը։ Գերմանական կայզրն այդ պահին էնվերին ասում էր. «Դուք միանգամայն ազատ եք յուրովի կարգադրելու հայկական հարցը»[22]։

1918 թվականի հունվարի 11-ին գրված մի թռուցիկում, որն ուղղված էր կովկասյան ճակատի ռուս զինվորներին, ասված էր. «Ընկեր ռազմիկներ. Հեռանալով ռազմաճակատից և Ձեր հետ տանելով զենքը, Դուք մեզ դնում եք անելանելի դրության մեջ... Կովկասը, որ ռուսական հանրապետության բաղկացուցիչ և անքակտելի մասն է, կընկնի թուրքական միապետության բռնակալների ձեռքը... Մեր ընդհանուր ջանքերով նվաճված ազատությունը կխափանվի անվերադարձ կերպով օտարերկրյա հարձակման արյան ծովում և սարսափների մեջ։ Մեր ընդհանուր հայրենիքը՝ Ռուսաստանը, կկորցնի հարստագույն երկրամաս Կովկասը, իսկ ի դեմս հայ ժողովրդի ռուսական հանրապետության հավատարիմ և նվիրված բարեկամին»[23]։

1918-ի ապրիլին սոցիալ-դեմոկրատ Արշ. Զուրաբյանն ասում էր. «Տաճկաստանի նպատակն է բաժանել մեզ Ռուսաստանից և ենթարկել իրեն։ Բայց մենք կարո՞ղ ենք թողնել Ռուսաստանը, հյուսիսի օրիենտացիան, կարո՞ղ ենք դադարել մեր աչքերը դեպի հյուսիս հառելուց։ Ո՛չ»։ Նա գտնում էր, որ խզումը Ռուսաստանից «մատնում է մեզ մեկուսացման», որ անհնարին է հեռանալ Ռուսաստանից, որի «դեմոկրատիան և քաղաքակրթությունը մի դարից ավելի սնում է տեղական ժողովուրդներին»։

Դաշնակցական պառլամենտի ամբիոնից բոլշևիկ Արշավիր Մելիքյանը հայտարարում էր, թե հայ ժողովրդի փրկության միակ երաշխիքը Սովետական Ռուսաստանի հետ սերտ կապն է։

1918-ի աշնանը Կ. Պոլսի ցեղասպանների պարագլուխներին դիմող հայկական պատվիրակությունը ոչնչի չհասավ, բացի արհամարհանքից, նվաստացումից... Թալեաթը պատվիրակությանն ասում էր. «Մեր մեծ նպատակն է միավորվել Թուրքեստանի և Հնդկաստանի մահմեդական աշխարհի հետ։ Եթե Դուք, հայերդ, կփորձեք խանգարել մեր ծրագրի հաջողությանը, ապա մենք կանցնենք ձեզ տրորելով»[24]։ Իսկ մուսավաթական խան-խոյսկին Ելիզավետպոլի մզկիթում հատուկ աղոթք էր անում թուրքական բանակի կողմից Բաքուն գրավելու առիթով և հայտարարում էր «ամբողջ իսլամի աշխարհի վրա»՝ Կովկաս, Թուրքեստան, Սիբիր, Աֆղանստան և Չինաստան թուրքական իշխանության հաստատման մասին... Թուրքական հովանու տակ պետք է ստեղծվեր պանթուրքական տերությունը՝ Միջերկրականից մինչև Սև ծով ու Անդրկասպիա, Միջին Ասիայի հետ միասին։ Իսկ պանթուրքիզմի մի այլ ջատագով՝ Ռասուլ Զադեն, իր նողկալի հոդվածներում շարունակ ճչում էր Կասպից ծովը թուրքական «ներքին լիճ» դարձնելու մասին[25]։

1918—1920 թթ. Հայաստանը ծանր օրեր էր ապրում. երկիրը կտրված էր Ռուսաստանից, զրկված նրա հետ ունեցած ավանդական կենսատու կապերից։ Սովը, համաճարակը, ավերածությունը համակել էին բոլորին, կյանքի բոլոր ասպարեզները։ Հայաստանում տիրող դրությունը պատկերավոր է նկարագրել Սարգիս Կասյանը։ «Մի հսկայական մութ տխրություն և մռայլություն, տան-

[22] «Հայրենիք», 29.XI.1919։

[23] ՀՍՍՀ պետական կենտրոնական պատմական արխիվ, ֆ. 121, ց. 1, գործ 1, թ. 32 բ։

[24] «Вперед», Բաքու, № 38, 16.IV.1919 թ.։

[25] Տե՛ս ՀՍՍՀ պետական կենտրոնական պատմական արխիվ, ֆ. 121, ց. 1, գ. 33, թ. 8—25։

չանքի ու մրմունջի կնիք է դամել այդ դժբախտ երկրի արյունաներկ ճակատին։ Հայաստանում գոյությունը դարձել է անեծք, կյանքը՝ դժոխք»[26]։

Դաշնակցական կառավարությունը վարում էր հակաժողովրդական, հակասովետական քաղաքականություն։ Նրա դիվանագիտությունն ու դիվանագետները Հայաստան երկրին միայն ձախորդության մատնեցին։ Մերժելով Սովետական Ռուսաստանի փրկարար կողմնորոշումը, դաշնակցական դիվանագետները փարվեցին Լոնդոնի, Փարիզի, Վաշինգտոնի իմպերիալիստական կառավարողներին, հավատացին նրանց խոստումներին, երկիրը տարան անկման, կորուստների ու խայտառակ պարտությունների ճանապարհով։ 1920 թվականի ընթացքում սխալին հետևեց արկածախնդրությունը, դավաճանությանը՝ քյալլագյողությունը։ Որոշ իշխանամոլներ իրենց անձի փառքը վեր դասեցին ժողովրդի ու ազգի կենսական շահերից, նորից Հայաստանը թողեցին առանց Ռուսաստանի հովանավորության, կրելով թուրքական ռազմաշունչ նացիոնալիստների մահաբեր հարվածները։

1920-ի աշնանը Թուրքիան մեր երկրից խլեց Կարսի մարզը, Սուրմալուն ու Իգդիրը...

***

Պատմությունը մեզ ավանդում է, որ հայ ժողովրդի ապահով գոյության ու առաջադիմության երաշխիքը Ռուսաստանի, ռուս ժողովրդի, Սովետական Միության ժողովուրդների եղբայրական ընտանիքի հետ կուռ դաշինքն է։ Սովետական իշխանության վաթսուն տարիների ընթացքում մեր ժողովուրդն իսկապես վերածնվեց, առնականացավ մտքով ու հոգով, ունեցավ այնպիսի նվաճումներ, որոնք հնարավոր էր ձեռք բերել միայն սոցիալիզմի շնորհիվ, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի շնորհիվ։ Մեր պարտքն է աչքի լույսի պես պահպանել հավատարմությունը սովետական ժողովուրդների բարեկամությանը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներին, սերունդներին դաստիարակել հայ ժողովրդի քաղաքական ճակատագրում մեծ Ռուսիայի, ռուս ժողովրդի, Լենինի ու նրա փառապանծ կուսակցության գործի նկատմամբ հարգանքի ու նվիրվածության ոգով։

26 Ս. Ատենյան (Կասյան), Ո՞ւր է ելքը, 1919, էջ 3։

---

# ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱԿԱՆԱՎՈՐ ԳԻՏՆԱԿԱՆԸ

*(ԱԿԱԴԵՄԻԿՈՍ Վ. Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆԻ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)*

ԲՈԼՈՐԵՑ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի 70 տարին։ Մեծ է ականավոր աստղաֆիզիկոսի ավանդը հեռավոր, անծանոթ աշխարհների ուսումնասիրման գործում։ Սովետական և համաշխարհային գիտության երկնակամարի առաջին մեծության աստղ է նրան անվանել ընկեր Լ. Ի. Բրեժնևը։



Գիտնական քաղաքացու գիտական ու քաղաքացիական սխրագործությունը բարձր են գնահատել կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը։ Սովետական գիտության զարգացման բնագավառում ունեցած ակնառու վաստակի համար և ծննդյան 70-ամյակի առթիվ Վիկտոր Համազասպի Համբարձումյանը պարգևատրվեց Լենինի շքանշանով և «Մուրճ ու մանգաղ» երկրորդ ոսկե մեդալով։

Սեպտեմբերի 21-ին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակին նվիրված միացյալ գիտական նստաշրջանի պլենար նիստերի ընդմիջման ժամանակ տեղի ունեցավ հանրապետության գիտական մտքի շտաբի անփոփոխ ղեկավարի մեծարումը։

Նախագահությունում էին Հայաստանի կոմկուսի և հանրապետության կառավարության ղեկավարները, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի, Հայկական ՍՍՀ և եղբայրական հանրապետությունների գիտությունների ակադեմիաների ղեկավար գործիչներ, սովետական ականավոր գիտնականներ։

Ձայնը տրվում է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանին։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ՃԱՌԸ

Ընկերնե՜ր։ Հարգելի հյուրեր։ Այսօր մենք հավաքվել ենք այս դահլիճում, որպեսզի նշենք մի կարևորագույն հոբելյան՝ արդիականության ականավոր գիտնական, պետական ու հասարակական գործիչ, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանի 70-ամյակը։

Նշելով այս հոբելյանը, մենք արտահայտում ենք համաժողովրդական ճանաչումը և խորին հարգանքը այն մարդու նկատմամբ, որով իրավամբ հպարտանում ենք էբրև լենինյան մեծ կուսակցության արժանավոր զավակի, որն իր մեջ մարմնավորում է սովետական քաղաքացու լավագույն հատկանիշները, մի գիտնական, որի սխրանքը դարձել է 20-րդ հարյուրամյակի հանդուգն գիտական մտքի նվաճումների տարեգրության մի վառ էջը, որի անունը, Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի պատկերավոր արտահայտությամբ, «սովետական և համաշխարհային գիտության երկնակամարում... շողում է որպես առաջին մեծության աստղ»։

Նշելով այս հոբելյանը, մենք հանրապետության աշխատավորության, բովանդակ հայ ժողովրդի ջերմագին սերն ու հիացմունքն ենք հայտնում գիտնականին, ինտերնացիոնալիստ հայրենասերին, որի աշխատությունները, փայլուն հայտնագործությունները դարձել են մեր ժողովրդի պարծանքը և որի անունը ընդմիշտ կմնա հայ մշակույթի բազմադարյան պատմության մեջ, կգրվի Հայաստանի փառապանծ զավակների անունների շարքում։

Թանկագին Վիկտոր Համազասպովի՜չ։

Կոմունիստի, քաղաքացու և գիտնականի Ձեր ողջ կյանքով Դուք տալիս եք կուսակցության ու ժողովրդի գործին անսահման նվիրվածության, գիտությանը, սոցիալիստական սիրելի հայրենիքի առաջադիմությանն ու բարգավաճմանը հավատարմորեն ծառայելու սքանչելի օրինակ։

Մեծ ու վառ ձիրքը, բնության, բարդ և առեղծվածներով լեցուն տիեզերքի կյանքի նկատմամբ խոր հետաքրքրությունը վաղ տարիքից կանխորոշեցին Ձեր ստեղծագործական ուղին, որը նվիրված է տիեզերքի սկզբունքային պրոբլեմների ուսումնասիրմանը։ Ձեր գիտական հետազոտությունների հիմնարար արդյունքները նոր խոսք, վառ ուղենիշ են դարձել աստղաֆիզիկայի բնագավառում։

Դուք կարողացել եք տալ շրջակա աշխարհում ընթացող մի ամբողջ շարք բազմաբարդ պրոցեսների խորապես գիտական բացատրությունը, ի հայտ բերել որակապես նոր երևույթներ, բացահայտել մատերիայի հատկությունների դրսևորումների անսահման բազմազանությունը, կրկին ու կրկին հաստատել, որ բնությունը իրոք անսպառ է։ Ձեր աշխատությունները ոչ միայն էապես ընդլայնել ու հարստացրել են աշխարհի գիտական պատկերը, այլև այդ հիման վրա ձեռք են բերել փիլիսոփայական-աշխարհայացքային կարևոր նշանակություն, դառնալով դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքների ճշմարտացիության ու անխախտության մի նոր հաստատումը։

Դուք տեսական աստղաֆիզիկայի դպրոցի հիմնադիրներից մեկն եք։ Այն պրոբլեմները, որոնց լուծմանը Դուք նվիրել եք Ձեր ստեղծարար գործունեությունը, դասվում են ժամանակակից աստղաֆիզիկայի առավել կարևոր և բարդ պրոբլեմների թվին։ Գիտական կանխատեսման, հետազոտվող երևույթների էության մեջ խորապես ներթափանցելու և դրանք ըմբռնելու իրոք վիթխարի ձիրքով պետք է օժտված լինել տիեզերքի ուսումնասիրման հսկայական քանակությամբ հանգուցային հարցերից արմատական նշանակություն ունեցող հարցերն առանձնացնելու և դրանց սպառիչ բացատրություններ տալու համար։ Եվ պատահական չէ, որ Ձեր կոնցեպցիաները այնքան հետևորդներ ունեն, հուժկու ազդակ են ծառայել նոր դիտարկումների ու հետազոտությունների համար։

Ձեր գաղափարները լայնորեն ճանաչված են ամբողջ աշխարհում և մտել են համաշխարհային աստղաֆիզիկայի գանձարանը։

Գիտության մեջ ներդրած հսկայական ավանդի, լայն էրուդիցիայի, բացառիկ աշխատասիրության, սովետական գիտնականի վսեմ հատկությունների շնորհիվ Դուք դարձել եք մեր ժամանակի գիտության կարկառուն գործիչներից



մեկը։ Դրա հաստատումն են Ձեզ գիտությունների ավելի քան քառասուն արտասահմանյան ակադեմիաների ու գիտական ընկերությունների անդամ ընտրելը և մի շարք օտարերկրյա ակադեմիական պարգևների շնորհումը։ Երկար տարիներ Դուք գլխավորել եք միջազգային աստղագիտական միությունը, երկու անգամ ընտրվել գիտական միությունների միջազգային խորհրդի պրեզիդենտ, մեծ ավանդ եք ներդրել միջազգային գիտական համագործակցության ամրապնդման, սովետական գիտության հեղինակության ու ազդեցության բարձրացման գործում։

Ձեր հիմնադրած Բյուրականի աստղադիտարանը միջազգային ճանաչման է արժանացել, իսկ աստղադիտարանի արգասավոր հետազոտական գործունեությունը նշվել է կառավարական բարձր պարգևով՝ Լենինի շքանշանով։

Մեծ է Ձեր վաստակը մեր հանրապետության տնտեսական ու մշակութային շինարարության գործում։ Ահա արդեն երեսուն տարուց ավելի գլխավորելով գիտությունների ակադեմիան, Դուք ուժ ու եռանդ չեք խնայել գիտական աշխատանքը ժամանակակից մակարդակով կազմակերպելու, կադրերի դաստիարակման ու պատրաստման համար, ակադեմիայի կոլեկտիվների հաջող գործունեության և Հայաստանում գիտության բուռն առաջադիմության համար, հսկայական անձնական ավանդ եք ներդրել մեր Սովետական Սոցիալիստական Հանրապետության տնտեսության ու մշակույթի խոշոր խնդիրների լուծման գործում։

Ձեզ հատուկ հեռևողականությամբ ու նպատակասլացությամբ Դուք կիրառում եք գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման, արտադրության հետ գիտության կապերի ամրապնդման, նրանց ինտեգրացման ավելի բարձր, լավագույն և ներդաշնակ ձևերին անցնելու, ժողովրդատնտեսական կոնկրետ խնդիրների լուծմանը գիտական հիմնարկությունների կոլեկտիվների ակտիվ մասնակցության՝ կուսակցության կուրսը։

Հայաստանի գիտությունների ակադեմիայի գիտնականների փառապանծ կոլեկտիվը Ձեր ղեկավարությամբ հիանալի հաջողությունների է հասել գիտության մի շարք բնագավառներում։ Սովետահայ գիտնականների հետազոտությունները լայնորեն հայտնի են ոչ միայն Սովետական Միությունում, այլև արտասահմանում։ Ուրախալի է նաև նշել Հայաստանի գիտական կոլեկտիվների ամրակուռ համագործակցությունը եղբայրական հանրապետությունների գիտնականների հետ, ստեղծագործական կոնտակտների ընդլայնումն ու ամրապնդումը, փոխգործողությունը հայրենական գիտության առջև ծառացած կարևոր ու հրատապ պրոբլեմների լուծման ճանապարհին։

Թանկագին Վիկտոր Համազասպովի՜չ, Ձեր պանծալի հոբելյանը զուգադիպում է հայ ժողովրդի մեծ տոնին՝ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակին, մի իրադարձություն, որը հսկայական դեր է խաղացել հայ ժողովրդի ճակատագրում, նրա սոցիալ-տնտեսական, քաղաքական ու մշակութային հետագա զարգացման գործում։ Այդ մեծագույն առաջադիմական ակտի շնորհիվ մեր ժողովուրդը, աշխատավորները հաղորդակից դարձան ռուս մեծ մշակույթին, համադեմոկրատական ու մարքսիստական գաղափարներին, լենինյան կուսակցության մեծ գործին։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակը, Հայաստանում սովետական իշխանության հաստատումը հայ ժողովրդին բերեցին իսկական սոցիալական ազատագրություն և ազգային վերածնունդ։ Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հանրապետության աշխատավորները հիանալի վերափոխումներ են կատարել, Հայաստանը դարձրել մի բարգավաճ երկրամաս, բարձր զարգացած ինդուստրիայի ու գյուղատնտեսության, առաջավոր սոցիալիստական մշակույթի հանրապետություն, որը ձգտում է դեպի ժամանակակից տնտեսական ու սոցիալական առաջադիմության գագաթները։

Սովետական Հայաստանի գիտության բուռն զարգացումը սովետական իշխանության հիանալի նվաճումներից մեկն է և դրա հետ միասին՝ ռուս և հայ ժողովուրդների, մեր երկրի բոլոր ժողովուրդների եղբայրության ու համագոր-

ծակցության ամենափառավոր իրողություններից մեկը։ Դա հնարավոր եղավ կոմունիստական կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ, պայմանավորված է մեր պետության բուն սոցիալիստական բնույթով, սովետական ժողովուրդների բարեկամությամբ ու համախմբվածությամբ, նրանց փոխադարձ օգնությամբ։ Սովետական Հայաստանում, ինչպես որ մյուս հանրապետություններում, գիտության կազմավորման ու ծաղկման համար հսկայական դեր են խաղացել սովետական գիտության գլխավոր շտաբը՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, նշանավոր ռուս գիտնականների անձնվեր աշխատանքը, որոնք լիաբուռն և անշահախնդիր կերպով իրենց գիտելիքներն են հաղորդել երիտասարդությանը, սովետական երկրի բոլոր ժողովուրդների գիտության ներկայացուցիչներին։ Այդ բարերար միջավայրում դաստիարակված, մեծացած և որպես գիտնական կոփված այդպիսի երիտասարդներից մեկն էլ եղել եք Դուք։

Մեծարգո Վիկտոր Համազասպովիչ։ Մենք այսօր գոհունակությամբ ենք նշում, որ Դուք գիտական բազմաբեղուն գործունեությունը հաջողությամբ զուգորդում եք մեր երկրի հասարակական-քաղաքական կյանքին ակտիվորեն մասնակցելու հետ։ Լինելով կուսակցական շատ համագումարների պատգամավոր, Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի անդամ, ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, Դուք մեծ ու արգասավոր աշխատանք եք տարել և շարունակում եք տանել ի բարօրություն հայրենիքի։ Լինելով «Գիտելիք» հանրապետական ընկերության նախագահը և համարելով, որ գիտությունը ժողովրդի սեփականությունն է, Դուք հմտորեն ու ստեղծագործաբար եք ղեկավարում բնակչության լայն խավերի շրջանում գիտական գիտելիքների պրոպագանդման ամբողջ գործը։

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բարձր են գնահատել Ձեր ակնառու վաստակը սովետական գիտության զարգացման գործում։ Դուք արժանացել եք մի շարք կառավարական բարձր պարգևների, ՍՍՀՄ պետական մրցանակների, սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման։ Եվ ահա ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով, սովետական գիտության զարգացման գործում ունեցած ակնառու վաստակի համար և ծննդյան 70-ամյակի առթիվ Դուք կրկին արժանացաք հայրենիքի բարձրագույն պարգևին՝ Լենինի շքանշանի և «Մուրճ ու մանգաղ» երկրորդ ոսկե մեդալի։

Թույլ տվեք, թանկագին Վիկտոր Համազասպովիչ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, հանրապետության Գերագույն սովետի Նախագահության ու Մինիստրների խորհրդի կողմից, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների կողմից Ձեզ ջերմորեն և ի սրտե շնորհավորել փառապանծ հոբելյանի ու հայրենիքի բարձր պարգևի առիթով, Ձեզ մաղթել մեծ երջանկություն, առողջություն, նոր մեծագործություններ՝ ի բարօրություն մեր հայրենիքի։

Ընկերնե՛ր։ Մենք առանձնապես ուրախ ենք, որ այսօր, այս մեծարման հանդեսին ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, մեծարգո Անատոլի Պետրովիչ Ալեքսանդրովի գլխավորությամբ ներկա են մեր երկրի ականավոր գիտնականները՝ հոբելյարի ընկերներն ու կոլեգաները, Մոսկվայի, Լենինգրադի, եղբայրական հանրապետությունների գիտական հասարակայնության ներկայացուցիչները։ Մենք ջերմորեն ողջունում ենք նրանց և ի սրտե շնորհակալ ենք, որ մասնակցում են մեծարմանը և ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի ու Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի միացյալ հոբելյանական գիտական նստաշրջանին։

Կուսակցությունը բարձր է գնահատում սովետական գիտնականների աշխատանքը, գիտությանը բացառիկ նշանակություն է տալիս մեր հասարակության հետագա առաջընթացի գործում։ ՍՄԿԿ XXV համագումարն ընդգծեց, որ գիտատեխնիկական առաջընթացի արագացումը մնում է որպես առաջնահերթ խնդիր, որ միայն գիտության ու տեխնիկայի արագ զարգացման հիման վրա կարող է լուծվել սոցիալական հեղափոխության վերջնական խնդիրը՝ կոմունիստական հասարակության կառուցումը։



«Մենք հիանալի գիտենք,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որ գիտատեխնիկական առաջընթացի հորդառատ հոսանքը կցամաքի, եթե այն մշտապես չսնուցվի հիմնարար հետազոտություններով։ Կուսակցության կուրսն այն է, որ այսուհետև էլ մշտական հոգատարություն ցուցաբերվի մեծ գիտության զարգացման, նրա գլխավոր շտաբի՝ գիտությունների ակադեմիայի նկատմամբ»։

Սովետական գիտնականները ժողովրդի հարազատ զավակներն են։ Նրանք ընթանում են հիասքանչ ապագայի համար պայքարող մարտիկների առաջին շարքերում, մասնակցում երկրի բոլոր մեծագործություններին, իրենց ամբողջ ուժը, տաղանդն ու եռանդը նվիրաբերում են սովետական գիտության աղնիվ ու մարդասիրական խնդիրների լուծմանը, գիտություն, որը բոլորանվեր ծառայում է մարդուն, լույսին, բարուն, մարդկանց երջանկությանը և դարձել է առաջադիմության, մեր լենինյան կուսակցության հոյակապ կանխագծումների կենսագործման, դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները սովետական հասարակության առաջընթացն ապահովող խոշորագույն ու վճռական գործոններից մեկը։

Վիկտոր Համազասպի Համբարձումյանի 70-ամյա հոբելյանը և բարձր պարգևին արժանանալը բոլորիս համար էլ բերկրալի մեծ իրադարձություն է։ Մեր թանկագին հոբելյարը իր 70-ամյակը դիմավորում է ստեղծագործական ուժերի լիակատար ծաղկման շրջանում։ Եվ մենք հավատացած ենք, որ Վիկտոր Համազասպովիչը, ինչպես միշտ, ակտիվորեն, ուժերի ու եռանդի, իր գիտելիքների ու տաղանդի լիակատար նվիրումով կաշխատի հանուն մեր սիրելի հայրենիքի հետագա պրոգրեսի և բարգավաճման։

---

4. «Լենինյան ուղիով», № 10

# ՄԵԾ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ՈՒՂԻՈՎ

Վ. Ե. ԽՈՋԱԲԵԿՅԱՆ
Տնտեսագիտության դոկտոր

ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ՀԵՏ ԱՐԵՎԵԼՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ միավորմամբ մեր ժողովրդի մի ստվար հատվածն ազատագրվեց պարսկական բռնակալության ծանր լծից։ Այդ բախտորոշ իրադարձությունը մեծապես նպաստեց երկրի հետագա առաջընթացին։

Ռուսաստանի հետ միավորվելուց հետո Արևելյան Հայաստանում անհամեմատ զարգացան արտադրաուժերը, ստեղծվեցին մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ, Ալավերդին ու Զանգեզուրը դարձան պղնձարդյունաբերության կարևորագույն կենտրոններ։ Զարգացավ առևտրական երկրագործությունը, հատկապես՝ բամբակագործությունը և խաղողագործությունը։ Երևանի նահանգը դարձավ Անդրկովկասում կոնյակի սպիրտի արտադրության կենտրոններից մեկը։ Կազմավորվեց գյուղական ու արդյունաբերական պրոլետարիատը։

Արևելյան Հայաստանի հետագա տնտեսական զարգացումը որոշակիորեն բացատրվում է նաև նրա տարածքում բնակչության հետագա աճով, աճ, որը այդ պատմական ակտի անմիջական արգասիքն էր։ Մինչդեռ, պարսկական տիրապետության տարիներին Արևելյան Հայաստանը դատարկվում էր հայերից և բնակեցվում թուրքերով, պարսիկներով ու քրդերով։ Այդ պատճառով 1827 թ. Սովետական Հայաստանի ներկայիս տարածքում հայերը կազմում էին 97,5 հազար, բնակչության ընդամենը 46,9 տոկոսը։

Ռուսաստանի հետ միավորվելուց հետո Արևելյան Հայաստանում բնակչության աճի չափազանց կարևոր գործոն է դառնում Պարսկաստանից և Թուրքիայից մշտապես կատարվող ներգաղթը։ Դրա շնորհիվ մինչև 1913 թ. Սովետական Հայաստանի ներկայիս տարածքում բնակչությունը հասավ մեկ միլիոնի։ Այդ ժամանակաընթացքում համանման թափով բնակչությունն ավելացավ նաև Արևելյան Հայաստանի մնացած մասերում, հատկապես 1887—1888 թթ. ռուս-թուրքական պատերազմից հետո, երբ Ռուսաստանի կազմի մեջ մտավ նաև Կարսի մարզը։ Այդ պրոցեսը համընկավ Ռուսաստանում, ինչպես նաև Անդրկովկասում կապիտալիստական հարաբերությունների ձևավորման և հետագա զարգացման հետ։ Դա կարևոր պայման հանդիսացավ հայ բնակչության տեղաշարժերի ինտենսիվացման, Անդրկովկասում հայության ավելացման համար։

Այս ամենով հանդերձ, Արևելյան Հայաստանը դարձավ ցարիզմի հանքային-հումքային աղբյուրներից մեկը։ Հայաստանում արտադրվող պղնձի հանքաքարը և գյուղատնտեսական հումքի բազմաթիվ տեսակներ վերամշակվում էին ցարական Ռուսաստանի կենտրոնական արդյունաբերական շրջաններում։ Ազգային մյուս ծայրամասերի հետ մեկտեղ, Հայաստանը ևս ծառայում էր որպես արդյունաբերական ապրանքների վաճառահանման շուկա, ուր հիմնականում իրացվում էր Ռուսաստանի կենտրոնական արդյունաբերական շրջանների արտադրանքը։ Այդպիսին էր կապիտալիզմի զարգացման ընթացքը։



Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միավորվելու շնորհիվ հայ ժողովրդի այդ հատվածը ո՛չ միայն ֆիզիկական գոյատևման երաշխիք ստացավ, այլև թոթափելով ֆեոդալական հետամնացության կապանքները, սկսեց ընթանալ կապիտալիստական ուղիով։

ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ մեծ հեղափոխության և Հայաստանում սովետական կարգերի հաղթանակով սկսվեց հայ ժողովրդի սոցիալական և ազգային վերածննդի, սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումների դարաշրջանը։

1828 թվականից սկիզբ առած քարավաններն առ այսօր գալիս են ու գալիս։ Բնակչության բնական աճի հետ մեկտեղ, այդ քարավանները, իրենց հերթին, դարձան ՀՍՍՀ բնակչության աճի կարևոր ազդակ։ Հայաստանում սովետական կարգերի հաղթանակից հետո բնակչությունն աճել է 2,3 մլն, իսկ դրան նախորդող ավելի քան 8,5 տասնամյակներում՝ 900 հազար մարդով։

Այսօր Սովետական Հայաստանի բնակչությունը հասել է 3 մլն-ի, որն ավելի քան 31 անգամ գերազանցում է նախկին թիվը (97,5 հազար)։ Դա նշանակում է, որ 150 տարում Սովետական Հայաստանի ներկայիս տարածքում, միջին հաշվով, բնակչությունն աճել է շուրջ 2 տոկոսով։ Ներկայումս աշխարհի շատ երկրներում այն մեկ տոկոսից էլ պակաս է։

Իրականացնելով Վ. Ի. Լենինի պատգամները, Սովետական Հայաստանն ագրարային երկրից դարձավ ինդուստրիալ հանրապետություն։ Անսահման բերկրանք ենք ապրում մենք՝ հետադարձ մի հայացք ձգելով Սովետական Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ընթացքին։ Առաջնակարգ տեխնիկայով զինված նրա արդյունաբերական ձեռնարկություններն այսօր արտադրում են չափիչ ու կարգավորիչ սարքեր, ռադիոսարքեր, հաշվիչ մեքենաներ, շարժական էլեկտրակայաններ, գեներատորներ, տրանսֆորմատորներ, գունավոր և ազնիվ մետաղներ, ավտոմեքենաներ, ավտոդողեր, բարձրորակ և ունիկալ հաստոցներ, գերճշգրիտ գործիքներ, ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ բազմապիսի այլ նյութեր։ Արդյունաբերական արտադրանքի շատ տեսակներ լայնորեն հայտնի են Սովետական Միությունում և նրա սահմաններից դուրս։ Հայաստանի արդյունաբերության 170 արտադրատեսակներ արտահանվում են աշխարհի 70 երկրներ։

ՀՍՍՀ-ում գիտատեխնիկական առաջընթացի համեմատ արդյունաբերության ընդգրկման շրջանակներն աստիճանաբար ընդարձակվեցին։ Բավական է ասել, որ 1977 թ. նրա համախառն արտադրանքը, 1913 թ. համեմատությամբ, ավելացավ շուրջ 312, իսկ 1940 թ. համեմատությամբ՝ մոտ 36 անգամ։

Օգտագործելով եղած հանքային պաշարները և ելնելով աշխատանքային ռեսուրսների, մանավորապես ինժեներական և բանվորական բարձրորակ կադրերի առկայությունից, ՀՍՍՀ արդյունաբերությունը ժամանակի ընթացքում մասնագիտացավ գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության, հատկապես դրա բազմաթիվ նորագույն արտադրությունների, շինանյութերի ու քիմիական արդյունաբերության մի շարք նոր ու նորագույն ճյուղերի, ինչպես նաև թեթև ու սննդի արդյունաբերության նոր տեսակների արտադրության բնագավառում։

Հայաստանի արդյունաբերության զարգացման տարեգրության մեջ խորապես ուրվագծվում է հետպատերազմյան շրջանը։ Նրա համակողմանի զարգացումն ուղեկցվում է ճյուղային կառուցվածքի պրոգրեսիվ փոփոխություններով, ճյուղային և տերիտորիալ տեղաբաշխման միակողմանիության զգալի հաղթահարմամբ, արդյունաբերական ձեռնարկությունների մասնագիտացմամբ, որակական ցուցանիշների և աշխատուժի օգտագործման բարելավմամբ։ Առանձնապես արագ տեմպերով աճեցին մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը և էներգետիկան, ինչպես նաև շինանյութերի արդյունաբերությունը։ Այդ զարգացումը բնութագրվում է վերոհիշյալ ճյուղերի ո՛չ միայն քանակական, այլև որակական աճով, միանգամայն նոր արտադրությունների ստեղծմամբ։

Այս ճյուղերը, ինչպես նաև մեր հանրապետության ողջ արդյունաբերությունը, իրենց զարգացման արագ տեմպերով հետպատերազմյան տարի-

ներին ևս գերազանցում էին միութենական միջին ցուցանիշները։ Եթե ՍՍՀՄ արդյունաբերության զարգացման տարեկան միջին տեմպերը 1951—1960 թթ. կազմել են 11,7, իսկ 1961—1975 թթ. 8,2 տոկոս, ապա ՀՍՍՀ արդյունաբերության մեջ այն համապատասխանաբար կազմել է 12,4 և 9,5 տոկոս։ 1961—1975 թթ. Միության մեքենաշինության ու մետաղամշակման արդյունաբերության աճի տարեկան միջին տեմպը կազմել է 11,9, ՀՍՍՀ-ում՝ 15,25։ Այս միտումը բնորոշ էր նաև արդյունաբերության այլ ճյուղերին։ Ներկայումս Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ ստեղծվել է այնպիսի ճյուղային կառուցվածք, որը հատուկ է արդյունաբերական առումով զարգացած երկրներին։

Արդյունաբերության այդպիսի զարգացումն ապահովել է մեզ մոտ զբաղվածության արագ աճ։ 1940 թ. համեմատությամբ արդյունաբերության արտադրական անձնակազմը 1960 թ. ավելի քան եռապատկվել է, իսկ հաջորդ 15 տարում աճել է 2,2 անգամ։ 1977 թ. ՀՍՍՀ արդյունաբերության մեջ զբաղված էր 342,9 հազար մարդ։ Դա ժողովրդական տնտեսության ուղած ճյուղի համեմատությամբ զբաղվածության ամենաբարձր մակարդակն է։ Բնական է, որ նման տեղաշարժերն ուղեկցվում են աշխատանքի արտադրողականության բարձրացման (1940 թ. համեմատությամբ 1975 թ. ավելացել է 5,23 անգամ) և համախառն արտադրանքի ավելացմամբ (31 անգամ)։

1975 թ. արդյունաբերությունը տալիս էր հասարակական ամբողջական արդյունքի 67,2 և ազգային եկամտի շուրջ 67 տոկոսը։

Հարկ է նշել, որ մեքենաշինության խիստ մասնագիտացման շնորհիվ ներկայումս այդտեղ ընդգրկված բանվորական և ինժեներատեխնիկական անձնակազմը արդյունավետ կերպով մասնակցում է Միության մասշտաբով արտադրանքի նորագույն տեսակներ՝ մաթեմատիկական և էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ, քվանտային գեներատորներ և գերճշգրիտ ապարատներ, կիսահաղորդչային սարքեր և ավտոմատացման միջոցներ, չափիչ և կարգավորիչ, ինչպես նաև օրգանական քիմիայի բարդ նյութեր սինթեզող սարքերի ստեղծմանը։

Հայկական ՍՍՀ արդյունաբերության ճյուղերի զարգացման համար ստեղծված յուրօրինակ պայմանները, հանքային և աշխատանքային ռեսուրսների, ինժեներական և բանվորական բարձրորակ կադրերի առկայությունն այսուհետ ևս կկանխորոշեն դրա ճյուղային կառուցվածքի նորագույն փոփոխությունները և խոր մասնագիտացումը։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով առաջիկայում ևս նախատեսվում են ՀՍՍՀ արդյունաբերության զարգացման բարձր տեմպեր։ Տասներորդ հնգամյակի տարիներին դրա համախառն արտադրանքը կավելանա 43—47 տոկոսով՝ աճի տեմպերով զիջելով միայն Մոլդավական ՍՍՀ-ին։

Շարունակվում է ՀՍՍՀ արդյունաբերության ճյուղային կառուցվածքի կատարելագործումը, բարձրանում է աշխատատար արտադրությունների բաժինը։ Նախատեսվում է մեքենաշինության ու մետաղատար ճյուղերի՝ էլեկտրոնային, ռադիոտեխնիկական, էլեկտրատեխնիկական, հաստոցաշինական ու գործիքաշինական արդյունաբերության և սարքաշինության զարգացում։

Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերության արագ աճը թելադրվում է նաև փոքր քաղաքների զարգացման և դրանցում աշխատանքային ռեսուրսների օգտագործման արդյունավետության բարձրացման անհրաժեշտությամբ։ Այդ նպատակով տասներորդ հնգամյակում նախատեսվում է ձեռնարկությունները տեղաբաշխել միջակ և ոչ մեծ քաղաքներում։

Այսպիսով, ինչպես ՍՍՀՄ, այնպես էլ Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ դարձյալ առավել արագ տեմպերով կզարգանան գիտատեխնիկական առաջընթացի նյութական հիմք հանդիսացող առաջատար արտադրությունները։ Հանրապետությունում համեմատաբար արագ տեմպերով կզարգանան նաև այն ճյուղերը, որոնք կնպաստեն տեղական հումքային ռեսուրսների կոմպլեքսային օգտագործմանը՝ դրանցից պատրաստի արդյունքի առավելագույն չափին ապա-



հովելու, ինչպես նաև մասնագիտացման շնորհիվ աշխատանքային ռեսուրսների և զբաղվածության արդյունավետությունը բարձրացնելու համար։

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ բուռն զարգացել է նաև գյուղատնտեսությունը։ Ճիշտ է, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորումից հետո, պարսկական տիրապետության տարիների համեմատությամբ, գյուղատնտեսությունը բավականին առաջադիմեց, իսկ նրա մի շարք արդյունքներ, հատկապես բամբակը և խաղողը (կոնյակի սպիրտ ստանալու նպատակով) ներառվեցին համաշխարհային ապրանքաշրջանառության ոլորտը, բայց, այնուամենայնիվ, գյուղատնտեսության զարգացումը միակողմանի բնույթ էր կրում, իսկ մասնագիտացումը չափազանց թույլ էր։ Առաջին համաշխարհային պատերազմի շրջանում արդյունաբերության հետ միասին վայրէջք ունեցավ նաև գյուղատնտեսությունը։ Սովետական իշխանության տարիներին նոր հողերի յուրացումը, ջրանցքների լայն ցանցի ստեղծման միջոցով ոռոգելի հողատարածությունների ավելացումն ուղեկցվում էր արտադրության պրոցեսների մեքենայացմամբ, գյուղատնտեսության մասնագիտացմամբ ու ճյուղային կառուցվածքի կատարելագործմամբ, ցանքաշրջանառության արդի մեթոդների արմատավորմամբ։

Դա առաջին հերթին վերաբերում է խաղողի, պտղատու այգեգործության, ծխախոտի, խորդենու, կարտոֆիլի, բոստանային և կերային կուլտուրաների մշակությանը հատկացված հողատարածությունների ավելացմանը, անասունների ցեղային հոտի բարելավմանն ու գլխաքանակի ավելացմանը։ 1941—1976 թթ. ՀՍՍՀ հացահատիկային կուլտուրաների հողատարածություններն ավելի քան 48 տոկոսով կրճատելու և բամբակագործությունը վերացնելու պայմաններում, ցանքատարածություններն ավելացել են այսպես. ծխախոտ՝ 135 տոկոսով, կերային կուլտուրաներ՝ 5 անգամ, կարտոֆիլ և բանջարաբոստանային կուլտուրաներ՝ երկու անգամ։ Ինչ վերաբերում է խաղողին և պտղատու այգեգործությանը, որոնք աչքի են ընկնում բարձր աշխատատարությամբ, ապա նույն տարիներին առաջինին հատկացված հողատարածություններն ավելացել են 211,6, իսկ երկրորդինը՝ 323 տոկոսով։

Այսպիսով, խոսքը վերաբերում է Հայաստանի գյուղատնտեսության մեջ առավել բարձր եկամտաբերության և ՍՍՀՄ գյուղատնտեսական արտադրության մեջ դրա մասնագիտական ուղղությունը բնորոշող ճյուղերի ընդլայնմանը։ Հասկանալի է, որ դրանք բավարարում են ո՛չ միայն տեղական պահանջները, այլև իրենց արդյունաբերական կարևորությամբ ստանում են համամիութենական նշանակություն։

ՀՍՍՀ գյուղատնտեսության ճյուղային կառուցվածքի փոփոխությունը և աշխատատար կուլտուրաների արտադրության ավելացումը ուղեկցվում են աշխատուժի օգտագործման արդյունավետության բարձրացմամբ։ Դրա վկայությունն է գյուղատնտեսության համախառն արդյունքի ավելացման պայմաններում բնակչության զբաղվածության խիստ կրճատումը, աշխատանքի արտադրողականության և յուրաքանչյուր հեկտարի բերքատվության բարձրացումը։

1926 թ. մարդահամարի տվյալներով ՀՍՍՀ-ում բնակչության զբաղվածությունը գյուղատնտեսության և անտառային տնտեսության մեջ կազմում էր 89 տոկոս, իսկ 1939 թ. տվյալներով՝ ավելի քան 60, 1960 թ.՝ 44, ներկայումս այն իջել և հասել է 23 տոկոսի։ Խնդիրն այն է, որ աշխատուժի վերաբաշխման պրոցեսում զբաղվածների ընդհանուր թվում ո՛չ միայն իջնում է գյուղատնտեսության բնագավառում զբաղվածների տեսակարար կշիռը, այլև պակասում է նրանց բացարձակ թիվը՝ գյուղատնտեսական արտադրության ընդլայնման և համախառն արտադրանքի ավելացման պայմաններում։

Ընդ որում, ՀՍՍՀ գյուղատնտեսության մեջ զբաղվածների (ներառյալ նաև անձնական օժանդակ տնտեսություններում աշխատողներ) բացարձակ թիվը, 1960 թ. համեմատ, 1975 թ. պակասել էր ավելի քան 21 տոկոսով։ Այնուհանդերձ 60-ական թվականների վերջերը այն սահմանագիծն է, երբ ՀՍՍՀ գյուղատնտեսությունը բնակչության գերակշռող մասը զբաղեցնելու իր երբեմնի դիրքերը վերջնականապես զիջեց արդյունաբերությանը։ Սակայն պետք է նշել, որ

արտադրությունում ուսուցման միջոցով նոր պրոֆեսիաներ ու մասնագիտություններ ձեռք բերած բանվորների թիվը կազմել է 525 հազար։

Սովետական Հայաստանը բնութագրվում է նաև կուլտուր-լուսավորական հիմնարկությունների զարգացած ցանցով։ Այսպես, եթե 1913 թ. հանրապետության այժմյան տարածքում գործում էին ընդամենը 13 գրադարան (9.000 օրինակ գրքային ֆոնդով), ապա 1977 թ. դրանց թիվը հասավ 1.322-ի (12.345 հազար օրինակ գրքային ֆոնդով)։ 1977 թ. հանրապետությունում կար 1.192 ակումբ, որից 940-ը՝ գյուղական վայրերում։

1913 թվականին հանրապետությունում տպագրվել են 55 անուն գիրք, թերթ և ամսագիր՝ 80 հազար տպաքանակով, իսկ 1976 թ. թողարկվել է 1.165 անուն՝ 10.231 հազար ընդհանուր տպաքանակով։ 1913 թ. լույս տեսնող 6 թերթի փոխարեն, 1976 թ. հրատարակվում էր 81 թերթ՝ ավելի քան 1,5 միլիոն ընդհանուր տպաքանակով և 91 անուն ամսագիր ու այլ պարբերականներ՝ ավելի քան 20 միլիոն տպաքանակով։ 1976 թ. հանրապետությունում գործում էին 803 կինոթատրոն-կինոսարքեր, որոնցից 613-ը տեղակայված էին գյուղական վայրերում։ Այս ամենի հետ մեկտեղ Հայկական ՍՍՀ բնակչության կուլտուրական պահանջմունքները բավարարում են նաև հանրապետության սահմաններից դուրս ռուսերեն և այլ լեզուներով հրատարակված պարբերականներն ու գրքերը։

Բնակչության կենսագործունեության, գյուղի ու քաղաքի կենսամակարդակների մերձեցման խնդրում մեծ դեր է խաղացել առողջապահության զարգացումը։ Բավական է ասել, որ 1913 թ. բնակչության 10 հազար շնչին ընկնում էր 2,1 հիվանդանոցային մահճակալ, 0,7 բժիշկ (միայն քաղաքներում), 1,5 միջին բուժանձնակազմ։ 1976 թ. այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմեցին՝ 84,8, 35,3 և 77,8։

Մեծ փոփոխություններ են կատարվել նաև բնակչության կենցաղսպասարկման ասպարեզում։ Հանրապետության ամենահեռավոր անկյուններում անգամ վաղուց մուտք են գործել էլեկտրական էներգիան, ռադիոն, հեռուստացույցը։ Գյուղերի մեծ մասն ունի փոստ ու հեռախոս։ Հանրապետության գրեթե բոլոր գյուղերում թերթերը տեղ են հասնում նույն օրը։ Շատ գյուղական տներում տեղակայված են հեռախոսների ապարատներ։ 1977 թ. հանրապետության յուրաքանչյուր հարյուր ընտանիքին ընկնում էր 462 ժամացույց, 74 ռադիոընդունիչ և ռադիո, 80 հեռուստացույց, 98 սառնարան, 77 լվացքի մեքենա, 68 կարի մեքենա, 29 էլեկտրափոշեծծիչ և այլն։

Հանրապետությունում կենցաղսպասարկման ձեռնարկությունների հետ միասին ավելացել է դրանցում աշխատողների թիվը։ Մասնավորապես դա նկատելի է գյուղական վայրերում։ 1961—1976 թթ. կենցաղսպասարկման ձեռնարկությունների թիվը քաղաքներում ավելացել է 2,2, իսկ գյուղական վայրերում՝ մոտ 4,3 անգամ։ 1965—1976 թթ. քաղաքներում կենցաղծառայությունների ծավալն ավելացել է 3,8 իսկ աշխատողների միջին տարեկան թիվը՝ մոտ 2 անգամ, իսկ գյուղական վայրերում՝ համապատասխանաբար՝ 9,1 և ավելի քան 4 անգամ։ 1976 թ. գյուղական վայրերում գործում էր հանրապետության կենցաղսպասարկման ձեռնարկությունների 35 տոկոսը, որոնք իրականացնում էին կենցաղծառայությունների ծավալի 21 տոկոսը։

Զբաղվածությունն ավելանում է նաև առևտրի, կոմունալ-կենցաղային և այլ ոլորտներում։ Այդ երկու բնագավառներում զբաղվածության ավելացումը կապված է առաջին հերթին քաղաքային բնակչության աճի հետ, թեև ապրանքաշրջանառությունն անընդհատ ծավալվում է նաև գյուղում։ Կոմունալ-կենցաղային ծառայությունների բնագավառում զբաղվածության աճը բացատրվում է աննախընթաց տեմպերով իրականացվող բնակարանային շինարարությամբ, որն ընդգրկել է ո՛չ միայն մեծ քաղաքները, այլև փոքր քաղաքներն ու գյուղական վայրերը։ Մինչդեռ, ինչպես հայտնի է, Սովետական Հայաստանը անցյալից բնակարանային ֆոնդ գրեթե չժառանգեց։ Բնակչությունը հիմնականում ապրում էր կավաշեն տներում, գյուղական հյուղակներում։ 1926 թ. քաղաքների ու քաղաքատիպ ավանների հանրայնացված օգտակար բնակելի ֆոնդը կազմում էր միայն 260 հազար fմ։



Հանրապետությունում 1921—1976 թթ. շահագործման է հանձնվել 30.531 հազար fմ օգտակար բնակելի տարածություն։ Ընդ որում, դրա 53,1 տոկոսը կառուցվել է պետության, կոոպերատիվ ձեռնարկությունների ու կազմակերպությունների, բնակկոոպերացիայի, 19,9 տոկոսը՝ բանվորների ու ծառայողների միջոցներով, պետական վարկի օգնությամբ, 27 տոկոսը՝ կոլտնտեսությունների, կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով։

Նոր, գեղատեսիլ քաղաքների ստեղծման ու զարգացման հետ միասին, կարծես մեկեն, փոխվեց հայկական գյուղը։ Հատկապես հետպատերազմյան տարիներին կոլտնտեսություններն ու գյուղական ինտելիգենցիան սեփական միջոցներով և պետական վարկի օգնությամբ կառուցեցին ժամանակակից բարեկարգ, գեղեցիկ, քարաշեն տներ։

1951—1976 թթ. կոլտնտեսությունների, կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի միջոցներով կառուցվել են 139,6 հազար տուն, այսինքն՝ հանրապետությունում կառուցված տների 27,3 տոկոսը գտնվում է կոլտնտեսություններում։ Դրա հետ մեկտեղ, եթե նկատի առնվի սովետական տնտեսությունների բնակարանային շինարարությունը, որ իրականացվել է պետական և բանվոր-ծառայողների սեփական միջոցներով, ապա ակնհայտ կդառնան գյուղական վայրերում բնակարանային շինարարության վիթխարի հաջողությունները։ Գյուղական վայրերում տարեցտարի ավելանում է գազիֆիկացված բնակարանների թիվը։ 1977 թ. արդեն գազիֆիկացվել էր 897 գյուղ։

1921—1978 թթ. Սովետական Հայաստանի ավելի քան քառապատկված բնակչության 65 տոկոսն ապրում է քաղաքներում։ Արմատապես փոխվել են բնակչության սոցիալական կազմը, զբաղմունքի բնույթը, կենցաղն ու ապրելակերպը։

1977 թ. հանրապետությունում աշխատում էին ավելի քան մեկ միլիոն 156 հազար բանվորներ, ծառայողներ ու կոլտնտեսականներ, որոնց հայրենանվեր աշխատանքով բազմապատկվել է սոցիալիստական սեփականությունը, ծաղկում են գիտությունն ու կուլտուրան։

Սովետական Հայաստանը դարձել է գիտության ու լուսավորության երկիր։ Նրա գիտնականներն այսօր իրենց ավանդն են ներդնում համաշխարհային գիտության զարգացման մի շարք ասպարեզներում։

Այսպիսով, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման ամենակարևոր արդյունքն այն է, որ հայ ժողովուրդը, Ռուսաստանի մյուս ժողովուրդների հետ մեկտեղ, հնարավորություն ստացավ մասնակցելու ցարիզմի դեմ մղվող միասնական պայքարին և օգտվելու Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պտուղներից։

Ինչպես մեր մեծ Միության մյուս հանրապետությունների, այնպես էլ Սովետական Հայաստանի օրինակը համոզիչ վկայությունն է այն բանի, որ միայն ժողովուրդների լենինյան դաշինքն է ունակ իրական պայմաններ ստեղծելու ազգային վերածննդի ու արմատական սոցիալական վերափոխումների համար։

# ՄԵՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՌԵԱԼ ՆԱԽԱԴՐՅԱԼԸ

**Ս. Ս. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
ՀԿԿ Արտաշատի շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ մեծ ուշադրություն նվիրեց աշխատանքի լենինյան ոճի տիրապետմանն ու կատարելագործմանը, կուսակցական ու պետական ղեկավարման լենինյան սկզբունքների պահպանմանն ու հետևողական կիրառմանը: «Կուսակցական ղեկավարման հաջողության կարևոր պայմանը,— համագումարում նշեց Լ. Ի. Բրեժնևը,— աշխատանքի լենինյան ոճն է: Իսկ լենինյան ոճը ստեղծագործական ոճ է, որին խորթ է սուբյեկտիվիզմը, նրան բնորոշ է գիտական մոտեցումը բոլոր հասարակական պրոցեսների նկատմամբ: Նա ենթադրում է բարձր պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է ինքնագոհությունը, հակադրվում է բյուրոկրատիզմի և ձևամոլության ամեն տեսակ դրսևորումներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 101—102):

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումը, գործարար մթնոլորտում քննարկելով երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրը, այդ գործում անչափ կարևորեց նաև աշխատանքի ու արտադրության հստակ կազմակերպումը, կուսակցական ղեկավարման բարձր մակարդակի ապահովումը: Կուսկազմակերպությունների հաստատակամ և նպատակասլաց աշխատանքից, ասաց Լ. Ի. Բրեժնևը, մարդկանց ոգևորելու և կազմակերպելու հմտությունից է վճռական չափով կախված կուսակցության ագրարային քաղաքականության հետևողական և արդյունավետ կիրառումը: Այս գործում չափազանց վճռական է կուսշրջկոմների դերը: Ընկ. Բրեժնևը նշեց, որ կուսակցության շրջկոմների գործունեության մեջ ավելի ու ավելի է հաստատվում իսկական կուսակցական ստեղծագործական ոճը: Նա գյուղական շրջկոմների դերի բարձրացումը համարեց համակուսակցական գործ: Այս խնդիրները մեզ խորհելու, հետևություններ անելու առիթ են տալիս: Եվ երբ մեր նախընթաց գործունեությունը գնահատում ենք կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի նոր պահանջների առնչությամբ, ապա պարզորոշ երևան են գալիս մեր գործունեության դրական ու ստվերոտ կողմերը: Ելնելով կուսակցության պահանջից՝ ՀԿԿ Արտաշատի շրջկոմը ձգտում է կատարելագործել իր աշխատանքի ոճը, ճիշտ զուգակցել սոցիալական ու տնտեսական, քաղաքական ու կազմակերպական խնդիրները, աշխատավորներին մոբիլիզացնել հանրային արտադրության հետագա վերելքն ապահովելու, տասնհինգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար: Այդ ամենին հասնելու նպատակով նախ և առաջ հարկավոր է տիրապետել կուսակցական աշխատանքի լենինյան ոճին, հետևողականորեն կիրառել այն:

Կուսակցական ղեկավարման լենինյան ոճը ենթադրում է աշխատանքի հստակ ու համակողմանի պլանավորում: Մենք մշակել և կուսշրջկոմի պլենումում հաստատել ենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման ասպարեզում մեր գործունեության հեռանկարային պլանը, որը մեզ հնարավորություն է ընձեռում գործելու ավելի նպատակային ու արդյունավետ, ուշադրության կենտրոնում պահելու ո՛չ միայն այսօրվա, այլև մոտ ապագայի պրոբլեմներն ու խնդիրները: Հեռանկարային պլանը կազմված է երեք բաժիններից և ընդգրկում է ժողովրդական տնտեսության կուսակցական ղեկավարման, կուսակցական-կազմակերպական և գաղափարադաստիարակչական աշխատանքների հիմնական հարցերը:



Կուսշրջկոմի գործունեության ընթացիկ պլանները հիմնականում բխում են հեռանկարային ծրագրից: Ընդ որում, մենք միշտ նկատի ենք ունենում կոնկրետ ժամանակահատվածի խնդիրների կարևորությունը, տեղերում գործերի իրական վիճակը, դրան անդրադառնալու անհրաժեշտությունը: Այլ խոսքով, հաշվի ենք առնում ՍՄԿԿ պահանջը, տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների գործնական արդյունքները:

Տնտեսավարման բնագավառում կուսշրջկոմը բնավ իր վրա չի վերցնում աշխատանքի ողջ ծանրությունը, չի փոխարինում սովետական և տնտեսական մարմիններին, այլ օգտագործում է նրանց ուժերն այս կամ այն հարցը պատշաճ կերպով լուծելու համար: Որպես կանոն, որևէ բնագավառի հարցերը քննարկելիս, կուսշրջկոմը նախապես գործի նախապատրաստմանը մասնակից է դարձնում նրանց, ովքեր վարում են ու լավ գիտեն իրավիճակը: Կարծում ենք, որ դա բարձրացնում է այդ մարմինների աշխատողների ակտիվությունը, զարգացնում նրանց ստեղծագործական նախաձեռնությունը: Մենք բնավ չենք բավարարվում ընդհանուր արդյունքի գնահատմամբ, այլ պարզում ենք գործերի վիճակը արտադրության յուրաքանչյուր ճյուղում, աշխատանքի յուրաքանչյուր բնագավառում: Չէ՞ որ նույնիսկ առաջավոր, առաջատար տնտեսություններում ու ձեռնարկություններում կարող են լինել և ետ մնացող բնագավառներ, տեղամասեր, որոնց գործունեության բարելավման համար պահանջվում են սևեռուն ուշադրություն, խոր վերլուծություն:

Այս կապակցությամբ կկամենայի հիշատակել Շահումյան գյուղի կոլտնտեսության օրինակը: Իր ծավալով ու նշանակությամբ այն առաջատար տնտեսություն է: Սակայն այստեղ մի կարևոր բնագավառ՝ անասնապահությունը, ետ էր մնում. մեկ կովի կաթնատվությունը 600 կիլոգրամ պակաս էր շրջանի միջին մակարդակի համեմատությամբ: Բարվոք չէր վիճակը նաև խաղողագործության բնագավառում. մշակության աշխատանքները կատարվում էին ցածր որակով, այգիներից քիչ բերք էր ստացվում:

Եվ ահա 1976 թ. փետրվարին կուսշրջկոմի պլենումում, բազմակողմանի նախապատրաստությունից հետո, քննարկեցինք Շահումյանի կոլտնտեսության կուսկազմակերպության բյուրոյի հաշվետվությունը: Այստեղ մեզ հետաքրքրում էր մի կարևոր հանգամանք. ինչպե՞ս է իրականացվում արտադրության կուսակցական ղեկավարությունը: Քննարկումը գործարար բնույթ ստացավ: Պարզվեց, որ կուսկազմակերպությունը, նրա բյուրոն բավարար չափով չեն խորանում հանրային արտադրության հարցերում, դրանց մեծ մասը տևականորեն չի լուծվում, անբավարար են մոբիլիզացվում աշխատավորության ուժերը, ցածր է միջին օղակի ղեկավար անձնակազմի պատասխանատվությունը, թույլ է պահանջկոտությունը նրանց նկատմամբ:

Ես հակված չեմ կարծելու, թե ինչ-որ կարճ ժամանակամիջոցում՝ մի քանի ամսում, նույնիսկ մեկ տարում, հնարավոր է վերացնել բացահայտված բոլոր թերությունները: Դրա համար տևական և հետևողական ջանքեր են հարկավոր: Չէ՞ որ շատ թերություններ խոր արմատներ ունեն, հարկ է լինում նախ և առաջ պարզել դրանց ծնող պատճառները:

Պլենումը կոնկրետ խնդիրներ դրեց կուսկազմակերպության առջև, նրա ուշադրությունը սևեռեց ո՛չ միայն տնտեսական, այլև սոցիալ-կուլտուրական, կազմակերպական-քաղաքական աշխատանքների կոմպլեքսային լուծման վրա: Հանձնարարություններ տրվեցին նաև տնտեսությանն առնչվող բոլոր մարմիններին, առաջին հերթին՝ շրջսովետի գործկոմի գյուղվարչությանը, «Հայգյուղտնտեխնիկա»-ի շրջանային միավորմանը: Շահումյանի կոլտնտեսության կուսկազմակերպության ժողովում պլենումի որոշման քննարկմանը մասնակ-

ցեցին նաև կուսշրջկոմի ապարատի աշխատողները: Կուսժողովը պլենումի որոշման հիման վրա ընդունեց ավելի կոնկրետ, տեղայնացված որոշում՝ միջոցառումների պլանի հետ միասին:

Իհարկե, մենք գործը դրանով ավարտված չհամարեցինք, այսինքն՝ չբավարարվեցինք հարցը պլենումում և կուսակցական ժողովում քննարկելով, այլ օգնեցինք կոլտնտեսության վարչությանն ու կուսկազմակերպությանը՝ ընդունված որոշումը մինչև վերջ կենսագործելու: Մեր օգնությամբ բարելավվեց միջին օղակի ղեկավարների որակական կազմը, բրիգադավարներ և ֆերմաների վարիչներ առաջադրվեցին բարձրագույն կրթությամբ մասնագետներ:

Կուսկազմակերպությունն սկսեց պարբերաբար անդրադառնալ հանրային արտադրության հարցերին, քննարկել արտադրական ճյուղերի ղեկավարների ու մասնագետների հաշվետվությունները, համակողմանի ուսումնասիրել գործերի վիճակը այս կամ այն տեղամասում, ժամանակին նկատել նեղ տեղերը: Անցավ երկու տարի, և ընդհանուր ջանքերը տվեցին լավ պտուղներ. տնտեսությունում կատարվեցին լուրջ տեղաշարժեր, այն բռնեց վերընթացի ուղին, վերակառուցվեցին խաղողի այգիները, բարելավվեց գործերի վիճակը ֆերմաներում, բարձրացան խաղողի բերքատվությունն ու անասունների մթերատվությունը: Կուսկազմակերպությունն այժմ արդյունավետ կերպով է իրականացնում վերահսկողության ֆունկցիան ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ, ճիշտ զուգակցում տնտեսական ու քաղաքական խնդիրները:

Շահումյանի կոլտնտեսության և կուսկազմակերպության գործունեության բարելավման հարցերով զբաղվելիս՝ մենք ղեկավարվում էինք աշխատանքի լենինյան ոճի այն պահանջներով, որ ցանկալի արդյունքի հասնելու համար ամեն ինչում հարկավոր է ցուցաբերել սկզբունքայնություն, հետևողականություն, նպատակին հասնելու հաստատակամություն:

Ղեկավարման այսպիսի ոճի կիրառման արգասաբերության բնորոշ օրինակ է շրջանի էկոնոմիկայի գլխավոր ուղղության՝ գյուղատնտեսության, զարգացման հարցերի լուծման ասպարեզում կուսշրջկոմի ծավալած գործունեությունը: Ելնելով կուսակցության ագրարային քաղաքականության ներկայիս պահանջներից՝ կուսշրջկոմը կենտրոնացնում է շրջանի կուսակցական կազմակերպությունների, սովետական և գյուղատնտեսական մարմինների, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկավարների, մասնագետների և գյուղատնտեսության բնագավառի բոլոր աշխատողների ջանքերը գյուղատնտեսական արտադրության կոմպլեքսային մեքենայացման, մելիորացման ու քիմիացման, աշխատանքի արտադրողականության աճի և արտադրվող մթերքների ինքնարժեքի իջեցման, բուսաբուծության և անասնապահության վարման կուլտուրայի առավել բարձրացման լայն ծրագրի իրականացման վրա: Կուսշրջկոմը մշտապես իր ուշադրության կենտրոնում է պահում բուսաբուծության և անասնապահության արդյունավետության բարձրացման, այդ ճյուղերի որակական ցուցանիշների բարելավման հարցերը:

Հենվելով սկզբնական կուսկազմակերպությունների վրա, բարձրացնելով նրանց մարտունակությունը՝ որպես քաղաքական ղեկավարման օրգանի, մենք ներգործում ենք գյուղի կյանքի և աշխատանքի բոլոր կողմերի վրա, ամեն կերպ ձգտում՝ նպաստել արտադրական կոլեկտիվների կողմից պետական պլանների և ստանձնած պարտավորությունների կատարմանը: Շրջկոմն առանձնահատուկ հետևողականություն է հանդես բերում, որպեսզի շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները արդյունավետ օգտագործեն հողային, ջրային հնարավորությունները, տեխնիկան, պետական ու կոլտնտեսային կապիտալ ներդրումները, ամբողջովին մոբիլիզացնեն ներքին ռեզերվները, յուրաքանչյուր հեկտար հողից հասնեն առավելագույն հատուցման: Հետևելով շրջանի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի համաչափ զարգացմանը, կուսշրջկոմը անհրաժեշտության դեպքում իր ուշադրությունը կենտրոնացնում է ետ մնացող ճյուղերի զարգացման հարցերի վրա, որոնք տվյալ ժամանակահատվածում անհապաղ լուծման կարիք ունեն: Մեր շրջանում այդպիսի վճռորոշ ճյուղ է խաղողագործությունը, որի զարգացումն ապահովելու ծրագրային ուղենիշ հանդի-



սացավ Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի առաջադրած եռամիասնական խնդիրը՝ այգիների մշակության կուլտուրայի բարձրացումը, ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեքսի կիրառումը, այգիների նոսրության վերացումն ու նոր այգիների հիմնումը:

Համագումարի պահանջի իրականացման կոնկրետ առաջադրանքներ ու միջոցառումներ մշակեց կուսշրջկոմի՝ 1976 թ. հունիսի 11-ին տեղի ունեցած պլենումը: Այստեղ ո՛չ միայն նշվեցին խաղողագործության բնագավառում տեղ գտած թերությունները ու սխալները, այլև ըստ առանձին տնտեսությունների առաջադրվեցին առաջիկա և հեռանկարային խնդիրներ՝ նոր այգիների հիմնման, դրանց նոսրության վերացման, այգեգործության տեղաբաշխման ճշտման, օրինակելի այգեգործության ստեղծման վերաբերյալ:

Պլենումի որոշումը հանգամանորեն քննարկվեց բոլոր կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսկազմակերպություններում և դարձավ նրանց համար աշխատանքի ուղեցույց:

Հատկանշական է, որ շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները, ճիշտ ըմբռնելով Հայաստանի կոմկուսակցության պահանջը, արմատապես փոխել են իրենց վերաբերմունքը խաղողագործության զարգացման հարցերի նկատմամբ և խաղողի այգիների վերակառուցման ու խաղողագործության վարման կուլտուրայի բարձրացման հանդեպ ցուցաբերում են մեծ պատասխանատվություն:

Մենք ձգտում ենք բյուրոյում քննարկվող հարցերն առնչել սկզբնական կուսկազմակերպությունների ծավալած կազմակերպական գործունեության և վերադաս կուսակցական մարմինների համապատասխան որոշումների կատարման հետ: Եվ դա, ըստ իս, պիտի դառնա օրինաչափություն, որովհետև արտադրական բնույթի հարցեր կարող է քննարկել նաև շրջսովետի գործկոմը: Քաղցրաշենի և Նշավանի կոլտնտեսություններում խաղողագործության վիճակն ուսումնասիրելիս, մեր առջև խնդիր դրեցինք պարզել այն ո՛չ միայն տնտեսական առումով, այլև թե՝ կուսկազմակերպությունն ինչպե՞ս է զբաղվում այդ ճյուղի զարգացման հարցերով, ինչպիսի՞ աշխատանք է տանում կադրերի հետ, մոբիլիզացնում աշխատավորության ուժերը: Եվ երբ քննարկում էինք «Քաղցրաշենի և Նշավանի կոլտնտեսություններում խաղողագործության վիճակը և կուսկազմակերպությունների խնդիրները», մեզ արդեն իսկ հայտնի էր ողջ պատկերը ո՛չ միայն էկոնոմիկայի, այլև կուսակցական-կազմակերպական աշխատանքի առումով: Քննարկումը լուրջ էր, գործարար: Պարզվեց, որ երկու սկզբնական կուսկազմակերպությունն էլ անբավարար են իրականացնում վերահսկողության ֆունկցիան կոլտնտեսությունների վարչությունների գործունեության նկատմամբ: Նրանք փաստորեն կտրված են արտադրությունից. եթե երբեմն զբաղվում են էկոնոմիկայի հարցերով, ապա՝ հարևանցիորեն, չեն խորանում գործերի էության մեջ, չեն բացահայտում թերությունների պատճառները, դրանց վերացման համար չեն նշում կոնկրետ ուղիներ: Եվ, բնականաբար, կուսշրջկոմն այդ իսկ խնդիրների վրա սևեռեց սկզբնական կուսկազմակերպությունների ուշադրությունը:

Ի՞նչ արվեց: Կուսշրջկոմը հսկողություն սահմանեց ինչպես դրանց կատարման, այնպես էլ խաղողագործության զարգացման, այդ ասպարեզում կուսկազմակերպությունների ծավալած կազմակերպական և քաղաքական-մասսայական աշխատանքի նկատմամբ:

Անցավ որոշ ժամանակ և նկատելի փոփոխություններ կատարվեցին նաև Քաղցրաշենի և Նշավանի կոլտնտեսություններում. բարձրացան այգեգործության վարման կուլտուրան, այգիների բերքատվությունը: Այսպես, 1977 թվականի միջին բերքը Քաղցրաշենում կազմեց 184, Նշավանում՝ 111 ցենտներ:

Ինչպես տեսնում ենք, երկու տնտեսությունների արդյունքները խիստ տարբեր են. Նշավանում թեև բերքատվությունն աճել է, սակայն ձեռք բերած մակարդակը դեռևս չի համապատասխանում տնտեսության ունեցած հնարավորություններին: Եվ մենք Նշավանի հետ մեր անելիքն ավարտված չենք համարում: Անընդհատ զգաստ վիճակում ենք պահում կուսկազմակերպությանը,

նրա ուշադրությունը հրավիրում գլխավոր խնդրի հիմնական օղակի վրա։ Կուսակազմակերպության առջև խնդիր ենք դրել՝ բարձրացնել կոմունիստների, բոլոր կադրերի պատասխանատվությունը, պահանջկոտություն հանդես բերել նրանց նկատմամբ, հասնել այն բանին, որ նրանք հաշվետու լինեն տնտեսության գործերի ընդհանուր վիճակի համար։

Թվարկված և այլ միջոցառումները տվել են ցանկալի արդյունք։ Եվ, եթե հանրագումարի բերենք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջադրած եռամիասնական խնդրի իրականացման նպատակով շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում կատարված աշխատանքը, ապա հետևյալ պատկերը կունենանք. 1975—1977 թթ. շրջանում տնկվել է 1.176 հեկտար խաղողի նոր այգի, անցած տարի ավարտվեց 3.600 հեկտար հին, թմբային, կենսունակությունը կորցրած այգիների վերակառուցումը, մնում է վերակառուցել ընդամենը 402 հեկտար։ Ներկայումս շրջանում խաղողի այգիների ընդհանուր տարածությունը 3.975 հեկտար է, որից բերքատու է 2.704 հեկտարը։ Միայն 1977 թ. խաղողի այգիների նոսրության վերացման աշխատանքներ կատարվեցին 900 հեկտարի վրա, և այսօր շրջանում այգիների լիարժեքությունը կազմում է 88,6 տոկոս։

Նոր այգիների հիմնումը հնարավորություն տվեց 1.800 հեկտարի վրա իրականացնել մշակության կոմպլեքսային մեքենայացում, բարձրացնել այգեգործության վարման կուլտուրան, նվազեցնել արտադրանքի մեկ միավորի համար կատարվող ծախսերը, խիստ կրճատել ձեռքի ծանր աշխատանքը և մեքենայացման աստիճանը խաղողագործության մեջ շրջանում հասցնել 68,5 տոկոսի։ Այդ ամենը նպաստել է այգիների բերքատվության բարձրացմանն ու խաղողի համախառն բերքի զգալի ավելացմանը. 1977 թ. պլանով նախատեսված 36.300 տոննայի փոխարեն, շրջանը պետությանը վաճառեց 41.560 տոննա խաղող, որն զգալիորեն գերազանցում է 1976 թ. մակարդակը։ Առանձին տնտեսություններում (Այգեզարդ, Վ. Արտաշատ, Քաղցրաշեն, Ն. Դվին, Այգեպատ, Մրգանուշ, Շահումյան, Ոստան) միջին բերքատվությունը կազմեց 150—198 ցենտներ։ Այս թվերն ինքնին խաղողագործության բնագավառում կատարված բարեփոխումների վկայությունն են և շրջանի գյուղատնտեսության կարևորագույն ճյուղի հետագա վերելքի երաշխիքը։

Էկոնոմիկայի կուսակցական ղեկավարման հարցերի կոմպլեքսային լուծման նկատմամբ գիտական մոտեցման շնորհիվ շրջանում հաջողությամբ ապահովվում է նաև գյուղատնտեսության մյուս ճյուղերի և ժողովրդական տնտեսության հիմնական բնագավառների՝ արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, սպասարկման ոլորտի առաջընթացը։

Առաջադրված խնդիրների լուծման նպատակով կուսակցության շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպություններն իրենց ուշադրության կենտրոնում են պահում արտադրության կազմակերպման ու կառավարման մեթոդների բարելավման հարցերը։ Կուսշրջկոմը հետևում է տնտեսագիտական գիտելիքներով կադրերի զինմանը, արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման տեսանկյունից վերլուծում տնտեսությունների ու ձեռնարկությունների գործունեությունը, աջակցում նրանց ղեկավարությանը՝ ճիշտ կիրառելու նյութական ու բարոյական խթանները, զարգացնում արտադրական կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի ստեղծագործական ակտիվությունը, կազմակերպում պայքարը նյութական ու աշխատանքային ռեսուրսների խնայողության համար։

Մենք սահմանել ենք այսպիսի կարգ. որևէ հարց ուսումնասիրելիս կամ քննարկելիս՝ շեշտը դնում ենք ո՛չ միայն տեղ գտած թերությունների վերացման, որոշակի ժամանակահատվածում գործերի վիճակի բարելավման, այլև եղած ռեզերվներն ու հնարավորությունները լիովին բացահայտելու և ինչպես հարկն է գործադրելու վրա։ Չէ՞ որ հակառակ պարագայում մենք կարող ենք շտկել սխալը, վերացնել թերությունը, բայց առանց ռեզերվները հաշվի առնելու չենք կարող ամուր բազա ստեղծել հետագա առաջընթացի համար։ Այս առնչությամբ նշեմ մեկ օրինակ։ Պահածոների գործարանը տարիներ շարունակ չէր



կարողանում ընդունել կոլտնտեսություններից ու սովխոզներից ստացվելիք բանջարեղենի օրվա հումքը. օրվա մուտքը 450—500 տոննայից չէր գերազանցում։ Դա անհանգստացնում էր մեզ. բանջարեղենի իրացումը վտանգի տակ էր։ Եվ երբ քննարկում էինք բանջարեղենի բերքահավաքի նախապատրաստման հարցը, նկատի ունեցանք նաև գործարանում եղած, բայց դեռևս չօգտագործած ռեզերվները։ Մեր առջև խնդիր դրեցինք վերացնել արտադրության և վերամշակման կարողությունների միջև եղած անհամապատասխանությունը, ավելացնելով արտադրության ծավալը, միաժամանակ լուծել իրացման հարցը։ Այնուհետև գործարանի կուսկազմակերպության դռնբաց ժողովում քննարկեցինք արտադրության նոր ռեզերվների և հնարավորությունների օգտագործման խնդիրը։ Քննարկմանը մասնակցեցին նաև անկուսակցական մասնագետները, առաջատար մասնագիտությունների բանվորները։

Հաջորդ փուլն արդեն առնչվում էր սննդի արդյունաբերության մինիստրության հետ, և մենք մեր առաջարկություններով ու նկատառումներով եղանք այնտեղ։ Ձեռնարկվեցին գործնական միջոցներ. մեծացվեց գործարանի հզորությունը, լուծվեցին տեխնիկական ջրի, էլեկտրամատակարարման, ապա և՝ շոգու հարցերը։ Արտադրամասերի ընդլայնման շնորհիվ, առանց լրացուցիչ տեխնիկական միջոցների ներդրման, արդեն հնարավոր է օրական վերամշակել 600—650 տոննա բանջարեղեն։

Կուսշրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները կիրառում են վերահսկողության և կատարման ստուգման բազմազան ձևեր։ Դա բխում է աշխատանքի լենինյան ոճի պահանջներից։

Կատարման հսկողությունն ու ստուգումը կուսշրջկոմին հնարավորություն են ընձեռում արդյունավետ ներազդելու կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության հետևողական կենսագործման վրա, բարձրացնելու կազմակերպական-կուսակցական և գաղափարական ողջ գործունեության մակարդակը, բարձր պահանջկոտության ոգով դաստիարակելու կադրերին, կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին։

Շրջկոմի աշխատանքի կարևոր տեղամասերից է կուսկազմակերպությունների քարտուղարների ուսուցման կազմակերպումը. սիստեմատիկաբար նրանց համար անցկացնում ենք սեմինարներ կուսակցական շինարարության և տնտեսության ղեկավարման հարցերի վերաբերյալ։

Կուսշրջկոմն իր գործունեության հաջողության կարևոր գրավականն է համարում նաև տնտեսական կադրերի ճիշտ ընտրությունը, տեղաբաշխումը և դաստիարակությունը, որն աշխատանքի լենինյան ոճի գլխավոր պահանջներից է։ Ընդ որում, կադրային հարցերը լուծելիս՝ ամենայն խստապահանջությամբ հաշվի ենք առնում աշխատողների քաղաքական, գործարար ու բարոյական հատկանիշների ողջ կոմպլեքսը, առաջնահերթ նշանակություն տալիս ղեկավար աշխատողի՝ որպես կազմակերպչի ու դաստիարակի, գաղափարաքաղաքական ու բարոյական հատկություններին և հմտություններին։

Մենք մշտապես հաշվի ենք առնում կուսակցության XXV համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ կադրային քաղաքականությունը մի հզոր լծակ է, որի միջոցով կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա։ «Ժամանակակից ղեկավարը,— ասված է հաշվետու զեկուցման մեջ,— պետք է իր մեջ կուսակցականությունն օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Միաժամանակ ղեկավարը պարտավոր է ցանկացած տեղամասում հաշվի առնել նաև սոցիալ-քաղաքական, դաստիարակչական կողմերը, զգայուն լինի մարդկանց նկատմամբ, նրանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օրինակ ծառայի աշխատանքում և կենցաղում (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 105)։

Ղեկավարվելով կուսակցության այս պահանջներով, կուսշրջկոմը հանդես է բերում սկզբունքայնություն կադրերի ընտրության, նրանց առաջքաշման ու

դաստիարակության ասպարեզում, որի շնորհիվ շրջանի կոլտնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավար աշխատանքներում առաջադրվում են բանիմաց, կատարողական բարձր կարգապահությամբ օժտված գաղափարապես հասուն անձինք։ Վերցնենք թեկուզ գյուղատնտեսության բնագավառը։ Ներկայումս շրջանի կոլտնտեսությունների վարչությունների նախագահների և սովխոզների դիրեկտորների 83 տոկոսն ունի բարձրագույն մասնագիտական կրթություն, հանրային արտադրությունում իրենց տեսական ու գործնական գիտելիքներն են ներդնում ավելի քան 120 բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթությամբ գյուղատնտեսներ, անասնաբույժներ, անասնաբույժներ, ինժեներներ և այլ մասնագետներ։

Մի ժամանակ գյուղատնտեսության միջին օղակի ղեկավար անձնակազմի մի զգալի մասն ուներ ոչ-մասնագիտական կրթություն։ Հարկ եղավ զբաղվել այդ հարցով։ Կուսշրջկոմը հոգ տարավ հատկապես միջին ղեկավար անձնակազմը բանիմաց, քաղաքական ու գործնական լավագույն հատկանիշներով օժտված մասնագետներով համալրելու մասին։ Կուսշրջկոմը մշակել է միջին օղակի ղեկավար անձնակազմը գյուղատնտեսության մասնագետներով համալրելու հեռանկարային պլան։ Նախատեսվում է շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում բրիգադավարների կազմում գյուղատնտեսության բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն ունեցող կադրերի թիվը մինչև 1980 թվականը հասցնել 77,5, ֆերմայի վարիչներինը՝ 92,2 տոկոսի, ներկայիս, համապատասխանաբար՝ 51,7 և 71,6 տոկոսի փոխարեն։

Միայն լենինյան կադրային քաղաքականության անշեղ իրագործումը և աշխատողների գիտակցականության ու պատասխանատվության վրա խարսխված կարգապահության բարձրացումը մեզ հնարավորություն կընձեռեն լուծելու այն բարդ ու պատասխանատու խնդիրները, որ ծառացած են մեր առջև։

ՀԿԿ Արտաշատի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, իրենց գործունեության բոլոր բնագավառներում արմատավորելով կուսակցական աշխատանքի լենինյան ոճի սկզբունքները, անշեղորեն կենսագործում են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրները։

---

# ԿԱՌՈՒՑՎՈՒՄ Է ԵՐԵՎԱՆԻ ՄԵՏՐՈՆ

**Ի. Գ. ՊԱՊԻԵՎ**
**Երևանի մետրոպոլիտենի դիրեկտոր**

ԺԱՄԱՆԱԿՆ ՍՏԻՊՈՒՄ է վերագնահատել, վերանայել շատ արժույթներ ու երևույթներ, իրեն ևս ենթարկելով ընդհանուր այդ օրինաչափությանը։ Եթե արտահայտվենք այժմյան արտադրական տերմինոլոգիայով, ապա կարելի է ասել՝ ժամանակը մեր օրերում գործում է անսովոր չափերով խտացված գրաֆիկով։ Դրա արժեքը փոխվում է յուրաքանչյուր տարի, նույնիսկ յուրաքանչյուր օր։ Եվ շատ բան կախված է նրանից, թե հասարակական որ ֆորմացիան է գործի դնում պատմության ժամացույցը։

Մեր մայրաքաղաքը գոյություն ունի արդեն 2760 տարի։ Այն, ինչ կատարվել է այստեղ վերջին վեց տասնամյակում, ոչ մի կերպ չի կարող համեմատվել այն ողջ կատարվածի հետ, ինչ արվել է դրան նախորդած 2700 տարում։ Ավագ սերնդի մարդիկ լավ են հիշում նախասովետական Երևանը՝ նեղլիկ փողոցներով, հողաշեն տնակներով, տիպիկ ասիական կենցաղով այդ քաղաքը, որի բնակչությունը հազիվ 37 հազարի էր հասնում։ Երևանն այն ժամանակ զբաղեցնում էր 332 հեկտար տարածություն։ Նրա արդյունաբերական ողջ պոտենցիալը բաղկացած էր մի քանի տնայնագործական ձեռնարկություններից, որոնցում աշխատում էր 540 մարդ։ Այդ ամենն իրոք պայմանավորում էր քաղաքային տրանսպորտի տեսակներն ու մասշտաբները։ Տարածված էր առավելապես ֆայտոնը, գործում էր և այն ժամանակների համար տարողունակ տրանսպորտի տեսակը՝ ձիաքարշը, որը երթևեկում էր միայն Աստաֆյան (այժմ Աբովյան) փողոցով։




Վիճակագրական մի քանի տվյալ՝ այսօրվա Երևանից. քաղաքն այժմ զբաղեցնում է 22.168 հեկտար տարածություն, բնակչությունը հասնում է մեկ միլիոնի։ Այստեղ գործում են հարյուրավոր ժամանակակից արդյունաբերական ձեռնարկություններ, բանվորների ու ծառայողների թիվը հասնում է 445 հազարի։ Կոմունալ տրանսպորտի այն հիմնական տեսակները, որ ունեն արդյունաբերական խոշոր կենտրոնները, այսօր դրված են նաև երևանցիների տրամադրության տակ։ Ամեն օր եր-

թուղի են ելնում հարյուրավոր տրամվայներ, ավտոբուսներ, տրոլեյբուսներ...

Բայց քաղաքն աճում է օր-օրի և դրան համապատասխան իր պահանջներն է թելադրում տրանսպորտին, որը, չնայած զարգացման աննախընթաց տեմպերին, արդեն դժվարությամբ է իրագործում իր առջև ծառացած խնդիրները։ Այդ տենդենցը նկատելի է հատկապես վերջին տարիներին, երբ բնակչության աճի և մայրաքաղաքի տարածքային ընդարձակման հետևանքով ավելի է սրվել տրանսպորտային պրոբլեմը։ Ծագած դժվարությունները հաղթահարելու համար, իհարկե, միջոցներ են ձեռնարկվում, մասնավորապես մեծացվում է մայրուղիների տրանսպորտային թողունակությունը։ Չնայած դրան, դեռ չի լուծվել մայրաքաղաքի որոշ շրջանների, հատկապես նրա հարավային ու հյուսիսային մասերի միջև տրանսպորտային անխափան կապի ապահովման խնդիրը։

Տրանսպորտային զարկերակների աճող ծանրաբեռնվածության իմաստով բավական բնորոշ է Բարեկամության փողոցի օրինակը։ Այդ փողոցը, ինչպես ցույց են տալիս հետազոտությունները, երթևեկության այժմյան ինտենսիվությամբ մի քանի անգամ գերազանցում է սահմանված նորմաները։ Քաղաքի այդ մասի յուրահատուկ ռելիեֆի պատճառով խիստ մեծ դժվարությունների հետ է կապված զուգահեռ փողոցի անցկացումը, իսկ շրջանցող մայրուղիները էական ներգործություն չեն կարող ունենալ դրա տրանսպորտային ինտենսիվության վրա։

Մայրաքաղաքում ավտոմեքենաների քանակի հետագա աճի մասին կանխատեսումները, ինչպես և քաղաքային տրանսպորտի ցանցի ընդլայնումը աներկբայորեն ցույց են տալիս, որ առաջիկա տարիներին համանման վիճակ կստեղծվի նաև Երևանի կենտրոնի մյուս մայրուղիներում։

Հարցի լուծման մի միջոց էր մնում միայն՝ ռելսային էլեկտրատրանսպորտը «թաքցնել» գետնի տակ։ Ըստ էության, դրանից էլ իր սկիզբն է առնում Երևանում ստորգետնյա արագընթաց տրանսպորտի կառուցման պատմությունը։

Դեռ 1969 թվականին, ՍՍՀՄ պետպլանի ցուցումով, հենց իր՝ պետպլանի տրանսպորտի կոմպլեքսային պրոբլեմների ինստիտուտին ներկայացվեցին Երևանի մարդատար տրանսպորտի զարգացման կոմպլեքսային սխեման և արագընթաց տրանսպորտի նպատակահարմարության տեխնիկատնտեսական հիմնավորումը։ Ինստիտուտը հավանություն տվեց ներկայացված փաստաթղթերին, իսկ պետպլանը դրա հիման վրա հնարավոր համարեց Երևանի զարգացման գլխավոր պլանում նախատեսել (բայց միայն հեռանկարում) ստորգետնյա արագընթաց ռելսային տրանսպորտի կառուցումը։ Ինչ վերաբերում է կոնկրետ տվյալ փուլին, ապա պետպլանը համաձայնեց, որ արդեն այն ժամանակ սկսվի քաղաքի կենտրոնական մասի՝ Կոմիտասի փողոցը պետկրկեսի շրջակայքի, ավելի ստույգ՝ 26 կոմիսարների անվան փողոցի հետ կապող թունելի շինարարությունը։ Որոշվեց վերջինս կառուցել այն հաշվով, որ ունենա մետրոպոլիտենի թունելին հավասար տրամագիծ։ Դրանով պետք է երթևեկեին Կոմիտասի, Կիևյան, Բարեկամության փողոցներով, ինչպես և Հոկտեմբերյան ու Օրջոնիկիձեի պողոտաներով անցնող երթուղիների տրամվայները։ Դա հնարավորություն կտար նկատելիորեն թեթևացնելու քաղաքի կենտրոնի փողոցային ցանցը մասսայական կոմունալ տրանսպորտից։

1972 թվականին սկսվեց և հաջորդ բոլոր տարիներին հաջողությամբ իրագործվում էր ստորգետնյա արագընթաց տրանսպորտի կառուցման աշխատանքը։ Բայց քաղաքի մարդատար տրանսպորտի կոմպլեքսային զարգացման սխեմայի հաստատումից հետո անցած ժամանակաշրջանը ցույց տվեց, որ բնակչության տրանսպորտային շարժը շատ ավելի արագ է աճում, քան այդ ենթադրում էին կանխատեսումները։ Եվ, իրոք, խորացավ անհամամասնությունը տրանսպորտի քաղաքային ցանցի տեղաշարժության ծավալների և թողունակության հնարավորությունների միջև։ Դա նկատելի է հատկապես ուղևորների հուսալի փոխադրման իմաստով կարևոր նշանակություն ունեցող այնպիսի ուղղություններում, ինչպիսին է քաղաքի հարավային շրջանը, որտեղ հիմնականում կենտրոնացված են արդյունաբերական ձեռնարկությունները։



Ելնելով այդ ամենից, ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության կառավարությունը հանձնարարեցին «Հայտրանսնախագիծ» ինստիտուտին՝ մետրոպոլիտենի տարբերակով մշակել կառուցվող ստորգետնյա արագընթաց տրանսպորտի գիծը մինչև քաղաքի հարավային արդյունաբերական շրջանը հասցնելու տեխնիկատնտեսական հիմնավորումը։ Առաջադրանքը կատարվելուց հետո հարցը քննարկվեց նախ ՍՍՀՄ պետպլանում և պետշինում, իսկ այնուհետև ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը համապատասխան որոշում ընդունեց։ Պետք է խորին երախտագիտությամբ նշել, որ միութենական մարմինները մեծագույն ըմբռնողությամբ էին վերաբերվում Երևանի համար կենսականորեն կարևոր այդ հարցին և ամեն կերպ աջակցեցին դրա լուծմանը։

Խնդրի կարևորությունն ամփոփ ձևով այսպես արտահայտեց ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Կ. Դեմիրճյանը անցյալ տարվա հոկտեմբերի 20-ին տեղի ունեցած հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում. «Հիանալի նվեր ստացան հանրապետության մայրաքաղաքի աշխատավորները։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ կառավարությունը որոշում ընդունեցին «Երևան քաղաքում մետրոպոլիտեն կառուցելու մասին»։ Այդ որոշմամբ հնարավորություն է ընձեռվում արագընթաց տրամվայի համար ստեղծված կառուցվածքների բազայի վրա կարճ ժամանակամիջոցում գործարկելու մետրոյի առաջին հերթը և Երևանում կառուցելու ժամանակակից մետրոպոլիտեն՝ իր բոլոր հարմարություններով և հետագա զարգացման մեծ հեռանկարներով»։

Երևանի մետրոն, այսպիսով, մեծ կառույցի ուղեգիր ստացավ։ Նրա առաջին հերթը՝ 11,3 կիլոմետր երկարությամբ, սկսվում է Բարեկամության ու Քոչարի փողոցների անկյունից և, հատելով ողջ քաղաքը, ավարտվում Հայէլեկտրագործարանի մոտ։ Տրասսան, ինչպես այդ երևում է սխեմայից, անցնելով Բարեկամության, Կիրովի, Աբովյան փողոցներով, Լենինի հրապարակով, Նոր հանրախանութի, երկաթուղային կայարանի մոտով, ընդհուպ կմոտենա կաբելի գործարանին և, հատելով Օրջոնիկիձեի պողոտան, կանցնի ավտոնորոգման գործարանի կողքով և դուրս կգա Հայէլեկտրագործարան։

Մետրոպոլիտենի առաջին հերթը կունենա ինը կայարան։ Դրանցից «Ուսանողական-թատերականը» և «Հոկտեմբերյանը», որ աչքի են ընկնում իրենց հանգուցային դիրքով, ունենալու են երկուական ելք։ «Ուսանողական-թատերականը» իր մի ելքով դուրս կգա Իսահակյան փողոց (որտեղ Ավ. Իսահակյանի հուշարձանն է), իսկ մյուսով՝ Աբովյան և Սայաթ-Նովա փողոցների անկյունը։ «Հոկտեմբերյան» կայարանը մեկ ելք կունենա Նոր հանրախանութի մոտ, մյուսը՝ պետկրկեսի։ (Դատելով ստացվող նամակներից, երևանցիներին շատ են մտահոգում կայարանների անունները։ Ուստի անհրաժեշտ ենք համարում նշել, որ այդ անուններն առայժմ զուտ պայմանական են։ Ամենայն հավանականությամբ մոտ ժամանակներս իրավասու մարմինները վերջնականապես կճշտեն կայարանների անունները և այդ առթիվ կընդունեն համապատասխան որոշում)։

Տրասսայի մի հատվածը, ինչպես այդ մասին հավանաբար արդեն գիտեն ընթերցողները, կառուցվում է վերերկրյա տարբերակով։ Ալրաղաց կոմբինատի մոտակայքում գնացքները դուրս կգան գետնի երեսը և երկաթուղային կայարանի մոտով, արդյունաբերական ձեռնարկությունների միջով կհասնեն մինչև Օրջոնիկիձեի պողոտա, որից հետո տրասսան մինչև վերջնակետը կշարունակվի արդեն գետնի տակով։

Մի քանի խոսք շինարարության ընթացքի մասին։ Ստորգետնյա հատվածի կառուցումն սկսվեց 1972 թվականին և այսօրվա վիճակով արդեն բավական մեծ գործ է արված։ Եվս 400 գծամետր՝ ու Կիևյան կայարանից մինչև Լենինի հրապարակ ձգվող թունելը լրիվ պատրաստ կլինի։ Սկսվել է հրապարակից դեպի «Ռոսիա» կինոթատրոն տանող թունելի շինարարությունը։ Երկու կողմերից թունելագործներն արդեն անցել են ավելի քան 460 մետր։

Արագ թափով է տարվում նաև ստորգետնյա հինգ կայարանների, շարժասանդուղքների (էսկալատորների), թեք թունելների և մյուս օբյեկտների կառուցապատումը։ Կայարաններից յուրաքանչյուրն իր ծավալով լիովին տեղավորում

է մետրոպոլիտենի հինգ վագոնները։ Երևանի մետրոյում երթևեկելու են «E» տիպի այն նույն վագոնները, ինչ Մոսկվայում, բայց փոքր-ինչ բարելավված տարբերակով։

Երկրաբանական դժվարին պայմաններում են աշխատում Երևանի մետրոշինարարները։ Հաճախակի փոփոխվող այդ պայմաններն ամեն անգամ նոր լուծումներ են պահանջում։

Ամբողջ տրասսայում դժվար է նշել թեկուզ և 50 մետր երկարությամբ մի հատված, որտեղ ապարը համասեռ լինի։ Այն անընդհատ փոխվում է ոչ միայն ըստ տեսակների, այլև հաճախ այդ տեսակները միահյուսվում են իրար՝ բազալտը տուֆի հետ, տուֆը՝ գլաքարի, վերջինս՝ մանրախճի և այլն։ Այդ ամենն ստիպում է հաճախակի փոփոխել մշակության մեթոդները, մեխանիզմները, երեսպատման միջոցները։

Աշխատանքի նորմալ ընթացքին շատ է խանգարում հատկապես ջրի առատությունը։ Տեղ-տեղ դրա մակարդակը բավական բարձր է, իսկ հոսքը ժամում կազմում է 300 խոր. մետր։ Այդ պայմաններում սովորական շինանյութերով թունելների երեսպատումը չէր կարող ցանկալի արդյունք տալ, ուստի և օգտագործվում են չուգունե տյուբինգներ, հավաքովի ու միաձույլ երկաթբետոն։ «Հայթունելշինի» և «Արփա—Սևանշինի» վարչությունները, որոնք կառուցում են Երևանի մետրոն, նախագծողների հետ մեկտեղ լուծում ու հաղթահարում են ինժեներատեխնիկական բնույթի շատ հարցեր ու դժվարություններ։

Թունելները երկաթբետոնե բլոկներով երեսպատելու պրոցեսում մեր մասնագետները եկան այն եզրակացության, որ շատ ավելի նպատակահարմար է երկու ստորին բլոկները փոխարինել մեկ հարթ նավդանով (ЛОТОК)։ Այդ առաջարկը ներդրվեց և դրա շնորհիվ յուրաքանչյուր կիլոմետրի հաշվով տնտեսվեց շուրջ 150 հազար ռուբլի։ Շինարարության ջրառատ տեղամասերում, ուր թունելները երեսպատվում են չուգունե տյուբինգներով, մենք տեղ-տեղ դրանց փոխարեն սկսեցինք օգտագործել մետաղամեկուսացված երկաթբետոնե բլոկներ։ Դրա շնորհիվ տնտեսվում է շուրջ 10 հազար տոննա տյուբինգ։ Այս երկու նորույթները սովետական մետրոշինության պրակտիկայում առաջին անգամ են կիրառվում։

Լուրջ խնդիր է և վերերկրյա նախասրահների ու ստորգետնյա կայարանների ճարտարապետական ձևավորումը, որն իրականացնում է «Երևաննախագիծը»։ Այդ գործում ներգրավվել են հանրապետության առաջատար ճարտարապետները՝ Ջ. Թորոսյանը, Ս. Կնտեխցյանը, Ֆ. Դարբինյանը, Ս. Քյուրքչյանը, Լ. Սադոյանը, Բ. Արզումանյանը, Հ. Ղուկասյանը, Ռ. Ջուլհակյանը և Լ. Գևորգյանը։ Նրանք ձգտում են այնպես անել, որ կայարանները հարմարավետ լինեն, որ մարդը հեշտությամբ հաղթահարի գետնի տակ լինելու ճնշող զգացումը, որ յուրաքանչյուր շինություն աչքի ընկնի իր ճարտարապետական առանձնահատկություններով։

Մեր կայարանները թվով առայժմ շատ չեն, բայց իրենց կոնստրուկցիայով բավական բազմազան են։ Այսպես, «Կիևյան», «Բարեկամություն» և «Լենինի հրապարակ» կայարանները կլինեն սյունատիպ, «Ուսանողական-թատերականը» և «Հոկտեմբերյանը»՝ հենասյունային, իսկ «Հայէլեկտրագործարանը», այսպես կոչված, միափեղկ սիստեմի։

Ստորգետնյա կայարանների երեսպատման համար հիմնականում օգտագործվում են տեղական գրանիտն ու մարմարը, բայց երանգների բազմազանության նպատակով գործածվում է նաև եղբայրական մի շարք հանրապետություններից՝ ՌՍՖՍՀ-ից, Ուկրաինայից, Ուզբեկստանից, Վրաստանից և այլ տեղերից բերվող մարմարը։ Վերերկրյա նախասրահների ձևավորման պահանջներին լիովին համապատասխանում են մեր տուֆն ու ֆելզիտը։

Երևանի մետրոպոլիտենն իր կառույցներով անշուշտ կհարստացնի մայրաքաղաքի ընդհանուր տեսքը։ Դրանցից մեկը վեր կխոյանա Բարեկամության և Քոչարի փողոցների անկյունում. 14 հարկանի այդ ինքնատիպ ու գեղեցիկ շենքը, որ նախագծվում է ճարտարապետ Ֆ. Դարբինյանի ղեկավարությամբ, կտրամադրվի մետրոպոլիտենի վարչությանն ու նրա կապի ծառայությանը։



Այստեղ տեղակայվելու են ամենաբազմապիսի ապարատներ, ավտոմատիկա, հեռուստամեխանիկա, մետրոպոլիտենի կառավարման բոլոր լծակները։

Երևանցիներին, անշուշտ, հետաքրքրում է մետրոյի զարգացման հեռանկարը։ Պետք է ասել, որ առայժմ վերջնականապես ճշտված չեն հետագա ուղիները, բայց դրանք մոտավորապես այսպիսին կլինեն. «Կիևյան» կայարանից տրասսան կհատի Հրազդանի կիրճը և դուրս կգա Շահումյանի շրջան։ Նույն կայարանից մետրոյի գիծը կշարունակվի Կոմիտասի փողոցով, կանցնի ալյումինի գործարանի մոտով և դուրս կգա էլեկտրալամպերի գործարանի շրջակայքը, իսկ այդտեղից էլ՝ Զեյթունով ղեպի Նորքի զանգված։ Ենթադրվում է նաև, որ «Ուսանողական-թատերական» կայարանից մետրոյի մի ճյուղը կհասնի Աղի հանքի շրջանում կառուցապատվող բնակելի նոր զանգվածը, իսկ այնտեղից էլ՝ Նորքի զանգված։

Մետրոպոլիտենի բարդ համալիրի կարևոր օբյեկտներից է նրա վագոնային դեպոն, որը կառուցվում է Հայէլեկտրագործարանի մոտ։ Դա ինքնին մի խոշոր շինություն է, որը կզբաղեցնի 24 հեկտար տարածություն։ Այստեղ կկատարվեն շարժական կազմի բոլոր կարգի նորոգումները, կկոմպլեկտավորվեն գնացքները։ Թունելի շինարարների համար մեծ օգնություն է երկու արտադրական բազաների կառուցումը, որոնց նախագծային արժեքը ավելի քան երեք միլիոն ռուբլի է։ Դրանցից մեկը, որ Աղի հանքի մոտ է գտնվում, արդեն պատրաստ է, իսկ մյուսը՝ հիմնականը, կառուցվում է Սովետաշենի մոտ և կգործարկվի եկող տարի։

Մետրոյի շինարարությանն առնչվում են տասնյակ կազմակերպություններ ու ձեռնարկություններ և ուրախությամբ պետք է նշել, որ դրանք գործի կարևորության ըմբռնմամբ են վերաբերվում տրված հանձնարարություններին։ Բավարարվենք միայն մի օրինակով։ Ինչպես արդեն նշվեց, շինարարության պրոցեսում օգտագործվում է զգալի քանակությամբ չուգունե տյուբինգ։ Այն, սահմանափակ քանակությամբ, մենք ստանում էինք Լենինգրադից։ Խնդիր դրվեց դրա արտադրությունը կազմակերպել տեղում, և այդ գործը հանձնարարվեց Չարենցավանի «Ցենտրոլիտին»։ Ձեռնարկության կոլեկտիվը, մեծ պատասխանատվություն ցուցաբերելով, կարճ ժամանակամիջոցում կարողացավ յուրացնել տյուբինգների արտադրությունը և արդեն ընթացիկ տարում մետրոշինարարներին տվեց շուրջ 1.000 տոննա տյուբինգ։

Մեր հանրապետությունում առաջին անգամ է մետրո կառուցվում, սակայն փորձի պակասը լուրջ խոչընդոտ չդարձավ շինարարների համար։ Միության մետրոշինարարների հարուստ փորձը և նրանց օգնությունը նպաստեցին, որ մեզ մոտ համեմատաբար կարճ ժամանակամիջոցում ստեղծվի բոլորովին նոր մասնագիտությամբ մի նոր կոլեկտիվ՝ մետրոշինարարների կոլեկտիվը։ Մի քանի հարյուր մարդուց է բաղկացած այն։ Կարելի է առանց տարակուսելու ասել, որ դրանք իրենց մասնագիտություններին կատարելապես տիրապետող մարդիկ են։ Նրանք գիտեն, թե ինչ են կառուցում և իրենց գործին վերաբերվում են մեծ պատասխանատվությամբ։ Ինչպես շինարարական, այնպես էլ մոնտաժային աշխատանքների որակն այս կոլեկտիվում ընդհանուր հոգածության հարց է, իսկ դա լավագույն երաշխիքն է այն բանի, որ երևանյան մետրոն կկառուցվի որակով։

Աշխատանքի տեմպերից ևս դժգոհելու հիմքեր չկան։ Շինարարները սիստեմատիկաբար գերակատարում են պլանները, իրացնում հատկացված միջոցները։ Ընթացիկ տարվա կապիտալ ներդրումների ընդհանուր պլանը 7 միլիոն 800 հազար ռուբլի է։ Ինն ամսում իրացվել էր արդեն 6 միլիոն 400 հազարը, իսկ դա նշանակում է, որ պլանը կատարվել է շուրջ 112 տոկոսով։

Կառույցում լավ են աշխատում բոլորը։ Մայրաքաղաքում մետրո ունենալու բուն գաղափարը ոգեկոչել, շինարարություն է բերել բազմաթիվ իսկական հայրենասերների, որոնց կամքով շունչ ու մարմին է առնում Երևանի այս ունիկալ կառույցը։ Ինչպես ընդունված է ասել, լավերի մեջ կան լավագույնները, և ես կցանկանայի նշել նրանցից մի քանիսի անունները։ «Բարեկամություն» կայարանի տեղամասում, որի ղեկավարն է մետրոշինի ճանաչված մարդկանցից մե-

կը՝ Գագիկ Մարտիրոսյանը, հիանալի շատ աշխատողներ կան։ Բարձր արտա-
դրողականությամբ ու աշխատանքի որակով աչքի են ընկնում հատկապես
բրիգադիր Ռազմիկ Հարությունյանը և նրա բրիգադի անդամներ Սարգիս Էլիզ-
բարյանը, Աքպեր Աքպերովը, Նիկոլայ Զոբանյանը, Անդրանիկ Անդրեասյանը,
Վոլոդյա Սուքիասյանը և Նորիկ Մանուկյանը։ Արժե, որ մետրոշինի պատմու-
թյան մեջ գրանցվեն «Կիևյան» կայարանի տեղամասի կառուցողների անուն-
ները։ Տեղամասի պետ Ռաֆիկ Ստեփանյանի ղեկավարությամբ այստեղ աշխա-
տում են «Արփա—Սևանշինի» ինտերնացիոնալ կոլեկտիվի ներկայացուցիչնե-
րը՝ բրիգադիրներ Իվան Մարկինն ու Սաշիկ Սահակյանը, հորատանցողներ
Ալեքսանդր Գրիգորևը, Վախթանգ Գրիգորյանը, Էդիկ Բաբայանը և ուրիշներ։
Եվ, այնուամենայնիվ, մետրոշինը դեռ բանվորական ուժի, հատկապես
հորատանցողների մեծ պահանջ ունի։ Հայաստանի կոմերիտմիությունը այս
շինարարությունը հայտարարել է հարվածային կառույց և ստանձնել նրա շե-
ֆությունը։ Մետրոշինարարները մեծ հույսով սպասում են, որ այդ լավ նախա-
ձեռնությունը նույնքան լավ շարունակություն կունենա, և իրենք արժանի հա-
մալրում կստանան։
Վերջերս ընդունված իր որոշմամբ Երևանի քաղաքային կոմիտեն քաղաքի
կուսշրջկոմներին պարտավորեցրեց սիստեմատիկաբար զբաղվել մետրոյի շի-
նարարության համար բանվորական ուժի մոբիլիզացման հարցով։ Մենք հա-
մոզված ենք, որ քաղկոմի այս որոշման կենսագործումը էապես կնպաստի մետ-
րոշինարարների կոլեկտիվի նոր համալրմանը։
Ինչպես մեր հանրապետության բոլոր խոշոր կառույցները, Երևանի մետ-
րոն ևս կառուցվում է եղբայրական հանրապետությունների ամենագործուն
աջակցությամբ։ Եվ, ինչպես միշտ, այստեղ ևս առաջատար դերը պատկանում է
Ռուսաստանյան Ֆեդերացիային, որից մենք ստանում ենք էլեկտրագնացքներ,
ստիճանաասանդուղքներ, քարշային ենթակայաններ, չուգունե և երկաթբետոնե
տյուբինգներ, ռելսեր, օդափոխիչ սարքավորումներ և այլն։ Էլեկտրասարքա-
վորումները հիմնականում ստացվում են Ուկրաինայից, որը, բացի դրանցից,
տալիս է նաև տյուբինգներ, խողովակներ, Ուզբեկստանից մենք մարմար ենք
ստանում, Վրաստանից՝ էլեկտրասարքավորումներ, խողովակներ, փայտակոճ,
Ադրբեջանից՝ երկաթբետոնե տյուբինգներ և այլն։
Այս ցուցակը երկար կարելի է շարունակել, և դա վառ վկայությունն է այն
բանի, որ մեր կառույցները եղբայրության ուժով են ստեղծվում։ Հատկանշա-
կան է և այն, որ Երևանի մետրոշինի պատվերները միշտ կատարվում են ժա-
մանակին և նույնիսկ ժամկետից շուտ։
Երևանի մետրոպոլիտենի կառուցումը հանրապետության քաղաքաշինու-
թյան առավել խոշոր խնդիրներից է, որի լուծմանն ակտիվորեն մասնակցում
են հազարավոր մարդիկ՝ ինժեներներ, նախագծողներ, ճարտարապետներ, շի-
նարարներ, բանվորներ։ Նրանց անձնվեր աշխատանքը, շինարարությունն ամեն
կերպ արագացնելու ձգտումը հուսալի երաշխիքն են այն բանի, որ մետրոպո-
լիտենի գնացքները կսուրան սահմանված ժամանակին։

---

Ընդդեմ բուրժուական

գաղափարախոսության

# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ՓԻԼԻՍՈՓԱՅՈՒԹՅՈՒՆԸ ՓԱԿՈՒՂՈՒՄ

**Բ. Տ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ԵՐԿՈՒ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՆԵՐԻ՝ կապիտալիզմի և սոցիալիզմի գաղափարախոսական հակամարտության մեջ փիլիսոփայությունը կենտրոնական տեղ է գրավում։ Որպես աշխարհայացքի ընդհանուր տեսական ձև, որը սահմանում է աշխարհի ու մարդու ըմբռնման հիմնական օրենքներն ու սկզբունքները, այն հանդես է գալիս իբրև տարբեր գաղափարախոսական ու քաղաքական դիրքորոշումների տեսական հիմնավորման կարևոր միջոց։

Այդ առումով արդի բուրժուական փիլիսոփայությունը բնութագրվում է որպես կապիտալիստական հասարակության տիրապետող դասակարգի շահերի արտահայտության ու պաշտպանության վերացական-տեսական և համընդհանուր ձև։ Առդիմելով ճանաչողության և մարդկային գոյության հավերժական սկզբունքներին ու իդեալներին, այն տեսականորեն հիմնավորում է դասակարգայնորեն սահմանափակված կոնկրետ քաղաքական ու գաղափարախոսական ծրագրերը, ծառայում է որպես հեղափոխական մարքս-լենինյան տեսության, կոմունիստական գաղափարախոսության դեմ մղվող պայքարի կարևորագույն գործիք։

Ի հակակշիռ բուրժուական փիլիսոփայության, մարքսիզմ-լենինիզմը, լինելով հեղափոխական պրոլետարիատի, դեմոկրատիայի ու սոցիալիզմի ուժերի շահերի տեսական արտահայտությունը, հանդես է գալիս որպես հետևողականորեն գիտական, դիալեկտիկական-մատերիալիստական աշխարհըմբռնում, որը ծառայում է իբրև հին աշխարհի հեղափոխական վերափոխման և նոր, կոմունիստական հասարակության կառուցման գործուն տեսական ուղեցույց։

Մարքսիստական փիլիսոփայությունը, ծագումից ի վեր, մշտապես ընդլայնել է իր գաղափարական ազդեցության ոլորտը՝ դառնալով համաշխարհային բանվորական ու կոմունիստական շարժման համընդհանուր ճանաչում գտած աշխարհայացք։ Դրա հետագա տարածման հզորագույն ազդակ ծառայեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը, հեղափոխություն, որն առաջին անգամ ուղի հարթեց կոմունիստական սոցիալական իդեալի իրականացման համար։ Դրանից հետո անցած վաթսուն տարիների ընթացքում սոցիալիզմն աճել ու դարձել է համաշխարհային սոցիալական համակարգ, ողջ մարդկության սոցիալ-քաղաքական ու հոգևոր զարգացման հզոր գործոն։ Այսօր մարքս-լենինյան փիլիսոփայությունը հողագնդի

տարբեր երկրների հարյուր միլիոնավոր մարդկանց աշխարհայացքն է։ Այն օրեցօր ձեռք է բերում նորանոր կողմնակիցներ, նվաճում է այն մարդկանց խոհերն ու հույզերը, ովքեր ձգտում են ճշմարտության ու արդարության, արդի աշխարհի բարդ ու դժվարին պրոբլեմների լուծման։

Մարքս-լենինյան փիլիսոփայության ձգողական ուժը նրա դրույթների գիտատեսական հիմնավորվածությունն է, գործունակությունը, այն, որ ժողովուրդները, հաղորդվելով այդ փիլիսոփայությանը, մեծ հաջողությունների են հասնում իրենց կյանքի կառուցման ընթացքում, որ արդի միջազգային հարաբերությունների պայմաններում այդ փիլիսոփայությունը հռչակում է խաղաղության և համընդհանուր բարեկեցության իդեալները, ապացուցում դրանց իրագործելիությունը։ Մարքս-լենինյան փիլիսոփայությունը մարդկանց զինում է պատմության զարգացման օբյեկտիվ օրենքների իմացությամբ, արդի աշխարհի պայմաններում իր լավատեսական և, միաժամանակ, ռեալիստական կանխատեսումներով ակտիվ ստեղծագործության է ոգեկոչում նրանց, ամրապնդում է հավատը բանականության, մարդկության առաջընթացի նկատմամբ։

Ներկայումս մարքս-լենինյան փիլիսոփայության, կոմունիստական գաղափարախոսության հետագա տարածման համար բարենպաստ պայմաններ են ստեղծվել շնորհիվ այն խաղաղասիրական քաղաքականության, որը հետևողականորեն վարում են Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները։ Այդ քաղաքականությունը վերջին տասնամյակում հանգեցրել է աշխարհում դրական տեղաշարժերի, միջազգային լարվածության թուլացման, էականորեն սահմանափակել է իմպերիալիզմի արտաքին քաղաքական էքսպանսիայի շրջանակներն ու հնարավորությունները, նպաստել հակառազմական և դեմոկրատական շարժումների ակտիվացմանը կապիտալիստական երկրներում։

Սակայն սոցիալիզմի հաջողությունն ու մարքս-լենինյան փիլիսոփայության գաղափարական ազդեցության բուռն աճը առաջ են բերել բուրժուազիայի գաղափարախոսական պատասխան ակտիվությունը։ Պայքարը մարքսիզմի, կոմունիզմի դեմ, դրանց «հերքումը» բուրժուական գաղափարախոսության մեջ ստացել են պարտադիր ու առաջնահերթ խնդրի նշանակություն։ Այդպիսով, խաղաղ գոյակցության, միջազգային լարվածության թուլացման պայմաններում երկու սիստեմների, բուրժուական և մարքս-լենինյան աշխարհայացքների գաղափարական հակամարտությունը ո՛չ միայն չի թուլանում, այլև ընդունում է ավելի ակտիվ ու բարդ ձևեր։ Այդ առնչությամբ գաղափարական ճակատի առջև ծառանում է բուրժուական փիլիսոփայության, վերջինիս նորագույն տեսական հոսանքների հետագա խորացված հետազոտության ու քննադատության հրատապ խնդիրը, որոնք այսօր հանդես են գալիս որպես մարքսիզմին թշնամի գաղափարախոսության առավել գործուն տարրեր։

## 1

Արդի բուրժուական փիլիսոփայությունը ներկայացնում է մի հույժ խայտաբղետ ու հակասական պատկեր։ Այն ներկայացնող փիլիսոփայական հոսանքները, որոնք ընդունում են իրենց հակվածությունն անցյալի իդեալիստական փիլիսոփայական ավանդույթին (օբյեկտիվ իդեալիստական ուսմունքները, նեոսխոլաստիկական փիլիսոփայությունը) կամ ընդհակառակը, շեշտում են իրենց քննադատական վերաբերմունքը դասական շրջանի բուրժուական մշակույթի նկատմամբ (ֆենոմենոլոգիա, պսիխոանալիզ, էկզիստենցիալիզմ և նեոպոզիտիվիզմ),— դրսևորում են սուր բանավիճային, իսկ երբեմն էլ բացահայտ թշնամական վերաբերմունք իրար նկատմամբ։ Այդուհանդերձ, չնայած առկա ըմբռնումային տարբերություններին ու տարակարծություններին, այդ փիլիսոփայությունն օժտված է որոշակի սկզբունքային միասնությամբ ու ընդհանրությամբ և իր բոլոր տարատեսակներով էական կախման մեջ է դասական իդեալիստական փիլիսոփայությունից։ Բուրժուական փիլիսոփայական մտածողության պատմությունն անցած երկու-երեք դարերի ընթացքում կապիտալիստական հարաբերությունների էվոլյուցիայի յուրահատուկ հոգևոր արտահայտությունն է։ Գիտելիքի արտադրության ու ձևավորման օրինաչափությունների ու



միխանիզմների, կապիտալիստական հասարակության զարգացման երկու՝ մինչմոնոպոլիստական և արդի պետական-մոնոպոլիստական փուլերում հոգևոր կյանքի տարբեր ձևերի հետազոտությունը ցույց է տալիս, թե ինչպես հոգևոր արտադրության կառուցվածքում տեղի ունեցող փոփոխությունները կերպարանափոխում են նաև ինքնագիտակցության ձևերը միասնական բուրժուական մշակույթի շրջանակներում։

Կապիտալիստական սիստեմի համընդհանուր ճգնաժամը, որ ողջ մերկությամբ երևաց առաջին համաշխարհային պատերազմի աղետի ու հաջորդ տասնամյակների եվրոպական պատմության դրամատիկ իրադարձություններում, XX դարի առաջին կեսի արմատական սոցիալական փոփոխությունները, գիտատեխնիկական հեղափոխությունն ու դրա հետևանքները— այս ամենը հարուցեց կապիտալիստական աշխարհում մարդկային գոյության անկայունության ու դյուրաբեկության աշխարհազգացողություն, խախտեց հավատն այն բանի նկատմամբ, որ կեցությունը բանական է, և աշխարհում տեղի ունեցող իրադարձություններն ըմբռնելի են։ Բուրժուական հասարակության այդ ճգնաժամային գիտակցությունը վառ արտահայտություն գտավ էկզիստենցիալիստական փիլիսոփայության մեջ։ Դրա հետ մեկտեղ բուրժուական փիլիսոփայությունը չկորցրեց իր երբեմնի հավատը կապիտալիստական սիստեմի կարգավորվածության, դրա ռացիոնալ կազմակերպման ու կատարելագործման հնարավորությունների նկատմամբ։ Այդ հավատը մի այլ, փոխակերպված ձևով դրսևորվեց նեոպոզիտիվիստական ու տեխնոկրատական փիլիսոփայության տարբեր կոնցեպցիաներում։

Արդի բուրժուական փիլիսոփայությունը չի հաղթահարել անցյալի իդեալիստական մտածողության հակասականությունը, այլ վերարտադրել է այն նոր տեսքով և արտահայտության ավելի ծայրահեղ ձևերով։ Իդեալիստորեն փիլիսոփայելու նոր տեսական դրույթներում ու երկընտրանքներում արտացոլվել է բուրժուական մշակույթի, բուն կապիտալիստական իրականության ներքին մասնատվածությունն ու հակասականությունը։ Արդի բուրժուական գիտակցության մեջ ձևավորվել են փիլիսոփայելու իրար հակադիր երկու տիպ, բուն իսկ փիլիսոփայության, դրա էության ու սոցիալական դերի երկու տարբեր մեկնաբանություն՝ սցիենտիստական (որը բացարձակացնում է գիտության նշանակությունը) և հակասցիենտիստական (ըստ էության հակաինտելեկտուալ), որոնք ներկայացված են ամենից առաջ ի դեմս նեոպոզիտիվիզմի և էկզիստենցիալիզմի։ Հայացքների այդպիսի բևեռացումն առաջացել է գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում կապիտալիստական հասարակության սոցիալական կյանքի հրատապ պրոբլեմների նկատմամբ եղած տարբեր փիլիսոփայական հակազդումներից և, մասնավորապես, այն երկակի դերից, որ սկսել է խաղալ գիտությունը ժամանակակից կապիտալիզմի պայմաններում։

Գիտատեխնիկական հեղափոխությունը հանգեցրել է արդի հասարակության կյանքի խոր վերափոխումների, որոնք ընդգրկում են մարդկային կեցության բոլոր ոլորտները։ Անսովոր չափով աճել է գիտական իմացության դերը տնտեսության և հասարակության այլ կենսական պրոցեսների կառավարման գործում, մի հանգամանք, որը գիտությանը հաղորդել է կարևոր տնտեսական ու սոցիալական ֆունկցիաներ։ Գիտությունը դարձել է հզոր արտադրաուժ, թափանցել է մարդկանց կենցաղը, դարձել հասարակական գիտակցության կարևոր գործոն։ Համակված գիտության ու տեխնիկայի վիթխարի ստեղծարար հնարավորությունների գիտակցությամբ, ինչպես և ելնելով որոշակի դասակարգային ու գաղափարախոսական շահերից՝ բուրժուական փիլիսոփայությունն իր նեոպոզիտիվիստական և սցիենտիստական ու տեխնոկրատական այլ տարբերակներով դրսևորում է ո՛չ միայն սոցիալական կյանքում, այլև հոգևոր մշակույթի ոլորտում գիտական իմացության գործոնների ֆետիշացման ուժեղ միտում։ Ելնելով սկզբունքորեն ճիշտ այն համոզմունքից, որ գիտատեխնիկական առաջընթացի հնարավորություններն անսահմանափակ են, սցիենտիստական փիլիսոփայությունը հանգում է նրան, որ անիրավացի կերպով ունիվերսա-

լացնում է դրա նշանակությունը մարդու կյանքի և հասարակության զարգացման համար։ Գիտությունն ու տեխնիկան ինքնին դիտվում են որպես արդյունավետ և միանգամայն բավարար միջոցներ մարդկային գոյության բոլոր հիմնաբար պրոբլեմների լուծման համար։ Գիտության այդ ֆետիշացման հունի մեջ էլ ձևավորվել է փիլիսոփայության էության ժամանակակից սցիենտիստական ըմբռնումը։ Հանուն «գիտական փիլիսոփայության», մտահայեցողական սպեկուլյացիաների դեմ ուղղված պայքարի դրոշի ներքո նեոպոզիտիվիզմը մերժում է ավանդական փիլիսոփայական, աշխարհայացքային ու բարոյահումանիտար պրոբլեմատիկան, իսկ փիլիսոփայությունը դիտում է լոկ որպես կոնկրետ գիտական իմացության (առավելապես բնագիտական) մաս ու ձև։

Սակայն գիտության ու տեխնիկայի առաջընթացը կյանքի է կոչել ո՛չ միայն ստեղծման վիթխարի ուժեր, այլև կործանման մինչև այժմ չտեսնված ուժեր, որոնք գործողության լայն ասպարեզ են ստացել կապիտալիստական հասարակության պայմաններում։ Բուռն ինդուստրիալ զարգացումը, երկրի ընդերքի և ջրավազանների ինտենսիվ շահագործումը հանգեցրել են մթնոլորտի, ծովերի ու օվկիանոսների՝ մարդու համար վտանգավոր աղտոտման, արդյունաբերական թափոններով բնական միջավայրի թունավորման։ Արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, աշխատանքի ու սպառման դիմազրկումը, ապրելակերպի ստանդարտացումը— այդ ամենը մարդուն դարձրել է մեքենայի կցորդ, տեխնիկականացված շահագործողական հասարակության կողմից կատարվող տոտալ մանիպուլյացիաների օբյեկտ։ Գիտատեխնիկական հեղափոխությունը ո՛չ միայն սրել է կապիտալիզմի հին հակասությունները, այլև հարուցել է նոր հակասություններ։ Կյանքի և արտադրության այդ ձևերը, որոնք ստեղծել է կապիտալիզմը, ավելի մեծ չափով են դրսևորում իրենց ներհակությունը մարդու ստեղծագործական զարգացման նկատմամբ։ Հասարակական հարաբերությունները հանդես են գալիս մարդուն հակադրվող և նրան ճնշող անդեմ տարերքի ձևով։ Գիտության ու տեխնիկայի զարգացման պրոցեսների բացասական հետևանքներն ու անվերահսկելիությունը էականորեն խախտել են հավատն այդ պրոցեսների պրոգրեսիվ նշանակության նկատմամբ։ Կապիտալիստական հասարակության մեջ մարդկային գոյության ձևերի օտարումն ու ապամարդկայնացումը ծնել են միանգամայն նոր աշխարհազգացողություն ու մտայնություն, որոնք հակադիր են տեխնոկրատական-սցիենտիստական աշխարհազգացողությանն ու մտայնությանը և իրենց արտացոլումն են գտել հակասցիենտիստական փիլիսոփայության, այն է՝ էկզիստենցիալիզմի և դրան հարակից մարդաբանական ուսմունքների մեջ։ Տեխնոկրատական գաղափարախոսության հետ մեկտեղ, որը դարձել է մասսայական հասարակական գիտակցության էական տարրը, որոշակի ազդեցություն է ձեռք բերում նաև հակասցիենտիստական գաղափարախոսությունը, որը ցուցադրում է իր թշնամական, զգուշավոր վերաբերմունքը գիտության ու տեխնիկայի, ռացիոնալիստական մտքի նկատմամբ և ադիմում է իրականության ճանաչողության մեջ զանազան իռացիոնալիստական դիրքորոշումների։ Այդ հողի վրա էլ ծնվում է փիլիսոփայության հակասցիենտիստական ըմբռնումը, որն ինքնուրույն ու վճռական նշանակություն է տալիս մարդկային ճանաչողության սուբյեկտիվ-ստեղծագործական, հոգևոր-բարոյական և կամային բնույթին։ Իսկ փիլիսոփայությունն ինքը մեկնաբանվում է որպես սուբյեկտիվ ապրումների և աշխարհի ըմբռնման որոշակի ձև, որպես մի յուրահատուկ արժույթաբարոյական դիրքորոշում, հավատ, աշխարհազգացողություն, որով որոշվում է ողջ տեսական ու պրակտիկ գործունեությունը։

Բուրժուական փիլիսոփայական միտքը հանգել է նրան, որ խստիվ հակադրում է միմյանց փիլիսոփայությունն ու գիտությունը, փիլիսոփայությունն ու աշխարհայացքը, գիտությունն ու գաղափարախոսությունը, գիտատեսական և արժույթաաշխարհայացքային մոտեցումներն աշխարհի ու մարդու բացատրության գործում։ Այդպիսի հակադրումը կապիտալիզմի որոշակի հակասությունների արտահայտությունն է, այն հակասությունների, որոնք գոյություն ունեն արտադրության իրային և մարդկային կողմերի միջև, քաղաքակրթության զար-



գացման և հասարակության սոցիալ-քաղաքական առաջընթացի միջև, աճող գիտատեխնիկական հնարավորությունների և մարդու, ողջ հասարակության ետ մնացող ներքին հոգևոր ու բարոյական զարգացման միջև։

Մի կողմից՝ գիտական իմացության գործոնների, գիտատեխնիկական առաջընթացի հնարավորությունների ֆետիշացում, մարդու կյանքի և հասարակության զարգացման համար դրանց ունեցած նշանակության անհրավացի ունիվերսալացում և «ինդուստրիալ», «հետինդուստրիալ» ու «տեխնոտրոն» հասարակության զանազան տեսություններ, որոնք ձևավորվել են այդ սցիենտիստական հողի վրա և որոնք գիտության ու տեխնիկայի զարգացումը համարում են ինքնագոհ երաշխիք կապիտալիզմի գոյության և հետագա զարգացման համար։ Մյուս կողմից՝ ամբողջ մարդկային գոյության կորուսյալության, անկայունության ու դյուրաբեկության աշխարհազգացողություն՝ ծնված այդ կապիտալիստական հասարակության ճգնաժամից ու գիտատեխնիկական հեղափոխության բացասական հետևանքներից և մարմնավորված էկզիստենցիալիզմի հակասցիենտիստական փիլիսոփայության մեջ։

Գիտատեխնիկական հեղափոխության հետևանքների նկատմամբ երկու տարբեր մոտեցում, երկու տարբեր գնահատական, բայց սկզբունքորեն միասնական մեկ վերաբերմունք կապիտալիստական իրականության և հենց գիտության նկատմամբ։ Առաջին դեպքում՝ գիտության ու տեխնիկայի բուրժուաուտիլիտար օգտագործման ջատագովություն և կապիտալիզմի կատարելագործման անսահմանափակ հնարավորությունների հավաստում։ Երկրորդ դեպքում՝ գիտության և արտադրության նկատմամբ այդ ուտիլիտար վերաբերմունքի, կապիտալիստական հասարակության մեջ մարդկային գոյության օտարված ձևերի, իբրև քաղաքակրթության, ընդհանրապես մարդկային կյանքի բնական ու անխուսափելի պտուղների անուղղակի արդարացում։ Երկու դեպքում էլ գիտությունը դիտվում է որպես ինքնաբավ մի բան, որը կախված չէ սոցիալական հարաբերություններից և որոշում է ամեն ինչ՝ բառի և՛ դրական, և՛ բացասական իմաստով։

Այսպիսով, սցիենտիստական և հակասցիենտիստական մոտեցումների տարբերությունների և նույնիսկ հակադրության ետևում դրսևորվում է իրենց բնույթով իդեալիստական ու մետաֆիզիկական այդ կոնցեպցիաների էական ընդհանրությունը, կոնցեպցիաներ, որոնք հանդես են գալիս որպես բուրժուական մշակույթի արդյունք և ծառայում են կապիտալիստական իրականության բացատրությանն ու գաղափարական արդարացմանը։

Նեոպոզիտիվիզմի ու էկզիստենցիալիզմի ողջ հակասականությունը դրսևորվում է փիլիսոփայության առարկայի ըմբռնման, ինչպես և փիլիսոփայության ու գիտության, փիլիսոփայության ու աշխարհայացքի, գիտության ու գաղափարախոսության փոխհարաբերության մեկնաբանման հարցում։ Այստեղ նկատելի է մի էական ընդհանրություն, որով այդ ուղղություններն առնչվում են բուրժուական գաղափարախոսության մեջ մինչև վերջին ժամանակներս տիրապետող «ապագաղափարականացման» սկզբունքի հետ, որը պրոպագանդում է օբյեկտիվիստական անաչառություն և ապաքաղաքականություն գիտական և սոցիալական պրակտիկայի զանազան փաստերի քննության և բացատրության մեջ։

Նեոպոզիտիվիզմը մերժում է փիլիսոփայության աշխարհայացքային, գաղափարախոսական ֆունկցիան որպես գիտության ու սոցիալական իրականության երևույթների վերլուծության նկատմամբ օբյեկտիվ, խիստ գիտական մոտեցման անհրաժեշտ պայման (ընդունելով գաղափարախոսության՝ որպես գիտակցության աղավաղված, առասպելականացված ձևի, ինքնուրույն գոյության իրավունքը)։ Էկզիստենցիալիզմը փորձում է փիլիսոփայությունը հաստատել լոկ որպես արժույթաաշխարհայացքային վերաբերմունք իրականության նկատմամբ, բայց ամեն կերպ շեշտում է դրա սկզբունքային տարբերությունը գիտությունից և գիտական բանական աշխարհըմբռնումից։ Այլ կերպ ասած, «իսկական» աշխարհազգացողությունն այստեղ նույնպես ձեռք է բեր-

վում գաղափարախոսության, որպես տրամաբանորեն ու գիտականորեն հիմնավորված աշխարհայացքի, մերժման միջոցով։ Էկզիստենցիալիզմի մեջ այն մեկնաբանվում է լոկ որպես ինքնակամ և խացիոնալ վերաբերմունք աշխարհի նկատմամբ։

Սցիենտիզմի և հակասցիենտիզմի հակադրությունը բուրժուական փիլիսոփայության ոչ բոլոր հոսանքներում է դրսևորվում հավասար չափով։ Ավելին, որոշ հոսանքներում փորձեր են արվում համադրելու այդ փիլիսոփայական սկզբունքները։ Այդ կարգի համադրական ըմբռնումները առանձնապես տարածվել են վերջին տասնամյակներում, էկզիստենցիալիզմի ու նեոպոզիտիվիզմի ծայրահեղությունները հաղթահարելու բուրժուական փիլիսոփայության նորագույն ձգտման հունով։ Այդ փորձերը կատարվում են ինչպես դեռևս մինչպատերազմյան շրջանում ձևավորված հոսանքներում՝ փիլիսոփայական մարդաբանության (Մ. Շելեր, Ա. Գելեն, Ե. Ռոթհակեր, Հ. Պլեսներ) և ստրուկտուրալիզմի (Կ. Լևի-Ստրոս, Մ. Ֆուկո, Ժ. Լական) մեջ, որոնց գաղափարախոսական ազդեցությունը վերջին տարիներին աճում է, այնպես էլ ներկայումս ձևավորվող հերմենևտիկական փիլիսոփայական շարժման մեջ և «հետպոզիտիվիզմի» մի քանի նորագույն տարբերակներում։ Սակայն այդ համադրական ըմբռնումները, որոնք կառուցվում են սուբյեկտիվիստական անթրոպոլոգիզմի կամ իդեալիստական ու պոզիտիվիստական օբյեկտիվիզմի հիմքի վրա, անխուսափելիորեն ձախողվում են։

Գիտության և աշխարհայացքի, գիտության և գաղափարախոսության այն հակադրումը, որը բնորոշ է բուրժուական փիլիսոփայությանը, մարքս-լենինյան փիլիսոփայության մեջ հաղթահարվում է ոչ թե այդ հարաբերության կողմերից մեկի վերացման, այլ մարդու գիտատեսական և հոգևոր-պրակտիկ ստեղծագործության հարաբերությունների իրական դիալեկտիկայի բացահայտման և հավաստման միջոցով։ Մարքս-լենինյան ուսմունքում փիլիսոփայությունն ըմբռնվում ու մեկնաբանվում է որպես հասարակական գիտակցության այնպիսի ձև, որն իր մեջ օրգանապես զուգակցում է գիտական և արժույթաաշխարհայացքային կողմերը։ Որպես որոշակի պատմական դարաշրջանի ինքնագիտակցություն, փիլիսոփայությունն իմաստավորում ու մեկնաբանում է ո՛չ միայն գիտական ճանաչողության արդյունքները, այլև մարդու գոյության ամբողջ հավաքական փորձը, նրա բարոյական ու գեղագիտական պրակտիկան, անհատական ու հասարակական կեցության, աշխարհի և իր իսկ նկատմամբ մարդու անմիջական հարաբերության ու վերաբերմունքի փաստերն ու երևույթները։

## 2

Եթե մեր դարի առաջին կեսի արևմտյան փիլիսոփայությունը ձևավորվել է դասական փիլիսոփայական ավանդույթի հետ մղվող բանավեճում, նորի հավակնությունների ադմկալից հռչակման մեջ (այդ միտումների վառ արտահայտությունն էր իդեալիզմի ու մատերիալիզմի հակադրությունից «վեր կանգնելու» ձգտումը), ապա այսօրվա հոսանքների ներկայացուցիչներին հատուկ է իրենց մերձավորագույն նախորդների հետ ունեցած կապի շեշտումը, իսկ նրանց աշխատությունների տարբերիչ գիծը, եթե կարելի է այսպես արտահայտվել, մտածողության «շտկման», «ճշգրտման» ոճն է։

Նորագույն իդեալիզմի պահպանողական ձևերն առաջանում են բուրժուական փիլիսոփայության հիմնական ուղղությունների քայքայման ու համընկնելու բերումով և բնութագրվում են որոշ ընդհանուր պրոբլեմների շուրջը (կեցության և իմացության, ժամանակի և հավերժության, տրամաբանության և լեզվի, «նախնական ըմբռնման» և գաղափարախոսության) կատարվող սպեկուլյատիվ տեսականացմամբ, դեպի կրոնը և մտածողության առասպելայնացված ձևերը տեղի ունեցող շրջադարձով, փիլիսոփայման ավանդական եղանակների՝ մետաֆիզիկայի, կրոնական փիլիսոփայության ու աստվածաբանության վերածնմամբ։ Այդ առումով խիստ հատկանշական է բուրժուական փիլիսոփայության հիպերտրոֆիկ հետաքրքրությունը լեզվի նկատմամբ՝ որպես կեցության ու մարդկային գոյության արտահայտության ձև։



Լեզվի փիլիսոփայությունը և հերմենևտիկան միավորում են նախկինում իրար հակադիր (միասնական իդեալիստական աշխարհայացքի շրջանակներում) բազմաթիվ փիլիսոփայական հոսանքներ։ Դրանց միջոցով այսօր զարգացվող կոնցեպցիաները վկայում են, որ այդ հոսանքները հրաժարվել են որոշ սկզբնական դիրքորոշումներից (գլխավորապես սոցիալ-քննադատական կարգի), և տեսականորեն մերձենում են միմյանց՝ ընդհանուր առմամբ ձգտելով վերականգնել ու պահպանել հեղինակության և այսպես կոչված «օրինական նախապաշարմունքները», այսինքն՝ իրականության նկատմամբ պատմականորեն տրված գաղափարախոսական, արժույթային վերաբերմունքը։

Եթե կապիտալիզմի (50-ական թվականների վերջի և 60-ական թվականների սկզբի) ժամանակավոր կայունացումը խթան դարձավ XX դարի առաջին կեսում ձևավորված մի շարք հիմնական փիլիսոփայական դիրքորոշումների քննադատական վերաիմաստավորման, դրանց բնորոշ ռելյատիվիզմի ու նիհիլիզմի վերացման համար, ապա վերջին տասնամյակի իրադարձությունները, որոնք արտահայտվեցին ինչպես քաղաքական ուժերի ընդհանուր խստիվ սահմանազատման, այնպես էլ երիտասարդության և մտավորականության քաղաքական տրամադրությունների արմատականացման մեջ, բուրժուական փիլիսոփայության ներկայացուցիչներին դրդեցին երիտասարդության հակաավանդական, հեղափոխական-խռովարարական ձգտումների քննադատության, բուրժուական մշակութային, քաղաքական ու գաղափարական ավանդության հետևողական պաշտպանության։

Նկատելով ժողովրդական զանգվածների «ապագաղափարականացման» իր փորձերի անհաջողությունը, «ապագաղափարականացում», որի նպատակն էր ապաքաղաքականություն և գաղափարախոսական անտարբերություն քարոզելու միջոցով այդ զանգվածներին շեղել հեղափոխական գաղափարախոսությունից, բուրժուազիան մշակում է աշխարհայացքային արժեք ունեցող նոր կոնցեպցիաներ ու տեսություններ, որոնք ունակ են ապահովելու գաղափարախոսական ներգործություն բնակչության ամենատարբեր խավերի վրա։

Յոթանասունական թվականների սկզբից բուրժուական գաղափարախոսության մեջ իրականացվում է պրոպագանդայի «վերագաղափարականացման», բուրժուական հասարակության ավանդական իդեալների և արժույթների նորովի ակտիվ պատվաստման, իռացիոնալիստական և ուտոպիական կարգի զանազան գաղափարախոսական առասպելների միջոցով հակահեղափոխական ու հակասոցիալիստական աշխարհայացքի ձևավորման մի լայն ծրագիր։ Փիլիսոփայական սցիենտիզմին հարակից «հետինդուստրիալիզմի» տեխնոկրատական ու ֆուտուրոլոգիական կոնցեպցիաների հետ մեկտեղ, 60-ական թվականների երկրորդ կեսում և 70-ական թվականների սկզբում զգալիորեն տարածվում են (առանձնապես Արևմտյան Եվրոպայում) հումանիտար բնույթի լիբերալ և ռեֆորմիստական սոցիալական տեսությունները, որոնք հիմնավորում են հասարակական առաջընթացի հնարավորությունն ու հեռանկարները, ըստ որում, այդ առաջընթացը պետք է կատարվի բուրժուական հասարակության քաղաքական, սոցիալական, իրավական հաստատությունների այնպիսի կատարելագործման միջոցով, որն ապահովի մշակութային-պատմական ժառանգորդման պահպանումն այդ հասարակության զարգացման մեջ։ Ժամանակակից բուրժուական սոցիալ-քաղաքական մտքի այդ միտումին խիստ համահնչուն է նաև՝ իրերի կեցության և իմաստի հերմենևտիկական ըմբռնման, ինտուիտիվ մտահասության նորագույն փիլիսոփայությունը։

Արդի իդեալիստական փիլիսոփայության և բուրժուական սոցիալ-քաղաքական ուսմունքների բնորոշ գիծն է դրանց նախասկզբնական ներքին և արտաքին հակամարքսիստական ու հակակոմունիստական սուր բանավիճային բնույթը։ Դա բացատրվում է ո՛չ միայն մարքսիզմի նկատմամբ բուրժուական գաղափարախոսության ավանդական հակամարտ վերաբերմունքով, այլև ժամանակակից կապիտալիստական երկրների հոգևոր կյանքում առկա այն նոր

իրադրությամբ, որն առաջ է եկել մարքսիզմի լայն տարածմամբ, նրա գաղափարական ազդեցության աննախընթաց աճով: Մարքսիզմի, նրա փիլիսոփայական ու սոցիալական տեսության նկատմամբ հետաքրքրությունն առանձնապես աճել է վերջին տասնամյակում Արևմուտքի հասարակական կյանքի քաղաքական ռադիկալացմամբ և բուրժուական բուն փիլիսոփայության ու գաղափարախոսության հեղինակազրկման հետևանքով: Ժամանակակից մարդկության բարդ ու դժվարին պրոբլեմների պրակտիկ լուծման համար մարքսիզմի ու նրա սոցիալական տեսության ունեցած բացառիկ ու անփոխարինելի նշանակությունն այսօր ընդունում են արևմտաեվրոպական փիլիսոփայության բազմաթիվ ականավոր ներկայացուցիչներ: Մ. Հայդեգերը, որն առաջ ժխտում էր մարքսիզմի փիլիսոփայական նշանակությունը, ուշ շրջանի իր մի աշխատության մեջ հանգում է այն համոզման, որ անհրաժեշտ է ազատվել մատերիալիզմի վերաբերյալ եղած պարզունակ պատկերացումներից և նրա էժանագին հերքումներից: Մարքսը, նրա կարծիքով, «թափանցել է պատմության մի էական չափի մեջ, և պատմության նրա ըմբռնումն ինչ-որ իմաստով գերազանցել է մյուս բոլոր պատմական կոնցեպցիաները»: Նշելով բուրժուական մտածողության ճգնաժամային վիճակը՝ Ժ. Պ. Սարտրը շեշտում է մարքսիզմի տեսական հիմնավորվածությունն ու գործնական հրատապությունը: «Միայն մարքսիզմն է,— գրում է նա,— որ ունի իրական տեսական հիմքեր, այն ընդգրկում է ամբողջ մարդկային գործունեությունը, ...հանդիսանում է մեր ժամանակի իսկական փիլիսոփայությունը. այն չի կարելի գերազանցել, քանի որ դեռ գերազանցված չեն այն ծնած հանգամանքները: Ինչպիսին էլ լինեն մեր մտքերը, դրանք կարող են զարգանալ միայն այդ հողի վրա, դրանք պետք է տեղավորվեն մարքսիզմի գծած շրջանակներում, կամ անհետանան դատարկության մեջ և անկում ապրեն»:

Մարքսիզմի տեսական ու սոցիալական նշանակության այդ և նման խոստովանումները, սակայն, բնավ չեն խանգարում բուրժուական և ռեֆորմիստական մտածողներին, յուրացնելով մարքսիզմի առանձին կողմերը, տալու նրա այնպիսի մեկնաբանություն, որն ամլացնում է նրա տեսական բովանդակությունն ու հեղափոխական էությունը:

Փիլիսոփայությունը եղել և մնում է սուր գաղափարախոսական պայքարի, արդի հասարակության տարբեր սոցիալական համակարգերի ու դասակարգերի գաղափարական բախման ոլորտ: Այդ պայմաններում հեղափոխական մարքս-լենինյան ուսմունքի տեսական ու գաղափարական սկզբունքների պաշտպանությունն ու արդյունավետ պրոպագանդան չեն կարող ապահովվել առանց Արևմուտքի այն նորագույն փիլիսոփայական կոնցեպցիաների արմատական ու հիմնավորված քննադատական վերլուծության, որոնք ներկայումս ակտիվորեն պրոպագանդվում են բուրժուական գաղափարախոսների կողմից:

Այդ խնդրի հաջող կատարումը պահանջում է, ամենից առաջ, մարքսիզմի հիմնադիրների կողմից մշակված կուսակցականության սկզբունքի հետևողական անցկացում: Այդ սկզբունքը նախատեսում է կոնկրետ գաղափարախոսական երևույթի խստիվ գիտական ու օբյեկտիվ հետազոտության օրգանական զուգակցում դրա դասակարգային գնահատման հետ, իսկ վերջինս ենթադրում է տվյալ երևույթի սոցիալական բնույթի պարզում, հասարակական խմբերի ու կուսակցությունների պայքարում նրա ունեցած օբյեկտիվ դերի բացահայտում: Հեղափոխական կուսակցականության մարքսիստական պահանջը գիտական հետազոտության մեջ դրսից ներմուծվող ինչ-որ մի հատուկ սկզբունք չէ, այն սոսկ արտահայտում է հեղափոխական դասակարգի շահագրգռությունը գիտականության հետևողական ու անզիջում իրականացմամբ, քննարկվող բուրժուական փիլիսոփայական ուսմունքի իմացաբանական և գաղափարական-աշխարհայացքային բովանդակության բացահայտմամբ:

Յուրաքանչյուր նոր փիլիսոփայական ուսմունքի գաղափարական ակունքները, նրա իմացաբանական արմատներն ու ժամանակակից բուրժուական փիլիսոփայական իմացության ողջ համակարգում նրա տեղը որոշելուց բացի, անհրաժեշտ է, ինչպես այդ պահանջում էր Վ. Ի. Լենինը, բացահայտել գիտա-



կան ճանաչողության և սոցիալական պրակտիկայի այն կողմերն ու պրոբլեմները, որոնք կապված են այդ ուսմունքի հետ և որոնք մի որոշ չափով դարձել են նրա առաջացման դրդապատճառները: Իդեալիստական փիլիսոփայության մարքսիստական վերլուծության կարևորագույն պայման է նաև այդ փիլիսոփայության տեսական հիմքերի առդրումը դիալեկտիկական մատերիալիզմի սկզբունքների հետ, հրատապ տեսական պրոբլեմների բովանդակային ու պոզիտիվ մարքսիստական լուծման հակադրումը բուրժուական փիլիսոփայությանը: Եվ, վերջապես, ինչպես նշում էր Լենինը, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում պետք է բացահայտել վերլուծվող փիլիսոփայական ուսմունքի ռեալ կախվածությունը քաղաքական ու գաղափարախոսական կյանքից: Գաղափարախոսական կոնցեպցիաների զանազան իմացաբանական, մեթոդաբանական և այլ դիրքորոշումների նաևում, գրել է Լենինը, «...չի կարելի չտեսնել կուսակցությունների պայքարը փիլիսոփայության մեջ, մի պայքար, որ վերջին հաշվով արտահայտում է արդի հասարակության թշնամական դասակարգերի տենդենցներն ու գաղափարախոսությունը» (Երկեր, հ. 14, էջ 480):

Մարքսիզմին թշնամի փիլիսոփայական կոնցեպցիաների քննադատությունը միայն այն ժամանակ է իսկապես արդյունավետ ու համոզիչ, երբ ունի կոնկրետ ու առարկայական բնույթ, երբ արդի փիլիսոփայական իդեալիզմի այս կամ այն ուսմունքը քննվում ու գնահատվում է իր բուն, յուրահատուկ էության, իր սեփական պրոբլեմատիկայի և իր մեջ մարմնավորված կոնկրետ տիպի փիլիսոփայման հաշվառումով: Իհարկե, և՛ էկզիստենցիալիզմը, և՛ նեոպոզիտիվիզմը, և՛ շատ այլ հոսանքներ սկզբունքային ընդհանրություն ունեն դասական իդեալիզմի ուսմունքների հետ և տառապում են դրա բազում էական արատներով: Ավելին, դրանք հաճախ վերարտադրում են և նախկին փիլիսոփայության որոշ կոնկրետ տեսական դրույթներ ու արտահայտչաձևեր: Բայց դա անպայման հին գաղափարների մեխանիկական օգտագործման, պարզունակ փիլիսոփայական էպիգոնության վկայություն չէ: Այդ պատճառով էլ մարքսիստական քննադատությունը մեծ նշանակություն է տալիս հետազոտվող գաղափարական երևույթի յուրահատուկ բնույթի, անցյալ ու ժամանակակից փիլիսոփայական մտածողության կազմում դրա հատուկ տեղի բացահայտմանը:

Արդի բուրժուական փիլիսոփայության քննադատական վերլուծությանը նվիրված մարքսիստական հետազոտությունները կազմում են դիալեկտիկական-մատերիալիստական փիլիսոփայության օրգանական մասը: Մեր քննադատության հիմնավորվածությունն ու համոզչությունը անմիջականորեն պայմանավորված են ժամանակակից մարքսիստական փիլիսոփայության հաջողություններով ու նվաճումներով, այն բանով, թե որքան բարձր է մարքսիստական հետազոտությունների տեսական մակարդակը, այնքան ստեղծագործական են այդ հետազոտությունները: Շատ կարևոր է, որ արդի բուրժուական և ռեվիզիոնիստական գաղափարների և ուսմունքների քննադատությունը հենվի հասարակական գիտությունների, մարքս-լենինյան տեսության ակտիվ ու ստեղծագործական զարգացման վրա: Ինչպես նշել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում, մարքսիզմ-լենինիզմի ուժը նրա մշտական ստեղծագործական զարգացման մեջ է: Այդ է մարքսիզմին թշնամի գաղափարախոսության արդյունավետ քննադատության վճռական պայմաններից մեկը:

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԸ

**Լ. Հ. ԲՐՈՒՏՅԱՆ**
Պատմական գիտությունների թեկնածու

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱԶԳԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ յուրաքանչյուր փուլ նշանակալի է իր մասշտաբներով և սոցիալ-տնտեսական արդյունքներով։ Այժմ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, մենք այդ արդյունքները չափում ենք ո՛չ միայն համեմատելով նախահեղափոխական մակարդակի հետ, երբ ցարական Ռուսաստանի ծայրամասերի ժողովուրդներն ապրում էին աղքատության, հետամնացության և իրավազրկության պայմաններում, այլ հետազոտում ենք հենց սոցիալիստական ազգերի զարգացման յուրաքանչյուր պատմական փուլի մակարդակների հարաբերակցությունները, ազգեր, որոնք սովետական իշխանության տարիներին աննախընթաց վերելք ապրեցին կյանքի բոլոր բնագավառներում և դասվեցին աշխարհի ամենաառաջավոր ազգերի շարքը։ Ազգային հարցի լուծման մեր երկրի փորձը, պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի ձևավորումն ու զարգացումը, տնտեսական և կուլտուրական շինարարության գործում ձեռք բերված հաջողություններն ավելի են մեծացնում սոցիալիզմի գաղափարների ձգողական ուժը, ակնառու կերպով ցույց տալիս սոցիալիզմի գերազանցությունը կապիտալիզմի նկատմամբ։

Որքան ավելի շատ ու ավելի վառ կերպով է դրսևորվում այդ գերազանցությունը, այնքան ավելի ակտիվ և ուժեղ է դառնում գաղափարական պայքարն ազգային հարցի շուրջ։ Հանդես գալով ՍՍՀՄ-ում սոցիալիզմի համաշխարհային-պատմական նվաճումների դեմ, նրա գաղափարական հակառակորդները՝ արդի հակակոմունիստները, ո՛չ միայն անտեսում են մեր երկրում ազգային հարցի լուծման փաստը, այլև փորձում «ապացուցել», թե իբր այդ հարցը սկզբունքային ոչ մի տարբերություն չունի կապիտալիստական երկրների ազգային հարցից։

Ազգը ներկայացնելով որպես զուտ աբստրակցիա, որպես ոգու կամ գաղափարի մարմնավորում, բուրժուական տեսաբանները հետապնդում են միանգամայն որոշակի նպատակներ, որոնք որոշվում են շահագործող դասակարգերի շահերով։ Նրանք ջանում են թաքցնել կապիտալիստական հասարակության սոցիալական հակասությունները, ներշնչում աշխատավորներին, որ սոցիալական բաժանում ընդհանրապես գոյություն չունի, այլ կա հասարակության ազգային բաժանում միայն։ «Ազգերի միջև եղած հարաբերությունները XX դարում,— գրում է ամերիկացի գաղափարախոս Ջ. Յոստը,— մարդկության համար ունեն նույնպիսի նշանակություն, ինչպիսին ունեին հարաբերությունները մարդու և բնության միջև՝ նախնադարյան ժամանակաշրջանում»։

Միաժամանակ նրանք զրպարտում են մարքսիզմ-լենինիզմի վերաբերմունքն ազգային հարցի նկատմամբ։ Այսպես, մի ժամանակ այդ փորձերը բացահայտորեն արտահայտվեցին անգլիացի «սովետագետ» Ռոբերտ Կոնքվեստի



զրպարտչական գրքույկում։ Այդտեղ նա, մասնավորապես, դնում է այն հարցը, թե ազգի, ազգային հարաբերությունների և ազգային քաղաքականության պրոբլեմները ինչպիսի տեղ են գրավում մարքսիզմ-լենինիզմի տեսության մեջ։ Բազմաթիվ մեջբերումներ անելով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների և սովետական հետազոտողների աշխատություններից և ոչ մի անգամ չասելով, թե երբ, ինչ առիթով, կոնկրետ ինչպիսի հանգամանքներում են արտահայտվել այդ դրույթները, Կոնքվեստը հետևություն է անում, թե մարքսիստները, իբր, ոչ մի հետաքրքրություն չեն ցուցաբերում ոչ ժողովուրդների ազգային անկախության, ոչ նրանց ազգային գիտակցության նկատմամբ, նրանք իբր «ազգային գիտակցությունը» համարում են «հնացած ֆենոմեն» և «ազգային հարցը զոհաբերում են ուրիշ նկատառումների», այսինքն՝ պրոլետարական սոցիալիստական հեղափոխության շահերին, կարծես դրանք կարելի է հակադրել միմյանց։

Ի հակադրություն բուրժուական գաղափարախոսության, մարքս-լենինյան գիտությունն ազգային հարաբերությունները քննության է առնում կոնկրետ պատմական տեսանկյունից, որը ենթադրում է ժողովուրդների ազգային առանձնահատկությունների և ավանդույթների խիստ հաշվառում։

Սոցիալիստական ազգերի ձևավորման ու մերձեցման համար հսկայական նշանակություն ունեցավ ազգերի ինքնորոշման հարցի, ազգային և սոցիալական հարցերի օրգանական կապի, ազգի և պետության պրոբլեմների լենինյան դիրքորոշումը։ Վ. Ի. Լենինը ո՛չ միայն տեսականորեն հիմնավորում էր ազգերի ինքնորոշման իրավունքի նշանակությունը հասարակական պրոգրեսի համար, այլև մեր երկրի փորձով ցուցադրեց այդ իրավունքի հետևողական կենսագործման օրինակը։ Ըստ որում ՍՍՀՄ ժողովուրդների ազգային միասնության զարգացումն ու ամրապնդումը իրականացվում էին պրոլետարական-դասակարգային, ինտերնացիոնալ հիմքի վրա։ Եվ այդ բանը հնարավոր եղավ շահագործող դասակարգերի վերացումից հետո միայն, որի շնորհիվ սովետական հասարակության մեջ գոյացավ յուրաքանչյուր ազգության սոցիալական միատարրություն։

Նախկին ցարական Ռուսաստանի ժողովուրդները ինքնորոշվեցին և դարձան սոցիալիստական։ Նրանց համար խորթ դարձավ կապիտալիստական հասարակության ազգերի շահերի, ազգային բնավորության և կուլտուրայի դասակարգային երկատվածությունը։ Պատմության մեջ առաջին անգամ կազմավորվեցին նոր տիպի ազգեր, որոնք կապիտալիստական հասարակության ազգերից արմատականորեն տարբերվում են իրենց տնտեսական հիմքով, դասակարգային կառուցվածքով, քաղաքական կարգով և հոգևոր կերպարանքով։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հիման վրա սովետական ազգերի և ազգությունների միջև հաստատվեցին եղբայրական հարաբերություններ։

Սոցիալիստական ինտերնացիոնալիզմը ազգամիջյան հարաբերությունների նոր տիպ է, որը ձևավորվում և զարգանում է սոցիալիստական ուղին թևակոխած ազգերի և ազգությունների բարեկամության, լիակատար իրավահավասարության, փոխադարձ հարգանքի, համակողմանի եղբայրական համագործակցության; քաղաքական, տնտեսական, ռազմական և կուլտուրական փոխօգնության հիման վրա։ Այդ ամենը, բնականաբար, փոխեց ազգի էությունը, որի իսկական միասնությունն առաջին անգամ ձևավորվեց սոցիալիզմի ժամանակ։ Միասնություն, որը ո՛չ միայն չի հակասում ժողովուրդների ինտերնացիոնալ համախմբմանը, այլ, ընդհակառակը, օրինաչափորեն ենթադրում է այն։

Կապիտալիստական մասնավոր սեփականության վերացմամբ, Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակի շնորհիվ կյանքի բոլոր բնագավառներում սկսվեց իրականացվել նախկին ցարական Ռուսաստանի ժողովուրդների փաստական հավասարեցման կուրսը։ Ամենից առաջ մեծ աշխատանք կատարվեց մեր երկրի ազգերի և ազգությունների պետական կառուցվածքի ոլորտում։

Ցարական Ռուսաստանը բնութագրելով որպես «ժողովուրդների բանտ», Վ. Ի. Լենինը մշակեց ազգերի կամավոր միավորման միանգամայն նոր ծրագիր։ Բոլոր սովետական ժողովուրդների միավորումն ընդհանուր պետական միության մեջ հնարավորություն ընձեռեց միաձուլելու նրանց կամքն ու ջանքե-

րը՝ սոցիալիստական հասարակարգի կառուցման համար մղվող պայքարում։ Իսկ ՍՍՀՄ-ում սոցիալիստական հասարակարգի կառուցմամբ հաջողությամբ լուծվեց նաև ազգային հարցը, հաստատվեց մեր երկրի բոլոր ժողովուրդների սոցիալիստական եղբայրությունը։

Մարդկության պատմության մեջ ոչ մի բազմազգ ֆեդերացիայում չի իրականացվել միության ու նրա ազգային բաղադրամասերի ֆունկցիաների ու լիազորությունների այնպիսի արդարացի բաշխում, ինչպես սովետական ֆեդերացիայում և մյուս սոցիալիստական երկրներում։ Ամերիկյան իմպերիալիզմը յուրովի է «լուծել» ազգային պրոբլեմն իր երկրում. յուրաքանչյուր տերիտորիա անեքսիայի ենթարկելուց և այն նահանգի վերածելուց հետո, ֆեդերալ իշխանությունները ոչնչացնում էին հնդկացի բնակչությանը։ Միայն սովետական ֆեդերատիվ պետության մեջ է ազգային հարցը լուծվել երկրի ընդհանուր շահերն ապահովելու հիման վրա, միաժամանակ հաշվի առնելով հանրապետությունների յուրահատուկ շահերը։

Սոցիալիստական շինարարության տարիներին սովետական բոլոր միութենական հանրապետություններում առաջացան ու զարգացան արդյունաբերական արտադրության նոր ճյուղեր, կառուցվեցին տասնյակ ու հարյուրավոր ֆաբրիկաներ, գործարաններ։ Նյութական միջոցների և ջանքերի, աշխատանքային ռեսուրսների համակենտրոնացումը հնարավորություն ընձեռեց ազգային հանրապետություններում ստեղծելու բարձր զարգացած արդյունաբերություն, խոշոր մեքենայացված գյուղատնտեսություն։ Չպետք է մոռանալ, որ մեր երկրի, հատկապես նախկին ցարական Ռուսաստանի ծայրամասերում ապրած ժողովուրդներն ստիպված էին ամեն ինչ սկսել բառացիորեն զրոյից, չէ՞ որ ցարիզմի ժամանակ նրանք գտնվում էին զարգացման ֆեոդալական կամ կիսաֆեոդալական ստադիայում։

«Սոցիալիզմը,— գրել է Վ. Ի. Լենինը,— կազմակերպելով արտադրությունը առանց դասակարգային ճնշման, ապահովելով պետության բոլոր անդամների բարեկեցությունը՝ դրանով իսկ լիակատար ազատություն է տալիս բնակչության «համակրանքներին» և հենց սրանով էլ հեշտացնում և վիթխարիորեն արագացնում է ազգերի մերձեցումն ու միաձուլումը» (Երկեր, հ. 22, էջ 437)։

Կապիտալիզմի գաղափարախոսները, ի վիճակի չլինելով թաքցնել այն ակնառու արմատական փոփոխությունները, որոնք սոցիալիստական շինարարության ընթացքում տեղի են ունեցել սովետական ազգերի և ազգությունների տնտեսական և քաղաքական հիմքում, դասակարգային կառուցվածքում և հոգևոր նկարագրում, փորձում են ՍՍՀՄ ժողովուրդների կուլտուրական աճը ներկայացնել որպես նրանց համահարթում։ Այսպես, բուրժուական ապրելակերպի մունետիկներից մեկը՝ Լ. Գոուլդհագենը, գրում է, որ ազգային փոքրամասնությունների մեծ մասի նյութական հաջողությունները, որքան էլ տպավորիչ լինեն դրանք, ձեռք են բերվել հոգևոր և կուլտուրական սահմանափակումների և նրանց անհատական հատկանիշները դրսից սահմանելու հաշվին։

Այս բացահայտ կեղծարարություն է։ Հենց ազգային կուլտուրաներն են, որ իրենց բարձրագույն արտահայտությունն են գտել սոցիալիզմի ժամանակ։ Կուլտուրաների մերձեցումը և փոխհարստացումը հանգեցնում են ոչ թե միօրինակության, այլ գեղարվեստական կուլտուրայի ժանրերի, ոճերի, պատկերման զանազան միջոցների բազմազանության աճի։

Հակակոմունիստական գրականության մեջ առանձնապես շատ են աղմկում ՍՍՀՄ-ում լեզվական ասիմիլյացման կարծեցյալ պրոցեսների, այլալեզու ժողովուրդների այսպես կոչված «ռուսացման» մասին։ Բայց նման պնդումներն անհիմն են։ Տակավին հեղափոխությունից առաջ Վ. Ի. Լենինը հետևողականորեն հանդես էր գալիս բոլոր լեզուների իրավահավասարության օգտին։ Հեղափոխությունից հետո ո՛չ միայն վերացվեց լեզվական ամեն մի արտոնություն, այլև կոնկրետ միջոցներ ձեռնարկվեցին նախկին Ռուսաստանի ժողովուրդների լեզուները զարգացնելու նպատակով, որի շնորհիվ ՍՍՀՄ-ի մոտ 50 ազգություններ առաջին անգամ գիր և գրականություն ստեղծեցին մայրենի լեզվով։ Այժմ Սովետական Միության գրականությունը հրատարակվում է 70 լեզուներով, այն



դեպքում, երբ նախահեղափոխական գրականությունը լույս էր տեսնում ընդամենը 13 լեզուներով։

Այն ժամանակ, երբ հին Ռուսաստանում ներկայիս գրեթե բոլոր միութենական հանրապետությունների տարածքում չեն եղել բուհեր և գիտահետազոտական ինստիտուտներ, իսկ գրագրությունն ու գործավարությունը վարում էին միայն ռուսերեն, ՍՍՀՄ-ում ստեղծվել է ազգային լեզուներով դպրոցների, տեխնիկումների, բուհերի լայն ցանց, մայրենի լեզվով են իրականացվում նամակագրությունն ու գործավարությունը տեղական մարմիններում, գրականության և պարբերական մամուլի հրատարակումը, ռադիո և հեռուստատեսային հաղորդումները։

Սովետական Միությունում ազգային լեզուների զարգացմանը մեծ ուշադրություն է հատկացվում ո՛չ միայն այն պատճառով, որ դա ազգի իրավահավասարության ցուցանիշներից է։ Կան նաև ավելի խոր, օբյեկտիվ պատճառներ։ Մայրենի լեզվի զարգացումը ժողովրդական լայն զանգվածներին հնարավորություն է ընձեռում ամենակարճ ժամկետում բարձրացնելու իրենց կուլտուրական մակարդակը, ստեղծելու նորանոր կուլտուրական արժույթներ։ Ազգային լեզուները մեծ դեր են կատարում մեր բազմազգ երկրում կոմունիստական գաղափարների տարածման և յուրացման գործում։

Միաժամանակ Վ. Ի. Լենինը պրոգրեսիվ երևույթ էր համարում ռուսաց լեզվի տարածումը։ Բայց նա միշտ բացառում էր հարկադրականության տարրը այդ գործում։ Եվ պրակտիկան լիովին ապացուցեց առաջնորդի իրավացիությունը։ Մայրենի լեզվի հետ միասին ռուսաց լեզվի կամավոր ուսումնասիրումը միլիոնավոր զանգվածների կողմից փաստ է դարձել հենց սոցիալիզմի պայմաններում, ազգերի լիակատար իրավահավասարության և ազատ զարգացման պայմաններում։

ՍՍՀՄ-ում ռուսերենը, որպես ամենազարգացած համաշխարհային լեզուներից մեկը, հասարակական վիթխարի ֆունկցիա է կատարում որպես ազգամիջյան լեզու։ Այն նպաստում է ժողովուրդների ու նրանց կուլտուրաների մերձեցմանը։ ՍՍՀՄ-ում ռուսաց լեզվի ուսումնասիրության նկատմամբ եղած մեծ ձգտումը միանգամայն բնական է և «ռուսացման» ազգայնական ոչ մի խրտվիլակ չի կարող սովետական մարդկանց ստիպել հրաժարվել ռուսաց լեզվին տիրապետելու իրենց իրավունքից (այլ ոչ թե պարտականությունից, ինչպես փորձում է ներկայացնել բուրժուական պրոպագանդան)։

Մեր երկրում ազգերի աննախընթաց ծաղկումը, ազգային հարաբերությունների զարգացումը հնարավոր եղան սոցիալիստական կարգի, կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման շնորհիվ։

Յուրաքանչյուր սովետական քաղաքացի, բնականաբար, իրեն համարում է այս կամ այն ազգության ներկայացուցիչը, նրան հատուկ է ազգային հպարտությունը, որը ենթադրում է նաև հարգանք մյուս ժողովուրդների, նրանց ավանդույթների, կուլտուրայի նկատմամբ։ Միաժամանակ մեր երկրի բոլոր ազգերի և ազգությունների աշխատավորներն իրենց համարում են սովետական ժողովրդի միասնական հանրության ներկայացուցիչներ, որոնք օժտված են սովետական բնավորության այնպիսի ընդհանուր գծերով, ինչպիսիք են՝ նվիրվածությունը կուսակցության գործին, հայրենասիրությունը, պրոլետարական ինտերնացիոնալիզմը, հասարակական պարտքի բարձր գիտակցությունը, նոր վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, կոլեկտիվիզմը, ընկերական փոխօգնությունը, սոցիալիստական մարդասիրությունը, ազգային և ռասայական թշնամանքի անհանդուրժողականությունը։

* * *

Ներկայումս իմպերիալիստական պրոպագանդան չի ձգտում բնակչությանն ուղղակի ու բացահայտորեն գրգռել սոցիալիզմի դեմ։ Ընդհակառակը, այն շեշտում է իր լոյալությունը սոցիալական պրոգրեսի նկատմամբ, ճգնում ցույց տալ, որ ինքը «պաշտպանում է աշխատավորների շահերը, հանդես է գալիս

նրանց անունից»։ Հակակոմունիստական կենտրոններն ու արտասահմանյան հակասովետական ազգայնական կազմակերպություններն այժմ սկսել են ավելի լրիվ հաշվի առնել յուրաքանչյուր միութենական հանրապետության սոցիալական կառուցվածքը, ավելի շատ ուշադրություն նվիրել դրա զարգացման պատմական պայմանների վերլուծությանը, հարմարվելով բնակչության զանազան խավերին։

Հակակոմունիզմի գլխավոր նպատակն է՝ սովետական մարդկանց հոգում բորբոքել նացիոնալիզմի զգացում, թշնամություն սերմանել սովետական ժողովուրդների միջև, սեպ խրել ժողովուրդների բարեկամության միջև։ «Նացիոնալիզմը յուրաքանչյուր բազմազգ պետության զարգացման օրինաչափ երևույթն է»,— հայտարարում է ամերիկացի հայտնի «սովետաբան» Ռիչարդ Փայփսը։

Բուրժուական գաղափարախոսները հույսները դնում են այն բանի վրա, որ նացիոնալիզմի «ճակատագրական պայթման ալիքը» բաժան-բաժան կանի և կկազմալուծի աշխատավոր մասսաների համաշխարհային հակաիմպերիալիստական ճակատը։ Նրանք հայտարարում են, թե ազգային հարցը «անլուծելի» է, ձգտում են ապացուցել, որ աշխարհը թևակոխել է «նացիոնալիզմի դարը», երբ կենտրոնախույս ուժերը «անխուսափելիորեն» տանում են դեպի բազմազգ կազմավորումների և երբեմն միաձույլ շարժումների թուլացում և կազմալուծում, և առաջին հերթին՝ սոցիալիստական համագործակցության և համաշխարհային կոմունիստական շարժման տարանջատում։

Հակակոմունիզմով և հակասովետիզմով ստգորված բուրժուական նացիոնալիզմը ընդհանուր գաղափարական պլատֆորմ է ծառայում բավական տարասեռ գաղափարական հոսանքների համար. այսօր այն մի հարկի տակ միավորում է բուրժուական պահպանողականներին և լիբերալներին, աջ ռեֆորմիստներին, «ձախերին»։

Սերունդները հիշում են այս կամ այն ժողովրդի հասարակական զարգացման և ամբողջ միջազգային իրադրության վրա բուրժուական նացիոնալիզմի կործանարար ներգործության ոչ քիչ օրինակներ։ Բավական է այստեղ հիշատակել թեկուզ դրանցից մեկը՝ նացիոնալիստական հողի վրա աճած գերմանական ֆաշիզմը, որպեսզի լրիվ չափով գնահատենք ռեակցիոն նացիոնալիզմի ակտիվացման մեջ թաքնված սպառնալիքը։ Մարդկությունը կարողացավ մեծ զոհերի գնով ճզմել հիտլերյան ֆաշիզմը։ Սակայն «հազարամյա ռայխի» գաղափարը չի չքացել այն ստեղծողի հետ միասին։ Այսօր այն ապրում է արևմտագերմանական ռևանշիզմի և նեոֆաշիզմի մեջ։ Համաշխարհային տիրապետության դոկտրինան ուղեցույց սկզբունք է դարձել նաև ամերիկյան իմպերիալիզմի արտաքին քաղաքականության համար, որը դրսևորվում է ամենաբազմապիսի եղանակներով՝ սկսած միջուկային շանտաժից ու ՄԱԿ-ում գործադրած հեգեմոնիստական խարդավանքներից, վերջացրած ժանդարմական գործողություններով ու ռազմական բլոկների ստեղծմամբ։

Արտասահմանում զարգացած սոցիալիզմի հասունների կոնկրետ փաստերի նկատմամբ հետաքրքրությունների աճն ուղեկցվում է նաև հակասովետիզմի, հակակոմունիզմի պրոպագանդայի վերաբերյալ աշխարհի ժողովուրդների տածած անվստահության խորացմամբ։ Ուստի բուրժուական գաղափարախոսները ռեալ սոցիալիզմին հակադրում են սոցիալիզմի արհեստականորեն իրենց ստեղծած զանազան մոդելները, փոխում հակակոմունիստական և հակասովետական պրոպագանդայի ձևերն ու մեթոդները։ Իմպերիալիստական ռեակցիան հույսը դրել է սոցիալիզմի պառակտման, դրա սոցիալ-տնտեսական հիմքերի թուլացման վրա։ Այն տարբեր միջոցներով զրպարտում է ու կեղծում, ծուռ հայելու մեջ ներկայացնում Սովետական Միության, սոցիալիստական մյուս երկրների սոցիալ-տնտեսական օբյեկտիվ իրավիճակը։

Կյանքը բազմիցս մերժել է բուրժուական պրոպագանդայի նման գործողությունները։ Ո՛չ զանգվածային գաղափարական դիվերսիան, ո՛չ ռևիզիոնիստների, ռեֆորմիստների և հակահեղափոխական մյուս ուժերի հարձակումները չեն կարող թուլացնել սոցիալիզմն ու նրա դիրքերը երկու հակադիր հա-



սարակական սիստեմների միջև մղվող պայքարում։ Սոցիալիզմի սոցիալ-տընտեսական հիմքերն օրավուր ամրապնդվում են ինչպես Սովետական Միությունում, այնպես էլ եղբայրական երկրներում։ Հաջողությամբ զարգանում է սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացման պրոցեսը։

Բուրժուական պրոպագանդան չի խորշում բացահայտ զրպարտանքից ու հերյուրանքից։ Աչք փակելով փաստերի առջև, այն տարիներ շարունակ բարբաջում է, թե իբր ՍՍՀՄ-ում ազգերն «անիրավահավասար են», կենտրոնը «շահագործում է» ծայրամասերը և նման այլ զրպարտանքները։ Չնայած իմպերիալիզմի գաղափարախոսների ու քաղաքագետների ջանքերը դատապարտված են ձախողման, նրանք դիմում են ամեն միջոցի՝ կեղծելու ազգային հարցի լուծման սովետական փորձը։ Այդ փորձը հատկապես վառ դրսևորվեց ՍՍՀ Միության կազմավորման 50-ամյակի և սովետական նոր Սահմանադրության ընդունման կապակցությամբ։ Այս առնչությամբ նույնպես հակակոմունիզմը փորձում էր նացիոնալիզմն օգտագործել որպես գործիք՝ սոցիալիստական հասարակությունը ներսից խարխլելու և քայքայելու համար։ Որպես կանոն, իմպերիալիզմի գաղափարախոսները հաճախ հարձակումներ են գործում սոցիալիզմի ընդհանուր սկզբունքների ու հիմքերի դեմ, մերթ կեղծավորաբար չափազանցնում «ազգային առանձնահատկությունները»։

Բուրժուական պրոպագանդիստական մարմինները խնամքով մշակում են սովետական միութենական հանրապետությունների դեմ ուղղված գաղափարական էքսպանսիայի մեթոդներն ու ձևերը։ Նրանք իրենց պրոպագանդան տարբերակում են որոշակի ռեգիոնների համար, հաշվի առնելով յուրաքանչյուր միութենական հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացումը, այս կամ այն ժողովրդի ազգային հատկանիշները, նրանց ավանդույթներն ու առանձնահատկությունները։

Ամերիկացի մոլի «սովետաբանները» անընդհատ կազմակերպում են հատուկ կոնֆերանսներ ու սիմպոզիումներ, որտեղ բարձրացվում են ՍՍՀՄ-ում ազգային շինարարության հարցերը։ Ելնելով այն ընդհանուր դրույթից, որ ժամանակակից պայմաններում «կոմունիզմը կարելի է ջախջախել միայն նացիոնալիզմի օգնությամբ», իմպերիալիզմի ջատագովները միաձայն խորհուրդ են տալիս գրգռել գլխավորապես հակասովետական նացիոնալիզմը։ Գաղափարական այդ դիվերսիայի նպատակն է, նախ, զրպարտել սոցիալիստական կարգը, այն ներկայացնելով որպես անընդունակ՝ լուծելու ազգային հարցը և, երկրորդ, բորբոքել զանազան ազգայնական տրամադրություններ։

Քողարկելով իրենց մտադրությունները, հակասովետական գաղափարախոսներն այնպես են ձևացնում, օրինակ, թե իրենց հետաքրքրում է՝ ՍՍՀՄ-ի որքան քաղաքացիներ «թեյ են խմում ուկրաինական շաքարով», «հագնում են ուզբեկական բամբակենի» և այլն։ Նման դատողությունները կոչված են հիմնավորելու կեղծիքը ծայրամասերի շահագործման մասին, ակտիվացնելու նացիոնալիզմը, լրացնելու «Ամերիկայի ձայն», «Բի-Բի-Սի», «Գերմանական ալիք» ռադիոկայանների ծրագրերը, արևմտյան պարբերական հրատարակությունների էջերը։

Բայց նման դատողությունները ծայրեծայր կեղծ են։ Սովետական Միությունը միասնական ժողովրդատնտեսական ամբողջություն է։ ՍՍՀՄ-ի ազգային եկամուտն ստեղծվում է սովետական ժողովրդի աշխատանքով, որի բաժանումն ու մասնագիտացումը իրականացվում են համապետական մասշտաբով և չեն բխում ազգային հատկանիշից։ Ճիշտ այդպես էլ «ուկրաինական շաքարի» և «ուզբեկական բամբակի» մեջ ներդրված է պողպատ և ածուխ, մեքենաներ և կոմբայններ, հումք և պատրաստի արտադրատեսակներ արտադրող բոլոր հանրապետությունների քաղաքացիների աշխատանքը։

Յուրաքանչյուր անկանխակալ մարդու համար պարզ է, որ ցարական կայսրության անցյալում հետամնաց ծայրամասերի տնտեսական վերելքն ապահովված է սոցիալիզմի առավելություններով, ազատագրված ժողովուրդների ընդհանուր ջանքերով, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ։ Բայց այդ բանը չեն ցանկանում հասկանալ իմպերիալիստական ռեակցիայի ներկայացուցիչ-

ները։ Թեև բուրժուական գաղափարախոսներն այժմ ավելի ու ավելի սակավ են օգտվում «ռուսական գաղութատիրություն» տերմինից, բայց չեն մոռանում պրոպագանդայի այդ տարբերակը։

Բուրժուանացիոնալիստական պրոպագանդայի կարևորագույն եղանակների զինանոցում առաջվա պես մեծ տեղ է հատկացվում «ազգային կոմունիզմի» թեզի պրոպագանդմանը։ Պրոպագանդիստական այդ եղանակը նոր չէ հակակոմունիստների և զանազան վտարանդիական նացիոնալիստական կենտրոնների հակասովետական գործունեության մեջ։

Բուրժուական գաղափարախոսները ձգտում են ամեն կերպ նսեմացնել միութենական հանրապետությունների նվաճումները։ Մի կողմից նրանք ընդունում են էկոնոմիկայի, կուլտուրայի բնագավառում, ժողովրդական զանգվածների կենսամակարդակի բարձրացման գործում այդ հանրապետությունների ձեռք բերած մեծ հաջողությունները, մյուս կողմից աշխատում են ոչ ռուս ժողովուրդներին հակադրել ռուս ժողովրդին։

Բուրժուական պրոպագանդան պնդում է, որ արդյունաբերության, գյուղատնտեսության, գիտության և կուլտուրայի օջախների բուռն զարգացման հետևանքով և դրա հետ կապված բնակչության առհասը միութենական մյուս հանրապետություններից սպառնում է Միջին Ասիայի ժողովուրդների կենսաբանական գոյությանը։ Այսօր նրանք Միջին Ասիայի ժողովուրդների հսկայական կուլտուրական նվաճումները ներկայացնում են ոչ թե որպես սովետական կառավարության կուլտուրական քաղաքականության արդյունք, այլ որպես «ռուսացման» քաղաքականության դեմ ուղղված տարերային, ինքնուրույն շարժում՝ հանուն ազգային ինքնապահպանման և ինքնահաստատման։ Բայց «սովետագետների» այդ նոր մեկնաբանությունները բացահայտ հակասության մեջ են սովետական կուլտուրայի զարգացման օբյեկտիվ պրոցեսի հետ։ Չէ՞ որ մեր կուսակցության կուլտուրական քաղաքականությունը ելնում է այն բանից, որ յուրաքանչյուր ազգի և ամբողջ սովետական ժողովրդի սոցիալիստական կուլտուրան զարգանում է հաջորդայնության հիման վրա, անցյալում մարդկության ստեղծած ամենայն արժեքավորի, լավագույնի յուրացման հիման վրա։ Սոցիալիստական կուլտուրան ներառնում է անցյալի ազգային կուլտուրական արժույթների լավագույն ավանդույթները, ուստի կուլտուրական ժառանգության ուսումնասիրումն ու յուրացումը կազմում են սովետական պետության գործունեության կարևոր բնագավառը նոր կուլտուրայի ստեղծման գործում։

Արդի բուրժուական պրոպագանդայի զինանոցում կան ուրիշ եղանակներ ու մեթոդներ ևս։ Օպերատիվ նորություններ հաղորդելու օգնությամբ նրանք ձգտում են ազդեցություն գործել ընթերցողների և ունկնդիրների վրա՝ այս կամ այն փաստի կամ իրադարձության գնահատման հարցում, մարդկանց մեջ անվստահություն սերմանել սեփական երկրի ինֆորմացիայի աղբյուրների և վստահություն՝ իմպերիալիստական պրոպագանդայի նկատմամբ։

Եվ, այնուամենայնիվ, իրենց պրոպագանդայում բուրժուական գաղափարախոսները երբեմն դիմում են նաև այնպիսի ձևերի, որոնք կարող են շփոթեցնել առանձնապես երիտասարդ անփորձ մարդկանց։

Ահա ինչու նացիոնալիզմի դեմ մղվող պայքարը պահանջում է դրա դրսևորումների նկատմամբ չթուլացող զգոնությունը զուգակցել յուրաքանչյուր ազգի և ազգության ազգային զգացումների ու շահերի հանդեպ ծայրահեղ ուշադիր և հարգալից վերաբերմունքի հետ։ Ժամանակակից նացիոնալիզմի, դրա դեմ մղվող պայքարի ուղիների ու միջոցների վերլուծությունը պահանջում է խիստ տարբերություն դնել «ազգային» և «ազգայնական» հասկացությունների միջև։

Սոցիալիզմը չի վերացնում ազգային զգացմունքները, ընդհակառակը, ամրապնդում է մեծ ու փոքր ամեն մի ազգի ներկայացուցիչների արժանապատվությունը։ Սոցիալիզմը մարդկանց ազգային զգացմունքներին հաղորդում է նոր, սոցիալիստական խոր բովանդակություն, որին խորթ են ազգային եսասիրությունն ու շովինիստական սնապարծությունը։ Դեռ սովետական իշխանության առաջին տարիներին, 1922 թվականի նոյեմբերին, անգլիական թերթերից մեկի թղթակցի հետ ունեցած հարցազրույցում Վ. Ի. Լենինը նշել է.



«Ազգային հարցը հինգ տարվա ընթացքում լուծելու մեր փորձը մի պետության մեջ, որն իր մեջ պարունակում է ազգությունների մի այնպիսի բազմազանություն, որը հազիվ թե կարելի լինի գտնել այլ երկրներում, մեզ ամբողջապես համոզում է այն բանում, որ նման դեպքերում միակ ճիշտ վերաբերմունքը ազգերի շահերի հանդեպ այն կլինի, որ նրանք առավելագույն չափով բավարարվեն, և ստեղծվեն պայմաններ, որոնք անկարելի են դարձնում կոնֆլիկտների ամեն մի հնարավորություն այս հողի վրա (Երկեր, հ. 33, էջ 456—457)։

Մեր երկրի բոլոր ժողովուրդների սոցիալական և ազգային առաջընթացն ապահովող սոցիալիստական կարգի մեծ առավելությունների անհերքելի վկայությունն են սովետական իրականությունը և միութենական հանրապետությունների ու սոցիալիստական համագործակցության երկրների հաջողությունները։

Գիտակցելով իր պատասխանատվությունը համաշխարհային հեղափոխական շարժման բախտի համար, ՍՄԿԿ-ն մարքս-լենինյան մյուս կուսակցությունների հետ միասին հետևողականորեն ու անդուլ պայքարում է բուրժուական նացիոնալիզմի դեմ։ Մարքսիստ-լենինյանները միաժամանակ և՛ հայրենասերներ են, և՛ ինտերնացիոնալիստներ, նրանք մերժում են և՛ ազգային սահմանափակությունը, և՛ ազգային շահերի ժխտումը կամ թերագնահատումը։ ՍՄԿԿ-ն պայքարում է հակաիմպերիալիստական ուժերի միավորման համար, միջազգային կոմունիստական շարժման միասնության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հաղթանակի համար։

Ճշմարտությունը սոցիալիստական կարգի և մեր մյուս ժողովուրդների մասին հետևողականորեն իր համար ճանապարհ է հարթում դեպի ամբողջ աշխարհի ժողովուրդների միտքն ու սիրտը, և բուրժուական պրոպագանդայի ոչ մի հերյուրանք չի կարող խանգարել սովետական մարդկանց և սոցիալիստական երկրների ժողովուրդներին՝ հաջողությամբ կառուցելու իրենց լուսապայծառ ապագան՝ կոմունիզմը։

# ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՄԱՅՐՈՒՂԻՆ Է

Ռ. Հ. ՇԱԽԿՈՒԼՅԱՆ

ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ, երբ ռեալ սոցիալիզմը դարձել է համաշխարհային հասարակական-քաղաքական և սոցիալ-տնտեսական զարգացման վճռական ուժը, բուրժուական գաղափարախոսությունը նոր ուղիներ և ուղղություններ է որոնում՝ «քննադատելու» մարքսիզմ-լենինիզմը, սոցիալիզմի կառուցման պրակտիկան։ Եվ պատահական չէ, որ ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց ուժեղացնել պայքարը մարքսիզմ-լենինիզմին թշնամի հայացքների, հակակոմունիզմի, բուրժուական և ռևիզիոնիստական տեսությունների դեմ։

Ռեալ սոցիալիզմի հաջողությունների յուրաքանչյուր նոր փուլ Արևմուտքում ուղեկցվում է դրա զանազան կողմերի քննադատության նորանոր ուղղությունների երևան գալով՝ ընդհուպ մինչև բազմապիսի «խորհուրդները»՝ մեր հասարակարգի քաղաքական, պետական, սոցիալ-տնտեսական և այլ ինստիտուտներ փոխարինելու վերաբերյալ։

Ներկայումս ռեալ սոցիալիզմը հանդես է գալիս որպես սոցիալիստական քաղաքակրթության նոր տիպ, որը, լուծելով կոմունիստական շինարարության ներքին վիթխարի խնդիրները, միաժամանակ ակտիվորեն ազդում է միջազգային ասպարեզում առաջադիմական բոլոր փոփոխությունների ողջ ընթացքի վրա։

Քաղաքակրթության սոցիալիստական տիպը՝ ռեալ սոցիալիզմը, լուծել է պատմական այնպիսի խնդիրներ, ինչպես արտադրության միջոցների մասնավոր սեփականության վերացումն է և այդ հիման վրա ազատ աշխատանքի հաստատումը, սոցիալական և ազգային ճնշման բոլոր ու ամեն տեսակ ձևերի, ճգնաժամերի ու գործազրկության վերացումը։ Սոցիալիզմը սահմանադրականորեն հաստատել է քաղաքացիների սոցիալ-քաղաքական հավասարությունը, նրանց մասնակցությունը հասարակական ու պետական գործերի կառավարմանը։ Սոցիալական առումով ռեալ սոցիալիզմն ապահովում է ժողովրդի նյութական և կուլտուրական բարեկեցությունը, անհատի համակողմանի զարգացումը, ընձեռում աշխատանքի, բնակարանի, առողջության պահպանության, կրթություն, մասնագիտություն ստանալու, անհատի ազատության և այլ սահմանադրական իրավունքներ։

Համախառն արտադրանքի աճի բարձր տեմպերը, ժողովրդական տնտեսության անճգնաժամ զարգացումը, տնտեսական հզորության ավելացումը սոցիալիզմի բնորոշ հատկանիշներն են։ Ի հակադրություն սոցիալիզմի, կապիտալիստական հասարակարգում զարգացումն ուղեկցվում է աշխատանքի ու կապիտալի միջև եղած հակասության հետագա սրմամբ, իմպերիալիստական երկրների միջև եղած հակամարտության խորացմամբ, վալյուտա-ֆինանսական, հումքային, վառելիքային ճգնաժամի, ինֆլյացիայի, գործազրկության աճի և բուրժուական հասարակության ամբողջ սոցիալ-քաղաքական կառուցվածքի նեխման ուժեղացմամբ։ Եվ պատահական չէ, որ այդպիսի իրա-



դրության մեջ Արևմուտքի մոնոպոլիստական կապիտալը ո՛չ միայն օգտագործում է սոցիալիզմի դեմ գաղափարական պայքարի արդեն ունեցած ձայնափողերը, այլև որոնում է պրոպագանդիստական նոր ուժեր ու միջոցներ, մեթոդներ ու ձևեր՝ ռեալ սոցիալիզմի նվաճումները նսեմացնելու կամ ժխտելու համար։ Ընդ որում բուրժուական գաղափարախոսությունը ձգտում է ռևիզիոնիզմի, ռեֆորմիզմի, տրոցկիզմի և այլ հին կոնցեպցիաները վերակենդանացնել ու նորացնել մաոյականության ձեռնածություններով, հրապարակ հանելով անարխոսինդիկալիստական կանխադրույթները, կեղծ մարքսիստական գաղափարներով զգեստավորելով դրանք։ Բուրժուական գաղափարախոսությունն իր պայքարում օգտագործում է նաև մարքսիզմը ուրացած զանազան մարդկանց։ Իսկ ովքե՞ր են ռեալ սոցիալիզմի այդ նորահայտ քննադատները։ Նրանք առաջին հերթին «նեոմարքսիստներն են» և «նոր ձախերը», բուրժուական նշանավոր «մարքսագետները», որոնք հանդես են գալիս Արևմուտքի այն երիտասարդ մտավորականության հետ, որը դժգոհ լինելով կապիտալիստական կարգից և ձգտելով ելք գտնել ստեղծված քաղաքական ու սոցիալ-տնտեսական փակուղուց, հայացքն ուղղել է դեպի մարքսիզմը։ Փաստ է սակայն, որ երիտասարդության այդ մասը դիմում է մարքսիզմ-լենինիզմին, այն զուգակցելով ռևիզիոնիզմի, ռեֆորմիզմի, մաոյականության և տրոցկիզմի հետ, որը այդ երիտասարդությանը հեռացրել է գիտական մարքս-լենինյան տեսությունից և գցել մոնոպոլիստական բուրժուազիայի գաղափարական ծուղակը։

Ստեղծելով մարքսիզմի իրենց «նոր տարբերակները», «նեոմարքսիստները» և «նոր ձախերը» ժխտում են բանվոր դասակարգի դերը՝ որպես հասարակական վերափոխումների սուբյեկտի, պրոլետարիատի դիկտատուրայի՝ արտադրության հիմնական միջոցների հանրայնացման և շահագործողական հարաբերությունների վերացման միակ գործիքի։ Արդի պայմաններում բանվոր դասակարգի պատմական դերի ժխտումը նրանք բացատրում են այն բանով, որ նրա բուն կազմում տեղի են ունեցել արմատական փոփոխություններ։ Ռեալ սոցիալիզմի դեմ մղած իրենց պայքարում «նեոմարքսիստներն» ու «նոր ձախերը սոցիալիզմի իրենց կոնցեպցիաներն ստեղծելիս օգտագործում և խեղաթյուրում են մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթները, որպեսզի իրենց «գիտական» մշակումներին տան ծանրակշիռ ու համոզիչ բնույթ։ Դրա հետ միաժամանակ նրանք հարձակվում են մարքսիզմի վրա որպես «ոչ կատարյալ» տեսական սիստեմի, այն համարելով միմյանցից մեկուսացած, ամեն մի ներքին անհրաժեշտ կապից զուրկ տարրերի մի հավաքածու։ Դրա հետ մեկտեղ նրանք պնդում են, որ հարկավոր է բուրժուական տնտեսագիտության պրոբլեմները լրացնել մարքսիզմ-լենինիզմի դրույթներով։ Արևմուտքում հայտնի քաղաքատնտեսության դասագրքի հեղինակ Պ. Սամուելսոնը նշում է, որ «մարքսիզմը, ըստ երևույթին, չափից դուրս արժեքավոր է, որ կարելի լինի թողնել մարքսիստներին»։

Մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ նման «հետաքրքրությունը» հետզհետե է՛լ ավելի է ուժեղանում, ընդգրկելով գիտական կոմունիզմի տեսության և սոցիալիստական պրակտիկայի բուրժուական մեկնաբանների ավելի ու ավելի լայն շրջաններ։ Այս բնագավառում բավականաչափ ակտիվ են կապիտալիստական աշխարհի այնպիսի գործիչներ, ինչպիսիք են՝ Ռ. Բարրը, Ու. Ռոստոուն, Զ. Բժեզինսկին, ինչպես նաև ակադեմիական ուղղության սոցիոլոգները։

Մարքսի նոր ընթերցումը, Մարքսի «վերածնունդը» որպես վարագույր են ծառայում բուրժուառևիզիոնիստական տնտեսական, պատմական և մարդաբանական հակամարքսիստական նոր կեղծ տեսությունների ստեղծման համար։

«Նեոմարքսիստները», ձգտելով իրենց աշխատությունները հարմարեցնել մարքսիզմ-լենինիզմին, ապարդյուն ջանում են նոր հակասություններ գտնել Մարքսի ուսմունքի մեջ։ Բանն այնտեղ է հասել, որ մի ոմն Մաշերե հայտարարում է, թե անգամ ինքը՝ Մարքսը, ինչպես հարկն է չի կարդացել «Կապիտալը», թե Էնգելսը հարմարվել է գաղափարական պայքարի առօրյա պահանջներին։

Մարքսիզմ-լենինիզմի ժամանակակից կեղծարարների բոլոր ջանքերն ու-

նեն մի խնդիր՝ մարքսիզմի տնտեսական տեսության մեջ գտնել այն, ինչ այնտեղ չկա (այսինքն՝ հակասություններ) և դրան տալ յուրահատուկ և իրենց նպատակներին համապատասխանող ձև, վերանայել այդ ուսմունքի հիմնական դրույթները և մշակել մարքսիզմի «նոր տարբերակներ»։

Էռնեստ Մանդելը՝ IV (տրոցկիստական) ինտերնացիոնալի ղեկավարներից մեկը, իր Մարքսիստական տնտեսական տեսությունը երկհատոր աշխատության մեջ մարքսիստական տնտեսական տեսությունը և ընդհանրապես մարքսիզմը զգեստավորում է մարդաբանական և իրավական նոր հանդերձանքով, որպեսզի հակասականություն ցույց տա մարքսյան տեսության և ռեալ սոցիալիզմի մեջ։

«Նոր ձախերը» (տրոցկիստները, Արևմուտքի մաոյականները) նրա աշխատությունը համարում են իրենց աստվածաշունչը։ Մանդելի գլխավոր թեզիսն այն է, որ ռեալ սոցիալիզմի պրակտիկան և համապատասխանորեն նրա տեսական արտացոլումը՝ սոցիալիզմի քաղաքատնտեսության տիրապետող կոնցեպցիան, իբր հակասում է Մարքսի տնտեսական տեսությանը։ Իբր, սովետական էկոնոմիկան չի կարող սոցիալիզմ կոչվել այդ բառի մարքսյան ըմբռնմամբ և սոցիալիստական բնույթ չունի, քանի որ դրանում գոյություն ունեցող տնտեսական հարաբերությունները հակասում են սոցիալիզմի մարքսիստական ըմբռնմանը (ապրանք, ապրանքային արտադրություն, ապրանքափողային հարաբերություններ, տնտեսական կատեգորիաներ և այլն)։ Ըստ Մանդելի, ապրանքային արտադրությունը և սոցիալիզմն անհամատեղելի են, քանի որ սոցիալիզմի ժամանակ պետք է գոյություն ունենա միայն մարդկային պահանջմունքների լրիվ բավարարում, և տնտեսական հարաբերությունների այն սիստեմը, որի պայմաններում մնում են ապրանքափողային կատեգորիաները և բաշխումը չի կրում ըստ պահանջմունքների բաշխման բնույթ, ուստի, դա «վուլգար սոցիալիզմ» է։

Մանդելը և «նոր ձախերը» մարքսիստական քաղաքատնտեսության հիմնական դրույթները կեղծելու նպատակ հետապնդող իրենց դատողություններում և վարժություններում հասնում են այն անհեթեթ պնդման, թե սոցիալիզմի հաղթանակը կարող է հռչակվել ըստ պահանջմունքների բաշխման դեպքում միայն։

«Նոր ձախերը» այդ հարցը պարզաբանելու ժամանակ շրջանցում են մարքս-լենինյան ուսմունքը կոմունիստական հասարակարգի երկու փուլերի մասին, որտեղ բաշխման հարաբերությունները համապատասխանում են արտադրաուժերի զարգացման մակարդակին։

Բուրժուական «նեոմարքսիստական» դիվերսիան ընդգրկում է ըստ էության ո՛չ միայն մարքսիզմ-լենինիզմի հիմնարար տեսական դրույթները. այն ուղղված է նաև գոյություն ունեցող ռեալ սոցիալիզմի դեմ։

«Նեոմարքսիստները», «նոր ձախերը» անտեսում են քաղաքատնտեսական վերլուծությունը, մարդկային հարաբերությունները կախման մեջ են դնում արտատնտեսական կատեգորիաներից։ «Իսկական սոցիալիզմից» կապիտալիզմի ունեցած տարբերության գլխավոր հատկանիշը նրանք համարում են արտադրության միջոցների օտարումը, որ իբր սոցիալիզմը ևս չի կարող վերջ տալ օտարմանը, որ կապիտալիզմի ու սոցիալիզմի միջև եղած տարբերությունը կարելի է տեսնել միայն օտարման հարցում, այլ ոչ թե արտադրահարաբերությունների մեջ (Է. Ֆիշեր, Ա. Գորց)։

«Նեոմարքսիզմի» գաղափարախոսները բանվոր դասակարգի պատմական դերի մասին մարքսյան ուսմունքը համարում են «վիկտորիանական մարքսիզմի» դարաշրջանի ժառանգություն և ժամանակակից աշխարհի համար ոչ պիտանի և դրանով լայն հնարավորություններ են ստեղծում ժխտելու բանվոր դասակարգի դիկտատուրայի դերը սոցիալիզմի կառուցման գործում։ Նրանց կարծիքով, միակ հեղափոխական ուժը, որն ունակ է վերափոխելու աշխարհը, երիտասարդ մտավորականությունն է։

«Նեոմարքսիստների» կոնցեպցիայում ռեալ սոցիալիզմի ժխտումը բխում է կապիտալիզմի հիմնական հակասության՝ արտադրության հանրային բնույթի



և այդ նույն արտադրության արդյունքների մասնավոր կապիտալիստական յուրացման միջև եղած հակասության ժխտումից։ Հիմնականը «նեոմարքսիստները» համարում են ոչ թե դրա, այլ զարգացած կապիտալիստական երկրների ու չզարգացած երկրների միջև եղած հակասությունը և գտնում, որ անցումը դեպի սոցիալիզմ պետք է ընթանա «հոգեբանական ցնցումների» ուղիով։ Միաժամանակ, մեր դարաշրջանի գլխավոր հակասությունը՝ կապիտալիզմի և սոցիալիզմի միջև եղած հակասությունը, նրանք նենգափոխում են տարբեր երկրների արտադրաուժերի զարգացման մակարդակների հակասությամբ, որը նրանց կարծիքով (և մաոյականների կարծիքով) ժամանակակից տենդենցների ընդհանուր բնութագիրն է, քանի որ դրանք տարբեր ձևերով են դրսևորվում ինչպես կապիտալիզմի, այնպես էլ սոցիալիզմի ժամանակ։

Անտեսելով մարքսիստական քաղաքատնտեսության հասկացությունները, կատեգորիաները, հիմնական դրույթները, ավելի ճիշտ, դուրս մղելով դրանք, «նեոմարքսիստները» արդի զարգացման ընդհանուր ընթացքի սոցիալ-տնտեսական երևույթների նկատմամբ իրենց ընթերցողներին պարտադրում են այնպիսի մոտեցում, որի դեպքում ժամանակակից սոցիալական սիստեմները բնութագրելու համար մի կողմ է շպրտվում արտադրության միջոցների սեփականության ձևը՝ որպես կապիտալիզմի ու սոցիալիզմի տարբերության հիմնական չափանիշ։ Անտեսելով հասարակության տնտեսական բազիսը՝ արտադրահարաբերությունները և իրենց «էթիկական նորմերի» մոդելները կառուցելով սոցիալական նոր սիստեմի համար, նրանք դրանով կասկածի տակ են առնում ռեալ սոցիալիզմը, այսինքն՝ կապիտալիզմը տապալած և սոցիալիզմ կառուցող երկրները համարում են ոչ սոցիալիստական։

Ռեալ սոցիալիզմի իրենց քննադատության մեջ «նեոմարքսիստներն» ու «նոր ձախերը» հասնում են այնպիսի անհեթեթության, որ սոցիալիզմի երկրների էկոնոմիկան հայտարարում են ոչ սոցիալիզմ՝ այդ բառի մարքսյան ըմբռնմամբ։ Իրենց այդ ձգտումով նրանք Մարքսի դրույթները վկայակոչելու փոխարեն, օգտագործում են Մարքսին վերագրվող հայացքներ ու տեսակետներ։ Նրանք վկայակոչում են հին մանրբուրժուական տեսությունները ապրանքային արտադրության և սոցիալիզմի անհամատեղելիության վերաբերյալ և այդ հիման վրա ՍՍՀՄ-ում իրականացված սոցիալիզմը համարում են «վուլգար ջատագովություն»։

Նրանք գտնում են, որ ապրանքի, արժեքի և փողի կատեգորիայի առկայության և օգտագործման դեպքում հնարավոր չէ կառուցել սոցիալիզմ և նման պայմաններում սոցիալիզմի կառուցումը սոցիալիստական հասարակարգի մարքսիստական տեսության վերանայում է։ Հետևաբար, ռեալ սոցիալիզմը հակասում է մարքսիզմին։ Իրականում, սոցիալիզմի կառուցման՝ «նեոմարքսիստների» ստեղծած մոդելն է, որ հակասում է սոցիալիզմի մարքսյան տեսությանը և հենց ռեալ սոցիալիզմին։ Բանն այն է, որ Մարքսը կոմունիստական հասարակարգի առաջին փուլում հնարավոր էր համարում համազոր արժեքների փոխանակման նույն սկզբունքը, որը կարգավորում է ապրանքային փոխանակությունը, քանի որ սոցիալիզմն իր մեջ դեռևս կրում է արտադրության և փոխանակության մինչսոցիալիստական ձևերի մնացուկները։ Բացի դրանից, կոոպերատիվ սոցիալիստական արտադրության առկայությունը, լինելով աշխատանքի սոցիալական անհավասարության դրսևորումներից մեկը, պահանջում է պահպանել ապրանքային ձևը։ Եվ, քանի դեռ պահպանվում են սոցիալ-տնտեսական տարբերություններն աշխատանքում, որի, որպես անմիջականորեն հանրային երևույթի, ձևավորման պրոցեսն ավարտված չէ— այդ պայմաններում աշխատանքի զանազան տեսակների հավասարեցումը տեղի է ունենում արդյունքի միջոցով՝ ապրանքափողային հարաբերությունների օգնությամբ։

Ռեալ սոցիալիզմի իրենց ժխտման մեջ «նեոմարքսիստները» վկայակոչում են մի այնպիսի փաստ, ինչպիսին է «սոցիալիզմ» և «կոմունիզմ» հասկացությունների սահմանազատման բացակայությունը Մարքսի և Էնգելսի աշխատություններում։ Այո՛, մարքսիզմի կլասիկների վաղ շրջանի աշխատություններում այդ հասկացությունների հստակ սահմանազատում չկա։ Սակայն Կա–

պիտալ և Գորայի ծրագրի քննադատություն» աշխատություններում այդ հասկացությունների տարբերությունը կա։ Բայց մարքսիստական ուսմունքը միայն Մարքսի ու Էնգելսի աշխատություններով չի սահմանափակվում։ Սոցիալիզմի և կոմունիզմի հարցի ամբողջական մշակումը և դրանց գիտական սահմանազատումը տվել է Վ. Ի. Լենինը «Պետություն և հեղափոխություն» աշխատության մեջ։ Վերլուծելով սոցիալիզմի և կոմունիզմի բարձրագույն փուլի միջև եղած տնտեսական տարբերությունները, նա հստակորեն սահմանազատել է այդ հասկացությունները, շեշտելով դրանց ընդհանրությունը՝ որպես մեկ հասարակական-տնտեսական ֆորմացիայի փուլերի։

«Նեոմարքսիստները» և նորընձա «նոր ձախերը», խուսափելով քաղաքատնտեսական վերլուծությունից, հաճախ ռեալ սոցիալիզմի «անիրականության» իրենց «ապացույցներում» դիմում են իրավական ֆետիշիզմին, նրանց գրչի տակ քաղաքատնտեսական յուրահատուկ պրոբլեմները վերածվում են ֆորմալ-իրավականի։ Արտադրահարաբերությունների հետ անմիջականորեն կապակցելու փոխարեն, իրավական սահմանումների հարմարեցումը բաշխման հարաբերություններին «նեոմարքսիզմի» ժամանակակից վուլգար քաղաքատնտեսական գիտության տարածված եղանակներից է։ Բաշխման ամեն մի եղանակ բխում է ոչ թե ինչ-որ իրավունքից, այլ անմիջականորեն արտադրության միջոցների սեփականության ձևից։ Ապրանքային արտադրության մեջ կիրառվում է հավասար չափանիշ անհավասար աշխատանքի նկատմամբ։ Այդ իմաստով մարքսիզմի կլասիկներն օգտագործում են այնպիսի տերմիններ, ինչպես «կապիտալիզմի մնացուկներ», «բուրժուական իրավունք»։ Բայց ինքը՝ չափը — աշխատանքը, ըստ աշխատանքի բաշխման սկզբունքի բովանդակությունը բուրժուական չէ. այդ սկզբունքը ըստ Մարքսի «ոչ մի դասակարգային տարբերություն չի ընդունում, քանի որ յուրաքանչյուր ոք միայն բանվոր է, ինչպես և բոլոր մյուսները (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 19, стр. 19)։ Ըստ աշխատանքի բաշխման սկզբունքը պարունակում է որոշակի հակասություններ (մարդկանց սոցիալական անհավասարության պահպանումը, նյութական դրության բարելավումը ոչ թե անձնական ջանքերի միջոցով, այլ բնական արտոնությունների, օրինակ, բնական մեծ ունակությունների հաշվին)։ Սակայն, շեշտում էր Մարքսը, «իրավունքը երբեք չի կարող ավելի բարձր լինել, քան տնտեսական կարգը և դրանով պայմանավորված՝ հասարակության կուլտուրական զարգացումը» (նույն տեղը)։

Ապրանքային արտադրության և ապրանքափոխանակության գոյությունը «նեոմարքսիստները» միակցում են բանվորական ուժի վաճառքի հետ։ Աշխատանքի վարձատրության ձևը՝ աշխատավարձը, նրանք բնորոշում են որպես բանվորական ուժի վաճառք կամ փոխանակում փողով։ Նրանք սոփեստություն են համարում, որ բանվորների վարձու դասակարգը չի կարող գոյություն ունենալ արտադրության միջոցների կոլեկտիվ սեփականության պայմաններում։ Մանդելի կարծիքով, «կոլեկտիվ սեփականությունը նշանակում է ընկերակցության սեփականություն, և ոչ թե նրա անդամներից յուրաքանչյուրի սեփականություն։ Կոոպերատիվի անդամը կարող է իր ավտոմեքենան, իր անձնական սեփականությունը վաճառել այն կոոպերատիվին, որին ինքը պատկանում է, ճիշտ այդպես էլ բանվորը կարող է իր բանվորական ուժը, որն իր անձնական սեփականությունն է, վաճառել այն ընկերակցությանը, որին պատկանում է ինքը»։

Եվ դարձյալ քաղաքատնտեսական պրոբլեմների նենգափոխում ձևական-իրավական պրոբլեմներով։ Ըստ Մանդելի, քանի որ գոյություն ունի անձնական սեփականությունը տնօրինելու իրավունք, ապա այդ սեփականության տերն իրավունք ունի ազատորեն վաճառելու իր բանվորական ուժը և, հետևաբար, իր ապրանքը՝ բանվորական ուժ-ապրանքը։ Ինչպիսի՜ լարախաղացություն, էլ ուր մնացին բանվորական ուժն ապրանքայինի վերածվելու հասարակական-տնտեսական պայմանները։

Ինչպես Մանդելի, այնպես էլ մյուս «նեոմարքսիստների» մոտ ռեալ սոցիալիզմի հարցերի ու պրոբլեմների քննարկման ժամանակ կարևորագույն



տնտեսական կատեգորիաներն ու երևույթները դառնում են ամեն մի կոնկրետ հասարակական բովանդակությունից զուրկ ձևական-իրավական հասկացություններ։

«Նեոմարքսիստների» և «նոր ձախերի» հիմնական մասսան (գլխավորապես մաոյական երանգի) ձգտում է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքից բացառել սոցիալիզմի այն հասկացությունները, որոնք հուշակում են տնտեսական հարաբերությունների առաջնայնությունը հասարակական սիստեմի որոշման գործում։ Նման մոտեցման պայմաններում գոյություն ունեցող հասարակական հարաբերությունների ուսումնասիրումը հանգեցվում և հարմարեցվում է փիլիսոփայական չափանիշների։ Դրանք էլ իրենց հերթին հարմարեցվում են բարոյական-իրավական կարգի վերացական չափանիշների, մի բան, որ վերջին հաշվով սոցիալիզմը հանգեցնում է մարդու մարդաբանական դրսևորումների։ «Նեոմարքսիստների» կարծիքով, գոյություն չունի համապարփակ սոցիալիզմ և այնպիսի տարբերիչ հատկանիշ, որով հնարավոր է «միշտ և ամենուրեք որոշել, թե այս կամ այն հասարակությունը սոցիալիստական է թե ոչ» (Ա. Գոլդման)։ Իհարկե, վերանայելով մարքսիստական ուսմունքը սոցիալիզմի մասին և հեռանալով դրանից, հնարավոր չէ գտնել ռեալ սոցիալիզմի տարբերիչ հատկանիշը։ Սոցիալիզմը սեփականության շահագործողական ձևերի հեղափոխական վերափոխումն է և արտադրության միջոցների հանրային սեփականության հաստատումը։ Սեփականատիրական հարաբերությունների վերափոխման ընթացքում հանրային սեփականությունը դառնում է արդյունքների արտադրության, բաշխման և փոխանակության սպեցիֆիկ սոցիալիստական հարաբերությունների արգասիքը։

Մարքս-լենինյան կուսակցության ղեկավար դերը, պետության ֆունկցիան սոցիալիզմի կառուցման գործում, արտադրամիջոցների հանրային սեփականությունը «նեոմարքսիստները» համարում են սոցիալիզմի համար խորթ երևույթ։ Մարքսիզմի պլյուրալիզացիայի լոզունգի ներքո նրանք սոցիալիզմի տեսության մեջ են խցկում կապիտալիստական երկրների աշխատանքի ու դասակարգերի ինտեգրացումը և պայքարում են «ինդուստրիալ հասարակության» զարգացման համար (Ռ. Արոն, Գ. Մարկուզե)։ Ռեալ սոցիալիզմի քննադատները կապիտալիզմի հակասությունների վերացումն անուշում են գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների և ոչ թե կապիտալիստական արտադրահարաբերությունները սոցիալիստական հարաբերություններով փոխարինելու հետ, ժխտելով սոցիալ-տնտեսական հարաբերությունների օրինաչափությունը։

Ռեալ սոցիալիզմն անտեսելու, սոցիալիզմի առավելությունները նսեմացնելու բուրժուական գաղափարախոսության բոլոր փորձերը դատապարտված են ձախողման։ Ռեալ սոցիալիզմը փոխարինելու է եկել կապիտալիզմին և մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների արդյունքն է։ «Իսկ վաղվա օրը, անտարակույս, կբերի սոցիալիզմի անսահման հնարավորությունների, կապիտալիզմի հանդեպ նրա պատմական գերազանցության նոր վկայություններ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 14)։

# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԲՈՎԱՆԴԱԿԱԼԻ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ

Ազգային հարստության կատեգորիան մարքս-լենինյան վերարտադրության տեսության բաղկացուցիչ մասն է, որն ունի գիտական ու գործնական առաջնահերթ նշանակություն: Չնայած այդպիսի կարևորությանը, այն տնտեսագիտորեն լիովին չի հետազոտվել: Կարծում ենք, որ տնտեսագիտության դոկտոր, պրոֆեսոր Մ. Ն. Եգանյանի ՍՍՀՄ ազգային հարստության ընդլայնված վերարտադրությունը ռուսերեն մենագրությունը* մասամբ լրացնում է սովետական տնտեսագիտության այդ պակասը:

Քաղաքատնտեսության հրատապ ու արդիական այդ պրոբլեմի վերաբերյալ հեղինակի հետազոտությանը բնորոշ են Սովետական Միության ազգային հարստության ընդլայնված վերարտադրության պրոցեսի պատշաճ ընդգրկումը, հիմնական եզրակացությունների ու դրույթների հիմնավորվածությունը, նյութի շարադրման հետևողականությունը: Այն կարդացվում է հետաքրքրությամբ:

Գրախոսվող գրքի առաջին բաժնում տրված է ՍՍՀՄ ազգային հարստության բնութագրությունը: Այստեղ բացահայտվում են «հարստություն» կատեգորիայի էությունը, ազգային հարստության հաշվարկման մեթոդը, սոցիալիստական հանրային հարստության սոցիալ-տնտեսական բնույթը և դրա բնահրային բովանդակությունը, արտադրական հիմնական ֆոնդերի կառուցվածքն ու արդյունավետությունը:

Ազգային հարստության կատեգորիան սերտորեն առնչվում է տնտեսագիտական այլ կատեգորիաների հետ: Ուստի գրքի հեղինակն ազգային հարստության էությունը հետազոտում է տնտեսագիտական հարակից կատեգորիաների կապակցության մեջ:

Փաստական նյութի վերլուծությունից հեղինակի արած եզրակացությունները, որոնք արծարծում են ՍՍՀՄ ազգային հարստության առաջացման օրինաչափությունները, հիմնականում ճիշտ են: Ընդ որում, քննարկելով սոցիալիստական հասարակարգի ազգային հարստության պրոբլեմները, հեղինակն ապացուցում է, որ սոցիալիզմի պայմաններում ազգային հարստությունն ունի խոշորագույն առավելություններ կապիտալիստական ազգային հարստության համեմատությամբ:

Ազգային հարստությունը սոցիալիզմի պայմաններում դառնում է ժողովրդի սեփականությունը, հանդես գալով հիմնականում համաժողովրդական պետական և կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության ձևերով: Դրանցից ածանցվում է տնամերձ և անձնական սեփականությունը, որն իր բնույթով արմատապես տարբերվում է մասնավոր սեփականության ամեն մի ձևից:

Իր աշխատությամբ հեղինակը մերկացնում է բուրժուական տնտեսագիտության այն դոգման, ըստ որի ազգային հարստություն կատեգորիան իբր թե հատուկ է միայն կապիտալիզմին: Մինչդեռ ազգային հարստությունը ինչ-որ աբստրակտ կատեգորիա չէ, այլ սերտորեն կապված է տվյալ արտադրաեղանակին: Նրա սոցիալ-տնտեսական բովանդակությունը որոշվում է այն արտադրական, հասարակական հարաբերություններով, որոնք գերիշխում են տվյալ ֆորմացիայում:

Սոցիալիզմի պայմաններում, շեշտում է հեղինակը, հանրային սեփականությունը, տնտեսության պլանային բնույթը, հաշվառման միասնական սիստեմի առկայությունը հնարավոր են դարձնում ազգային հարստության հավաստի հաշվառումը:

Գրախոսվող երկում հեղինակն անդրադարձել է նաև մի քանի վիճելի հարցերի, որոնց վերաբերյալ մինչև օրս սովետական տնտեսագետները տարբեր կարծիքի են:

ՍՄԿԿ XXV համագումարում նշվեց, որ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցմամբ սովետական ժողովուրդը տնտեսական բազա է ստեղծում նաև ապագա սերունդների բարգավաճման համար: Ակնհայտ է, որ զարգացած սոցիալիզմի պայմաններում ՍՍՀՄ ազգային հարստության մակարդակը, նախորդ ժամանակների համեմատությամբ, աճել է խոշոր չափերով: Դա լրիվ հաստատվում է գրախոսվող աշխատության մեջ բերված վիճակագրական տվյալներով:

Ամբողջությամբ դրականորեն գնահատելով մենագրության առաջին բաժնի բովանդակությունը, կարծում ենք, որ այն կարելի էր ավելի համառոտակի շարադրել, հատկապես՝ երրորդ և չորրորդ գլուխները:

Հետաքրքրություն է ներկայացնում նաև մենագրության երկրորդ բաժինը, որը նվիրված է ազգային հարստության աճին՝ բնակչության բարեկեցության բարձրացման հիմքին: Այստեղ ազգային հարստության աճը քննարկվում է ընդլայնված վերարտադրության բազայի վրա, ցույց տալով նյութական հարստության ավելացման գործում բնական ռեսուրսների դերը, պարզաբանելով արտադրաֆոնդերի, հասարակական ամբողջական արդյունքի, ազգային եկամտի, համախառն արտադրանքի և արտադրության աշխատողների թվի հարաբերակցությունը, լուսաբանելով արտադրաֆոնդերի աճի ազդեցությունը սպառման առարկաների արտադրության վրա և շարադրելով բնակչության մեկ շնչի հաշվով արտադրողական հարստության ու ազգային եկամտի չափերի փոփոխությունը:

Հետազոտելով հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների աճի տեմպերի հարաբերակցության հարցերը, հեղինակը վեցերորդ գլխում բերում է այդ հարաբերակցության վեց աղյուսակով հինգ տարբերակ և կատարում պլանավորման պրակտիկայի համար հետաքրքրական հետևություններ:

Կարելի է համաձայնել հեղինակի հետ այն հարցում, որ իր կազմած աղյուսակներն ապացուցում են հասարակական արտադրության երկու ստորաբաժանումների նորմալ զարգացման անհնարինությունն առանց դրանց և յուրաքանչյուրի տարրերի հարաբերակցությունների պարբերական փոփոխության (էջ 145): Բայց չի կարելի ճիշտ համարել նրա հետևությունն այն մասին, որ առաջին ստորաբաժանման առաջանցիկ աճի հնարավորության վերաբերյալ վերարտադրության լենինյան սխեման իբր հասարակական արտադրության շարժման մշտական գործող օրենք չէ (էջ 144):

Այսպիսի հետևության հիմքը հեղինակը համարում է իր սխեմաները, վկայակոչելով նաև ութերորդ և իններորդ հնգամյակները, երբ, իրոք, երկրորդ ստորաբաժանման աճի տեմպերն արագացել էին: Գիտատեխնիկական հեղափոխության դարաշրջանում առանց արտադրության միջոցների առավել արագ զարգացման, երբ հարաճուն պահանջներ են ներկայացվում ո՛չ միայն արտադրության ճյուղերին, այլև ոչ արտադրական ոլորտին, անհնար է իրագործել ընդլայնված վերարտադրություն:

Այստեղ, կարծում ենք, հարկ է տնտեսական օրենքի գործողության կոնկրետ դրսևորումները տարբերել դրա ընդհանուր ուղղությունից: Օրենքի օգտագործման գործնական տարբերակները կարող են շեղվել օպտիմալ հարաբերակցությունից, իսկ ընդհանուր ուղղությունը, գործողության հիմնական տենդենցը, պահպանվում է: Ութերորդ և իններորդ հնգամյակների տարիներին երկու ստորաբաժանումների աճման տեմպերի մերձեցումը միայն այդ է ապացուցում: Օրինակ, տասներորդ հնգամյակում արտադրամիջոցների արտադրությունն աճելու է 38 տոկոսով, իսկ սպառման առարկաներինը՝ 32 տոկոսով: Եվ դա բնական է, որովհետև «Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը, որի վրա են խարսխվում թե՛ տասներորդ հնգամյակը և թե՛ տևական հեռանկարը, երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումն է, արտադրական ֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն հաշվեկշռված աճի ապահովումը» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 62):

Դրա հետ մեկտեղ, գրախոսվող գրքում ներկայացված սխեմաները հարկավոր է մոտեցնել հասարակական ամբողջական արդյունքի ընդլայնված սոցիալիստական վերարտադրության իրական պատկերին, հաշվի առնելով դրանցում ռազմական հանդերձանք ու սարքավորում արտադրող ճյուղերի առկայությունը:

Գրքի տվյալ բաժնի վեցերորդ գլխում քննարկվում են նաև կուտակման միջոցների օգտագործման հարցերը: Հեղինակն իրավամբ նշում է, որ սոցիալիստական հասարակությունը հարստության աճն օպտիմալ կերպով զուգակցում է բնակչության բարեկեցության աճին (էջ 161): Այնուհետև նա լուսաբանում է արդյունաբերության ու գյուղատնտեսության արտադրանքի աճի դինամիկան՝ նրանց հիմնական ճյուղերի առումով, համեմատելով այն ըստ միութենական հանրապետությունների:

* М. Н. Еганян, Расширенное воспроизводство национального богатства СССР, изд-во АН Арм. ССР, стр. 270, 1975 г.

